## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**5** ՄԱՅԻՍ 1974
ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ԱՐՏԱՍԱՆԱԾ ՀԱՄԼԿԵՄ XVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

Թանկագին ընկեր պատգամավորնե՛ր:

Ամենից առաջ ուզում եմ ձեզ, բոլոր կոմերիտականներին, սովետական ամբողջ երիտասարդությանը ի սրտե շնորհավորել մեծ իրադարձության՝ լենինյան կոմերիտմիության XVII համագումարի բացման առթիվ: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ձեր այս համագումարը նշանակալի է նրանով, որ այն գումարվել է կոմերիտմիության կյանքի պատմական տարեթվի նախօրյակին: Ձեր համագումարին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հղած ողջույնի մեջ նշվում է, որ 1924 թվականի հուլիսին կոմունիստական երիտասարդական միությունն որդեգրեց ամենաթանկ անունը՝ Լենինի անունը, և ՌԿԵՄ VI համագումարի պատգամավորները բոլոր կոմերիտականների անունից երդում տվեցին՝ «Ինչպիսի խոչընդոտներ էլ կանգնած լինեն մեր ճանապարհին, ինչպիսի զոհեր էլ մեզնից պահանջեն... վայր չենք գցի Լենինի դրոշը»:

Եվ այսօր, մի հայացք գցելով կոմերիտմիության անցած ուղուն, նրա փառահեղ գործերին, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ նա մեծագույն արժանապատվությամբ է կրում լենինյան երիտասարդական միության վեհ անունը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Կուսակցության ղեկավարությամբ կոմերիտմիությունը ինքն է սովորում և երիտասարդ սերնդին սովորեցնում լենինաբար ապրել և աշխատել, պայքարել կոմունիստական իդեալների հաղթանակի համար: Կոմերիտականներն ամենուրեք գտնվում են առաջավոր բնագծերում: Նրանք միշտ այնտեղ են, որտեղ հարկավոր են կրակոտ սիրտ, մտքի ճարտարություն, եռանդ ու նախաձեռնություն:

Ընկերնե՛ր: Հոգեկան հաճելի հուզմունքի զգացումով մենք, կարելի է ասել հին կոմերիտականներս, այսօր մտանք ձեր համագումարի դահլիճ: Նայելով ձեզ, ես վերհիշեցի իմ կոմերիտական պատանեկությունը, որը երկար տարիներ եռանդով ու լավատեսությամբ լիցքավորեց ինձ, վերհիշեցի իմ առաջին դաստիարակներին և առաջին ընկերներին, նրանց, ում հետ բախտ ունեցա համատեղ յուրացնելու կյանքի, դասակարգային պայքարի, նոր հասարակարգի կառուցման բարդ գիտությունը:

Ինձ համար առանձնապես հիշարժան են 20-ական թվականները: Հիշարժան է նախ և առաջ 1923 թվականը՝ կոմերիտմիության մեջ ընդունվելուս տարին: Այն ժամանակ կոմերիտմիության շարքերում կար 300 հազարից փոքր-ինչ ավելի մարդ: Ձեռնարկություններում, հիմնարկներում և գյուղերում կոմերիտականները, որպես կանոն, մի բուռ երիտասարդներ էին: Բայց նրանք համակված էին հեղափոխական կրքով, արիությամբ, հաճախ հերոսական սխրանքներ էին կատարում:

Ես այդպիսին եմ ճանաչում նաև լենինյան կոմերիտմիության հաջորդ սերունդներին: Ժողովրդի հիշողության մեջ ընդմիշտ կմնան առաջին հնգամյակների հերոսների խանդավառությունն ու արիությունը: Անթառամ փառքով են պսակված Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին կոմերիտմիության և սովետական ամբողջ երիտասարդության կատարած մարտական և աշխատանքային սխրագործությունները: Փորձությունների դժվարին ժամին երկրի երիտասարդությունը ամեն ինչ տալիս էր հանուն հաղթանակի, հանուն կյանքի ու երջանկության:

Մենք՝ կոմունիստներս, հպարտանում ենք մեր երիտասարդությամբ: Մեր երկրի ոչ թե հազարավոր և նույնիսկ ոչ թե միլիոնավոր, այլ տասնյակ միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ իրենց բախտը կապում են կոմերիտմիության հետ: Սովետական բազմամիլիոն մարդկանց համար կոմերիտմիությունը դար-

ձել է կենսագրության անկապտելի մասը, իսկ մեր հայրենիքի համար՝ նրա հավերժական ջահելության մարմնավորումը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Այսօր կոմերիտմիությունն իր շարքերում ունի 34 միլիոն մարդ: Երիտասարդությունը մտնում է կոմերիտմիության շարքերը, որպեսզի արտահայտի իր սերն ու նվիրվածությունը լենինյան կոմունիստական կուսակցությանը, իրեն նվիրի նրա իդեալներին ծառայելուն, կոմունիզմի կառուցմանը: Սովետական երիտասարդությունը գնում է այն ճանապարհով, որը նրա համար կանխագծել է մեծ Լենինը: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Մեր հայրենիքը այժմ տնտեսական ու հոգևոր հզոր պոտենցիալ ունի: Մենք դնում և լուծում ենք այնպիսի խնդիրներ, որպիսիք նույնիսկ տասը տարի առաջ մեզ համար անմատչելի էին: Է՛լ ավելի են ամրապնդվել մեր հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, երկրի ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը: Մենք իրավունք ունենք հպարտանալու իսկապես ժողովրդական սոցիալիստական դեմոկրատիայով, սովետական ապրելակերպով: Այս ամենը հասուն սոցիալիզմի իրական գծերն են, որի նվաճումները պետք է բազմապատկեք դուք՝ երիտասարդ սերունդը:

Առաջընթացի համեմատ, ստեղծարար գործունեության մասշտաբների աճի հետ մեկտեղ, աճում են կուսակցության դերը, նրա ազդեցությունը հասարակության զարգացման բոլոր ոլորտների վրա: Կուսակցությունը ելնում է նաև այն բանից, որ կոմունիստական շինարարության կենդանի ու վիթխարի գործը պահանջում է երկրի հասարակական բոլոր կազմակերպությունների, բոլոր աշխատավորների ակտիվության ու նախաձեռնության բարձրացում:

Ասվածը ուղղակիորեն վերաբերում է լենինյան կոմերիտմիությանը: Կոմերիտմիությունը արդեն վաղուց և ամուր կերպով արժանավայել տեղ է գրավել սովետական հասարակության հասարակական-քաղաքական սիստեմում: Նրա դերը որոշվում է սոցիալիզմի հենց բնույթով, նրա հեղափոխական էությամբ, մեր գալիքի հեռանկարով:

Կոմերիտմիությունը միշտ եղել է և մնում է կուսակցության մարտական ռեզերվն ու հուսալի օգնականը: Դա ոչ թե վերացական ֆորմուլ է, այլ իրական կյանք, իրական պրակտիկա: Հատկանշական է, որ այժմ կուսակցության համալրման երկու երրորդը, ավելին, քան երբևիցե, տալիս է կոմերիտմիությունը: ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած երեք տարում կուսակցության շարքերն է ընդունվել մոտավորապես մեկ միլիոն կոմերիտական: Երիտասարդ կոմունիստները շարունակում են աշխատել կոմերիտմիության մեջ, կազմելով կոմերիտական կազմակերպությունների կուսակցական կորիզը:

Կոմերիտմիության հետ կուսակցության կենդանի կապն արտահայտվում է նաև նրանում, որ երիտասարդության տասնյակ հազարավոր ղեկավարներ ընտրված են կուսակցության ղեկավար մարմիններում՝ սկսած սկզբնական կազմակերպությունների բյուրոներից ու կոմիտեներից, մինչև ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն:

Իսկ նայեցեք սովետների՝ մեր պետական իշխանության մարմինների կազմին: ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների մեկ հինգերորդը մինչև 30 տարեկան երիտասարդներ են, տեղական սովետներում երիտասարդության բաժինը է՛լ ավելի մեծ է՝ գրեթե մեկ երրորդը: Երիտասարդները ակտիվորեն են աշխատում արհմիություններում և աշխատավորների մասսայական մյուս կազմակերպություններում: Կոմերիտմիության լավագույն դաստիարակները առաջ են քաշվում կուսակցական, տնտեսական և կուլտուրական շինարարության պատասխանատու տեղամասերում:

Առանց չափազանցության կարելի է ասել, որ ոչ մի խոշոր հարց, վերաբերի դա Սովետական Միության, մարզի, շրջանի, թե աշխատանքային կոլեկտիվի գործերին, չի լուծվում առանց երիտասարդության մասնակցության: Կոմերիտմիությունը, բոլոր պատանիներն ու աղջիկները մեզանում անսահմանափակ հնարավորություններ ունեն իրենց ստեղծագործական ուժերն ու նախաձեռնությունը դրսևորելու համար:

Վստահել երիտասարդներին, հենվել երիտասարդությանը ներհատուկ խանդավառության և ընդհանուրի օգտին աշխատելու ազնիվ ձգտման վրա և դրա հետ միասին օգնել ճիշտ կողմնորոշվելու կյանքում, երիտասարդությանը զինել գիտելիքներով ու ավագ սերունդների փորձով— սրանք միշտ եղել են կոմունիստների ավանդույթները: Կուսակցությունն այսուհետև ևս կամրապնդի այդ ավանդույթները, կզարգացնի երիտասարդության ակտիվությունը, նրան է՛լ ավելի լայնորեն մասնակից կդարձնի սոցիալիստական հասարակության գործերի կառավարմանը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Հայրենիքը, կուսակցությունը հավատում են երիտասարդ սերնդին, և կյանքը ցույց է տվել՝ ամեն գործում կարելի է համարձակորեն հույս դնել կոմերիտմիության վրա: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):



Ընկերնե՛ր:

Ահա արդեն ավելի քան երեք տարի է, ինչ կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը համառորեն կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծավալուն ծրագիրը: Երկիրն ապրում է իններորդ հնգամյակի աշխատանքային լարված ռիթմով: Ետևում են մնացել հնգամյակի փառավոր, բայց ոչ հեշտ երեք տարիները: Դրանք մեզ համար լուրջ ստուգում էին: Առանձնապես բարդ տարի էր 1972 թվականը, երբ մեզանում երաշտ եղավ, որն իր սաստկությամբ ու մասշտաբներով վերջին հարյուր տարվա ընթացքում իրեն հավասարը չուներ:

Հեշտ չէր նաև անցած տարին: Նրա արդյունքներից մեծապես կախված էր ամբողջ իններորդ հնգամյակի բախտը: Պատահական չէ, որ կուսակցությունը 1973 թվականը հայտարարեց հնգամյակի վճռական տարի: Եվ այն, որ մենք կարողացանք հաղթահարել դժվարությունները, հաջողությամբ ավարտեցինք հնգամյակի երրորդ տարին, սովետական մարդկանց, մեր կոմունիստական կուսակցության աշխատանքային մեծ հաղթանակն է: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կուսակցության հետ միասին պատասխանատու քննություն էր տալիս նրա օգնականը՝ լենինյան կոմերիտմիությունը, և նա տվեց այդ քննությունը, պատվով տվեց (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Կոմերիտականները, պատանիներն ու աղջիկները լավ աշխատեցին, հայրենիքին ուրախացրին աշխատանքային հիանալի նվաճումներով: Եվ այդ ամենի համար կուսակցական խորին շնորհակալություն երիտասարդ փոխարինողներին: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Այսօր հրապարակված են ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրերը մի շարք կոմերիտական կազմակերպություններ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով պարգևատրելու մասին: Դա նշանակալի իրադարձություն է տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ, կոմունիստական դաստիարակության աշխատանքում կոմերիտականների ու երիտասարդության մեծ ծառայությունների ճանաչումը: Թույլ տվեք, սիրելի ընկերնե՛ր, բարձր պարգևի առթիվ ի սրտե շնորհավորել նոր շքանշանակիր կազմակերպություններին: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կոմունիստ լենինյաններին հատուկ է ինքնաքննադատական մոտեցումը իրենց աշխատանքին: Ինչպես գիտեք, կուսակցության Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումում, հարվածային աշխատանքի արդյունքների բարձր գնահատականի հետ մեկտեղ, բացահայտվեցին անցյալ տարիներին եղած թերություններ ու վրիպումներ: Սահմանվեցին նաև 1974 թվականի տնտեսական-քաղաքական խնդիրները:

Եթե առանձնացնենք մեր զարգացման արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության մեջ ամենագլխավորը, ապա դա կտրուկ շրջադարձն է դեպի ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացումը՝ գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա: Կուսակցությունը մշակում և իրականացնում է արտադրությունը տեխնիկապես վերազինելու, նրա կազմակերպումն ու կառավարումը, պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործելու, տնտեսական կադրերի որակավորումն ու պատասխանատվությունը բարձրացնելու խոշոր միջոցառումներ:

Այդ բոլոր միջոցառումները, մեր բոլոր ջանքերը ցանկալի արդյունքը չեն տա, եթե մենք լրջորեն չբարձրացնենք ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԸ մեր տնտեսության բոլոր օղակներում, յուրաքանչյուր աշխատատեղում: Աշխատանքի որակը շատ տարողունակ հասկացություն է: Այն բաղկացած է արտադրատնտեսական շատ գործոններից և դրա հետ մեկտեղ ընդգրկում է մեծաթիվ բարոյական պրոբլեմներ:

Դա արտադրության հստակ կազմակերպումն է, աշխատանքային պրոցեսի խստականոն ռիթմը, տեխնոլոգիայի անշեղ կիրառումը: Դա նյութերի խնայողական ծախսումն է, տեխնիկայի նկատմամբ հոգատար, սրտացավ, ես կասեի, սիրալիր վերաբերմունքը և, իհարկե, գիտակցական, ընկերական կարգապահությունը, աշխատանքում փոխադարձ պահանջկոտության և փոխօգնության իրադրությունը: Որակի համար մղվող պայքարի հետ անհամատեղելի են անփութությունը, թափթփվածությունը, գործի նկատմամբ անտարբեր վերաբերմունքը:

Հազիվ թե հարկ կա ապացուցելու, թե ինչպիսի իսկայական սոցիալ-տնտեսական իմաստ ունի բարձրորակ աշխատանքի հարցը: Լավ որակով, խղճի մտոք պատրաստված առարկաները՝ լինի հաստոց թե տրակտոր, ավտոմոբիլ թե հեռուստացույց, տնտեսում են հասարակական ծախսումները, հեշտացնում են մեր աշխատանքը և միևնույն ժամանակ բարձրացնում մարդու տրամադրությունը, նրա բանվորական հպարտությունը:

Որակի համար մղվող պայքարը պետք է տոգորի մեր գործունեության բոլոր ոլորտները՝ խոսքը վերաբերի նյութական արտադրությանը թե հոգևոր արժեքների ստեղծմանը, երեխաների դաստիարակությանը թե սպասարկման ոլորտին: Որտեղ էլ աշխատի մարդը, նա պետք է

հպարտանա իր ջանքերի արդյունքներով: Մեր երկրում վաղուց ի վեր ժողովրդի մեջ ամենապատվավորը եղել է վարպետի, հմուտ ձեռքեր ունեցող մարդու կոչումը: Մենք պետք է շատ ավելի հարգենք այդ կոչումը, ըստ ամենայնի խրախուսենք նրանց, ովքեր աշխատանքում հասնում են բարձր որակի:

Երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են ավելի քան 30 միլիոն երիտասարդ բանվորներ, կոլտնտեսականներ ու ծառայողներ: Դուք հասկանում եք, թե որքան հիանալի կլիներ, եթե կոմերիտմիությունը ակտիվորեն, մարտականորեն մասնակցեր աշխատանքի բարձր որակի, վարպետության, գործարանի մակնիշի պատվի համար երիտասարդության մասսայական շարժմանը:

Սոցիալիստական շինարարության պատմությունը պերճախոս կերպով վկայում է, որ երիտասարդ նորարարների օրինակին շատ անգամ է հետևել ամբողջ երկիրը: Ալեքսեյ Ստախանովը, որ անվանավորեց հարվածայինների համաժողովրդական շարժումը, իր աշխատանքային սխրանքը կատարեց 30 տարեկան հասակում: Ջուլհակուհիներ Մարիա և Եվդոկիա Վինոգրադովաներ, պողպատ ձուլող Մակար Մազայ, տրակտորիստուհի Պաշա Անգելինա, մանածագործուհի Վալենտինա Գագանովա... Նրանցից ոչ մեկը 26 տարեկան էլ չկար, երբ նրանց նախաձեռնությունները ժողովրդի ճանաչումն ստացան:

Այսօր էլ հնգամյակի հերոսների մեջ մենք տեսնում ենք շատ երիտասարդների անուններ: Այս դահլիճում ներկա են համագումարի պատգամավորներ՝ սոցիալիստական աշխատանքի հերոսներ, Իվանովոյի մանածագործուհի Անաստասիա Երոֆեևան, «Անգարստրոյի» բրիգադավար Վիկտոր Լակոմովը, ճակնդեղագործ Ուստինիա Լենդյուկը, բամբակագործ-մեխանիզատոր Աբդուսատտար Կուրբանովը և շատ ուրիշներ: Ի դեմս նրանց, մենք ի սրտե ողջունում ենք իններորդ հնգամյակի երիտասարդ հարվածայիններին և նրանց մաղթում՝ բարձր պահել այդ պատվավոր կոչումը, լինել փառավոր գործերի նախաձեռնողներ, երիտասարդության կազմակերպիչներ, իրենց ետևից տանել աշխատանքային ընկերներին: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Սովետական ժողովուրդը խորին երախտագիտությամբ նշեց երիտասարդության աշխատանքային անձնվեր սխրանքը խոպան հողերի և Հյուսիսի, Սիբիրի, Հեռավոր Արևելքի բնական հարստությունների յուրացման գործում: Իսկ ահա հենց վերջերս կոմերիտմիությունը ջերմորեն արձագանքեց կուսակցության կոչին՝ ակտիվորեն մասնակցելու նոր խոշորագույն կառույցին՝ Բայկալ—Ամուր երկաթուղու շինարարությանը:

Այդ կառույցը հսկայական նշանակություն ունի: Բայկալ—Ամուր մագիստրալը կկտրի, կանցնի դարավոր տայգան, կանցնի այն տեղերով, որտեղ կան վիթխարի հարստություններ, որոնք հարկավոր է ի սպաս դնել հայրենիքին: Այստեղ կստեղծվի երկրի մի նոր, մեծ արդյունաբերական շրջան, կկառուցվեն նոր քաղաքներ ու ավաններ:

Մենք հաստատ համոզված ենք, որ կոմերիտականները, երիտասարդությունն իրենց արժանի ավանդը կմուծեն այդ վիթխարի կառուցում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Ամուրի Կոմսոմոլսկի, Մագնիտկայի և Թուրքսիբի, Դնեպրոգէսի և խոպանի, Բրատսկի և Կամազի էստաֆետը նրանք առաջ կտանեն Սիբիրի նոր, դեռ չյուրացված տարածություններով: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ուզում եմ խոսել ևս մի չափազանց կարևոր գործի մասին, որը մենք նախատեսում ենք իրականացնել: Խոսքը վերաբերում է «ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշմանը: Այստեղ խնդիր է դրված արագորեն զարգացնել երկրի խոշոր շրջաններից մեկի գյուղատնտեսությունը:

Բավական է ասել, որ ոչ սևահողային գոտում ապրում է Ռուսաստանի Ֆեդերացիայի ամբողջ բնակչության 44 տոկոսը: Դա շրջան է վիթխարի պոտենցիալ հնարավորությունների, որոնք այժմ բնավ էլ լրիվ չեն օգտագործվում: Այդ գոտու գյուղատնտեսության ակտիվ ինտենսիվացումը զգալիորեն կբարձրացնի նրա արտադրողական ուժերը, ըստ էության թույլ կտա յուրացնել գրեթե նոր խոպան:

Նախատեսվում է այստեղ կատարել նաև բնակարանային և կուլտուրական մեծ շինարարություն: Բարեկարգ ավանների կվերածվեն այժմյան շատ գյուղեր: Իր զարգացման համար հուժկու խթան կստանա գոտու արդյունաբերությունը, հատկապես թեթև, սննդի և մըսեղենի-կաթնեղենի արդյունաբերությունը:

Անկեղծորեն ձեզ ասեմ, որ, ընդունելով ոչ սևահողային գոտու գյուղատնտեսության զարգացման ծրագիրը, մենք ակնկալում էինք կոմերիտմիության օգնությունը նրա պրակտիկ իրականացման ասպարեզում, և այսօր գոհունակությամբ ուզում եմ ասել, որ մեր հույսերն արդարացան: Կոմերիտմիության Կենտկոմը օրերս որոշում ընդունեց ոչ սևահողային գոտու մելիորատիվ և գյուղական շինարարությունը համամիութենական կոմերիտական հարվածային կառույց հայտարարելու և այնտեղ տարեկան առնվազն քսան հազար կոմերիտականներ ու երիտասարդներ ուղարկելու մասին: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Մենք ջերմորեն ողջունում ենք կոմերիտմիության այդ նոր հրաշալի նախաձեռնությունը: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Մեր ժամանակը գիտատեխնիկական վիթխարի հեղափոխության դար է: Այն ընդգրկում է հասարակության կյանքի բոլոր կողմերը, մեծ պահանջներ է ներկայացնում ամեն մի մարդու, նրա գիտելիքների, պրոֆեսիոնալ պատրաստականության առումով: Դա հատկապես պետք է հուզի երիտասարդ սերնդին, որի ուսին վաղը կընկնեն մեր պետության նյութական և հոգևոր ուժերի հետագա բազմապատկման բոլոր հոգսերը: Երիտասարդության առջև, ինչպես երբեք, սուր կերպով ծառացած է իր գիտելիքները մշտապես լրացնելու և խորացնելու, գիտության ու տեխնիկայի վերջին նվաճումներին տիրապետելու խնդիրը: Եվ դա վերաբերում է ոչ միայն ներկայիս և ապագա ինժեներներին, տեխնիկներին ու մյուս մասնագետներին, այլև բանվոր դասակարգին, գյուղի աշխատավորներին:

Այսօր խոր փոփոխություններ են տեղի ունենում մեր երկրի բանվոր դասակարգի կազմում: Դեռ 10—15 տարի առաջ այնպիսի մասնագետներ, ինչպիսիք են լազերային տեխնոլոգիական կայանքի օպերատորները, միմիայն գիտաֆանտաստիկ վեպերի հերոսներ էին: Բայց այն, ինչ երեկ ֆանտաստիկ էր, այժմ իրողություն է դառնում: Կյանք է մտել բանվոր դասակարգի՝ ամբողջ պատմության մեջ ամենակրթված սերունդը: Մինչև 30 տարեկան բանվոր երիտասարդների մոտավորապես 85 տոկոսը ունեն բարձրագույն, թերի բարձրագույն, միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ կրթություն: Դա մեծ նվաճում է:

Աճում է արտադրության նոր տիպի աշխատող, նրանում ավելի ու ավելի ներդաշնակորեն է զուգորդվում ֆիզիկական և մտավոր աշխատանքը: Դա պրոֆեսիոնալ լայն մտահորիզոն ու վարպետություն, ժամանակակից արտադրության պոլիտեխնիկական հիմքերի խոր իմացություն ունեցող մարդ է, որն ընդունակ է արագ յուրացնելու նորագույն մեքենաներն ու տեխնոլոգիական պրոցեսները:

Այս ամենը իր հերթին նորովի է դնում բանվորական հերթափոխի պատրաստման հարցը: Նախ և առաջ անհրաժեշտ է, որ նրա հիմնական մասսան պատրաստություն ստանա պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատություններում, որպեսզի դեռ մինչև աշխատանքի ընդունվելը երիտասարդները մասնագիտություն ստանան: Ուստի, անընդհատ ավելանում է այդ ուսումնական հաստատությունների թիվը: Մենք անհրաժեշտ համարեցինք զգալիորեն ընդլայնել նաև այնպիսի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների ցանցը, որոնց շրջանավարտները, մասնագիտության հետ միասին, ստանում են ընդհանուր միջնակարգ կրթություն: Արդեն մինչև այս հնգամյակի վերջը մեր երկրում այսպիսի ուսումնարանների թիվը կկրկնապատկվի:

Բանվոր դասակարգի արժանի հերթափոխի ձևավորման, երիտասարդ մասնագետների կադրերի դաստիարակման հոգսը միշտ եղել է կոմերիտմիության հարազատ գործը: Կոմերիտմիությունը առաջին ֆաբգործուսների շեֆն էր, որտեղ 20-ական թվականների պատանիներն ու աղջիկները յուրացնում էին կրթության և մասնագիտությունների այբուբենը: Արհեստագործական ուսումնարանների կոմերիտականները 41 թվականին գրավեցին հայրերի աշխատատեղերը և աշխատում էին մեծերի հետ հավասար:

Նշանավոր շատ անուններ են հառնում հիշողության մեջ, երբ մտածում ես սովետական աշխատանքային ռեզերվների փառավոր ուղու մասին:

Այսօր ուզում եմ հիշատակել Սերգեյ Պավլովիչ Կորոլյովին և Յուրի Ալեքսեևիչ Գագարինին: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Ուսուցիչ և աշակերտ: Տիեզերանավի գլխավոր կոնստրուկտոր և մոլորակի առաջին տիեզերագնաց: 20-ական թվականների շինարարական դպրոցի շրջանավարտ և հետպատերազմյան դժվարին ժամանակների «արհեստագործ»: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ): Այն երկիրը, որտեղ իրենց աշխատանքային կյանքը տանիքագործի հանձնակատարից և ձուլողի աշակերտից սկսող մարդիկ տիրապետում են գիտությունների բարձունքներին, մարդկության համար հարթում աստղերի ուղին, հրաշալի երկիր է: Կորոլյովի և Գագարինի ճակատագրերը ամենապայծառ օրինակն են այն բանի, թե սոցիալիզմը ինչպիսի լայն ասպարեզներ ու հնարավորություններ է բացում աշխատավոր մարդու առջև, երիտասարդության առջև: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կգա ժամանակ, երբ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների այժմյան շատ սաներ կդառնան առաջավոր բանվորներ, արտադրության նորարարներ, աշխատանքի հերոսներ, ձեռնարկությունների, ժողովրդական տնտեսության ամբողջ ճյուղերի ղեկավարներ: Մեծ կյանքի համար նախապատրաստվելու գործում նրանց առաջին հերթին պետք է օգնի կոմերիտմիությունը:

Կարծում եմ, որ հին հրաշալի ավանդույթի համաձայն, կոմերիտմիությունը պետք է

ստանձնի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների շեֆությունը: Մշտական ուշադրությամբ շրջապատեցեք աշխատանքային հերթափոխին, նրան բանվորական ուղիներով առաջնորդեցեք դեպի կյանք: Երկիրը դրա համար շնորհակալ կլինի ձեզանից: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Մեր ժամանակը՝ տեխնիկայի և գիտության ասպարեզում սրընթաց փոփոխությունների ժամանակը, ցույց տվեց Մարքսի մտքի ամբողջ խորությունը—ինչպիսի կատարյալ տեխնիկայով էլ զինված լինի մարդը, աշխատանքը երբեք զվարճություն չի դառնա: «Իսկապես ազատ աշխատանքը...,— գրել է Կ. Մարքսը,— ահավոր լուրջ գործ է» («Վոպրոսի ֆիլոսոֆիի» № 7, 1967 թ., էջ 108):

Աշխատանքի նկատմամբ հարգանքի ու սիրո ոգով պատանիների և աղջիկների դաստիարակումը միշտ էլ եղել է և մնում է կոմունիստական կուսակցության կարևորագույն հոգսը և լենինյան կոմերիտմիության գլխավոր խնդիրներից մեկը: Դա պետական մեծ հարց է: Նրա ճիշտ առաջադրմամբ և լուծմամբ շահագրգռված են բոլորը՝ աշխատանքային կոլեկտիվները, հասարակական կազմակերպությունները, դպրոցը և ընտանիքը: Նա շոշափում է միլիոնավոր մարդկանց ճակատագիրը, ավելին՝ մեր երկրի ապագան:

Երեխաների և պատանիների աշխատանքային դաստիարակության խնդիրների լուծման գործում մենք լուրջ նվաճումներ ունենք: Սակայն հանդիպում են նաև որոշակի դժվարություններ: Վերցրեք, օրինակ, այսպիսի հարց: Բոլոր հայրերն ու մայրերը ուզում են, որ իրենց երեխաները ավելի լավ ապրեն, քան իրենց է վիճակվել ապրել: Եվ դա հասկանալի է ու մարդկայնորեն բացատրելի: Սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացումը օգնում է իրագործելու ծնողական այդ ձգտումները: Բայց երբեմն բարի ցանկանալը երեխայի համար չարիք է դառնում: Որոշ ծնողներ մոտավորապես այսպես են դատում՝ կհասցնի, դեռ էնքա՞ն կաշխատի:

Այսպես ծնունդ է առնում խնամառությունը, անհարգալից վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, իսկ, վերջիվերջո, երիտասարդը դժվարին կացության մեջ է ընկնում կյանքում տեղ ընտրելիս և չի ընտելանում աշխատանքին: Դժբախտաբար, նման երևույթներ մեզանում հաճախ են հանդիպում: Ոչ: Միայն այն ծնողներն են իսկապես բարի գործ անում, ովքեր երեխաների մեջ աշխատանքային հմտություններ են դաստիարակում ամենավաղ տարիքից (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մենք ոչ միշտ ենք ուշադիր լինում նաև երիտասարդների, երիտասարդ բանվորների, մասնագետների նկատմամբ: Դուք՝ այս դահլիճում նստածներդ, լավ գիտեք, որ մարդու կյանքում առաջին ինքնուրույն քայլերը առանձնահատուկ նշանակություն ունեն: Ուշադիր վերաբերմունքի, աջակցության և օգնության կարիք են զգում թե՛ երեկվա դպրոցականները, թե՛ ուսումնարանների սաները, թե՛ տեխնիկումների և բուհերի սաները:

Աշխատանքային դաստիարակության, կյանքում տեղը ճիշտ ընտրելու հարցերը առնչված են մեծ թվով խնդիրների լուծման հետ: Այս տեսակետից նույնպես մեր երկրում բացառիկ շատ բան է արվում: Ես նկատի ունեմ թե՛ պետական կարգի միջոցառումները, հատկապես մեր դպրոցի դերը, թե՛ այն հսկայական աշխատանքը, որ այդ հարցում կատարում է մեր սովետական հասարակայնությունը: Այստեղ, ինչպես որ մյուս գործերում, օրինակ է ցույց տալիս մեր հերոսական բանվոր դասակարգը: Բանվոր դասակարգի մեջ ծնունդ առավ նոր, հրաշալի շարժումը՝ երիտասարդ բանվորների դաստիարակների շարժումը: Դաստիարակները բարձր վարպետություն, հարուստ կենսափորձ ունեցող կադրային բանվորներ են և, ես կասեի, տաղանդավոր մանկավարժներ: Նրանք բարի կամքով, հոգու թելադրանքով երիտասարդությանը սովորեցնում են աշխատասիրություն, վարպետություն, նրան դաստիարակում մեր պանծալի բանվոր դասակարգի հերոսական ավանդույթներով:

Ինձ համար հաճելի է ձեզ հաղորդել, որ ցուցաբերած աշխատանքային արիության, երիտասարդության կոմունիստական դաստիարակության և պրոֆեսիոնալ պատրաստության ուղղությամբ կատարած մեծ աշխատանքի համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչում է շնորհել՝

ՍՏԵՊԱՆ ՍՏԵՊԱՆՈՎԻՉ ՎԻՏՉԵՆԿՈՅԻՆ՝ Լենինգրադի «Էլեկտրոսիլա» միավորման հավաքող փականագործների բրիգադավար (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ),

ՕԼԳԱ ՊԱՎԼՈՎՆԱ ՎԱԽՄՅԱՆԻՆԱՅԻՆ՝ Մոսկվայի մարզի Ռեուտովսկի ֆաբրիկայի մանածագործուհի (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ),

ՊԱՎԵԼ ՆԻԿԻՏՈՎԻՉ ՊԵՉԵՆԿԻՆԻՆ՝ Ալթայի երկրամասի Ֆրունզեի անվան կոլտնտեսության բրիգադավար (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ),

ԱԼԵՔՍԵՅ ԼԵՈՆՏԵՎԻՉ ՇԱՏԻԼԻՆԻՆ՝ պատվավոր մետալուրգ, Մագնիտոգորսկի մետալուրգիական կոմբինատի վետերան (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թույլ տվեք, ընկերնե՛ր, իմ և կոլեգաներիս անունից, ձեր անունից ջերմորեն շնորհավորել այդ հիանալի մարդկանց, մաղթել նրանց քաջառողջություն, նոր հաջողություններ երկրի աշխատանքային հերթափոխի դաստիարակության գործում (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Դաստիարակներն, ասես, աշխատանքի էստաֆետը ներկայից հանձնում են ապագային: Եվ մենք ամբողջ սրտով ողջունում ենք պանծալի բանվոր դասակարգի ներկայացուցիչներին, որոնք, չխնայելով ուժ և ժամանակ, իրենց հարուստ փորձը, իրենց գիտելիքները հաղորդում են աշխատանքային մեծ կյանք մտնող երիտասարդ հերթափոխին: Լավ է, որ կոմերիտմիությունը աշխատում է դաստիարակների հետ ձեռք-ձեռքի տված, ամեն կերպ պաշտպանում այդ հիանալի նախաձեռնությունը: Պետք է ցանկանալ, որ դաստիարակների շարժումը դառնա մասսայական, ընդգրկի երկրի բոլոր անկյունները, բոլոր գործարանները, ֆաբրիկաները, ածխահանքերը, մետաղահանքերը, կառույցները, կոլտնտեսություններն ու սովխոզները: Դա հրաշալի, ազնիվ գործ է, ընկերնե՛ր: Մենք ձեզ կոչ ենք անում պաշտպանել այն (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Կոմերիտմիության աշխատանքում կարևորագույն տեղ է գրավում երիտասարդության դաստիարակությունը նոր, կոմունիստական բարոյականության ոգով, որի հիմքը, ինչպես ասել է Վլադիմիր Իլյիչը, «...կազմում է կոմունիզմն ամրապնդելու և ավարտելու պայքարը» (հատ. 31, էջ 360):

Երիտասարդության մեջ կոմունիստական բարոյականություն դաստիարակելու լենինյան պատգամի կատարումը ներկայումս հատկապես մեծ նշանակություն է ստանում: Մենք ապրում ենք զարգացած սոցիալիզմի դարաշրջանում, կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի կառուցման դարաշրջանում: Սոցիալական ու տնտեսական մեծ վերափոխումների հետ միասին տեղի է ունենում մարդկային լավագույն հատկությունների՝ կոմունիստական հասարակության մարդու հատկությունների ձևավորման ակտիվ պրոցեսը: Դրա համար մենք ունենք բոլոր պայմանները:

Մենք կուտակել ենք հսկայական հոգևոր հարստություն, որպիսին չի իմացել պատմությունը: Մեր հասարակության մեջ ստեղծվել է բարոյական նորմերի և հասարակական արժեքների ամենաառաջավոր, ամենամարդասիրական սիստեմը: Խորունկ փոփոխություններ են տեղի ունեցել միլիոնավոր մարդկանց սոցիալական հոգեբանության մեջ: Երկրում հաստատվել է ստեղծագործական աշխատանքի և մարդկանց նկատմամբ վստահության հիանալի մթնոլորտ:

Այն բարոյականությունը, որով մենք ղեկավարվում ենք, համաձուլվածքն է կոմունիզմի իդեալներին անսահման նվիրվածության և բարձր քաղաքացիության, իր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո և բոլոր երկրների աշխատավորների հետ եղբայրական համերաշխության, կոլեկտիվիզմի և հասարակական պարտքի խախտումների հանդեպ անհաշտելիության:

Մեր կոմունիստական բարոյականությունը իրավամբ ժառանգում ու զարգացնում է մարդկության կողմից մշակված բարոյականության մարդասիրական նորմերը: Աշխատասիրությունը, ազնվությունը, համեստությունը, սեփական արժանապատվության զգացումը, ընկերասիրությունը, փոխադարձ հարգանքը՝ այս ամենը սովետական մարդու բարոյական կերպարի անկապտելի գծերն են:

Կոմերիտմիությունը միջոցների մեծ զինանոց ունի երիտասարդության կոմունիստական դաստիարակության հետագա ուժեղացման համար:

Այն ամեն լավագույնը, ինչ կուտակվել է նոր հասարակարգի բարոյականության փորձով, մենք պետք է հաղորդենք երիտասարդությանը, յուրաքանչյուր պատանու և աղջկա և դրա հետ մեկտեղ հաստատակամորեն ձերբազերծվենք այն ամենից, ինչը խանգարում է ապրել և աշխատել: Մենք դեռևս հանդիպում ենք և, ցավոք, հաճախ ենք հանդիպում եսասիրության, ընչաքաղցության, կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքի դրսևորումների: Եվ սխալ կլիներ թերագնահատել այդ բացասական երևույթների վտանգը:

Ամեն ինչ ցանկացածի պես չէ երիտասարդության ազատ ժամանցի կազմակերպման գործում: Դա պարապ հարց չէ: Չափազանց կարևոր է, որ երիտասարդները սովորեն ռացիոնալ կերպով օգտագործել ազատ ժամանակը: Անբանությունը, խմելը, ես կասեի ոչ զվարճալի «զվարճությունը» հանուն «ժամանակ սպանելու», պատանեկան տարիներին ունեցած այս կորուստները հետո արդեն դժվար է լրացնել:

Եվ, ընդհակառակն, սեփական մտահորիզոնի ընդլայնումը, կուլտուրական մակարդակի, քաղաքական պատրաստականության բարձրացումը, հայրենի երկրամասի ճանաչումը, ֆիզիկական կոփվածքը՝ այս ամենը թանկարժեք կապիտալ են: Կուտակվելով երիտասարդական տարիներին և մշտապես լրացվելով, այն, թանկագին ընկերնե՛ր, ձեզ կծառայի ամբողջ կյանքում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Սովետական մարդկանց հոգևոր աշխարհը հիմնվում է մեր հեղափոխական ուսմունքի ամուր հիմքի վրա: Ձևավորել հայացքները՝ նը-

շանակում է համոզիչ պատասխաններ տալ երիտասարդին հուզող հարցերին:

Ուստի, այնքան կարևոր է, որ երիտասարդության կողմից մարքս-լենինյան տեսության ուսումնասիրումը չհանգեցվի պատրաստի հետևությունների սերտման, այլ օգնի ինքնուրույնաբար դատելու, լուծելու հրատապ պրոբլեմները, տեսնելու հասարակական զարգացման օրինաչափություններն ու հեռանկարները, անհաշտ պայքար մղելու բուրժուական գաղափարախոսության դեմ: Հարկ չկա ապացուցելու, որ դա ամենից առաջ կախված է այն բանից, թե որքանով են իրենք՝ ուսուցիչները, պրոպագանդիստները, հասարակական գիտությունների դասախոսները, գաղափարական կադրերը տիրապետում հեղափոխական տեսությանը:

Քաջ հայտնի է, թե մեր կուսակցությունը երիտասարդության հոգևոր աճի և բարոյական դաստիարակության համար ինչպիսի մեծ նշանակություն է տալիս գրականությանն ու արվեստին: Կուսակցությունը և ժողովուրդը երախտապարտ են և, ինչպես դուք գիտեք, բարձր են գնահատում այն գրողներին, նկարիչներին, թատրոնի և կինոյի գործիչներին, որոնց ստեղծագործությունները բացահայտում են կյանքի ճշմարտությունը, սովետական մարդկանց ոգեշնչում անձնվեր աշխատանքի՝ հանուն կոմունիզմի:

Մեր գրականությունն ու արվեստը հերոսական սովետական ժողովրդի սրտից են բխում: Դրանք զարգացել, առնականացել և կատարելագործվել են մեր երկրի հետ միասին, հասել նշանավոր բարձունքների:

Սովետական գրականության և արվեստի ամբողջ մեծ պատմության ընթացքում հայտնի են դրանք կյանքի հիմնական մայրուղուց շեղելու, մեր իդեալներից կտրելու ոչ քիչ փորձեր: Հիմա էլ Արևմուտքում չեն հրաժարվել այդ նկրտումներից: Մեզ մոտ նույնպես առանձին թափթփուկներ և մոլորյալներ փորձում էին ձայնակցել մեր դասակարգային, գաղափարական թշնամիներին: Բայց նրանց բոլոր ճիգերը ապարդյուն դուրս եկան: Մեզանում հողը խիստ աննպաստ է նման մոլախոտերի աճման համար: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Սովետական գրականության և արվեստի ստեղծագործությունները կազմում են մեր անգնահատելի հոգևոր հարստությունը, մեր սոցիալիստական ազգային հպարտությունը: Դրանց ոչ փոքր մասը մտել է համաշխարհային կուլտուրայի գանձարանի ֆոնդը: Այն ամբողջ հիանալին, ինչ ստեղծել են սովետական գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, թատրոնի և կինոյի գործիչները, ապրում է և կապրի ժողովրդի մեջ, կծառայի մեր մեծ իդեալների հաղթանակին:

Մենք հավատում ենք, որ սովետական գրականության և արվեստի գործիչները այսուհետև էլ իրենց տաղանդը՝ բազմապատկած հայրենիքի հանդեպ անսահման սիրո և իրենց ժողովրդի նկատմամբ հավատարմության հետ, կնվիրաբերեն նոր երկերի ստեղծմանը, որոնք տեղ կգրավեն սովետական և համաշխարհային գրականության ու արվեստի լավագույն ստեղծագործությունների շարքում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կոմերիտական համագումարի ամբիոնից ուզում եմ մեծ հաջողություններ մաղթել երիտասարդ գրողներին, նկարիչներին, կոմպոզիտորներին, թատրոնի և կինոյի ստեղծագործական աշխատողներին: Մենք նրանցից սպասում ենք նոր ստեղծագործություններ: Եվ դա կլինի նրանց անգնահատելի ավանդը մեր ընդհանուր գործում ու ամենից առաջ սովետական երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մեր կուսակցությունը ցանկանում է, որ կոմերիտմիությունը է՛լ ավելի ամրապնդի ավանդական բարեկամությունն ու համագործակցությունը սովետական գրականության և արվեստի գործիչների հետ, է՛լ ավելի ակտիվորեն օգտագործի նրանց ստեղծագործությունը՝ հանուն երիտասարդության կոմունիստական դաստիարակության: Հարկավոր է է՛լ ավելի լրիվ օգտագործել մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ մեր գաղափարական լայն ճակատի բոլոր միջոցները: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կոմերիտմիությունը ունի կոմունիստական դաստիարակության ևս մի շատ մեծ ու շատ պատասխանատու բնագավառ: Ես, թանկագին բարեկամներ, նկատի ունեմ դպրոցը, մեր բազմամիլիոնանոց պիոներիան: Շատ պատանիներ ու աղջիկներ կոմերիտմիության մեջ են մտնում դպրոցական տարիներին, 14—15 տարեկան հասակում: Երկրի դպրոցական կոմերիտական կազմակերպություններն այսօր իրենց շարքերում ունեն ավելի քան յոթ միլիոն անդամ: Դա կոմերիտմիության ամենաերիտասարդ ջոկատն է:

Աշակերտների դաստիարակությունը, պիոներների հետ կատարվող աշխատանքը մշտապես պետք է գտնվեն բոլոր կոմերիտական կազմակերպությունների օրակարգում՝ որպես գլխավոր հարցերից մեկը: Միայն այդ ժամանակ գործարանների, կոլտնտեսությունների, կառույցների, ինստիտուտների և զորամասերի կոմերիտական կազմակերպությունները կըստանան լավ համալրում: Եվ միայն այդպես կոմերիտմիությունը կկարողանա հաջողությամբ կատարել կուսակցության պատասխանատու հանձնարարությունը՝ լինել պատանի լենինյանների ջոկատավարն ու դաստիարակը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Ես կանգ առա կոմերիտմիության աշխատանքի միայն մի քանի արմատական հարցերի վրա: Դրանք բազմազան են և խիստ նշանակալի: Բայց այլ կերպ էլ չի կարող լինել. այդպիսին է լենինյան կոմունիստական երիտասարդական միության պատմական կոչումը:

Այս կապակցությամբ կկամենայի ընդգծել հետևյալը: Մենք հաճախ և իրավացիորեն ասում ենք, որ կոմերիտմիությունը մեծ ուժ է: Միևնույն ժամանակ մենք երբեք, ոչ մի պարագայում իրավունք չունենք մոռանալու, որ կոմերիտմիության ուժը նախ և առաջ կուսակցական ղեկավարման մեջ է, նրա նկատմամբ մեր մշտական ուշադրության, աջակցության և հոգատարության մեջ: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Պանծալի, շքանշանակիր կոմերիտմիության համագումարի ամբիոնից ես դիմում եմ նախ և առաջ կուսակցական մարմիններին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին՝ հայրաբար հոգ տանել կոմերիտմիության մասին, այսուհետև ևս ոչ ուժ, ոչ ժամանակ չխնայել երիտասարդ սերնդի դաստիարակության համար: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կոմերիտմիությունից երբեք հեռու կանգնած չեն եղել և չեն կարող հեռու կանգնած լինել նաև մեր տնտեսական կադրերը, հասարակական կազմակերպությունները: Սկսած մինիստրներից ու գերատեսչությունների ղեկավարներից, ձեռնարկությունների դիրեկտորներից, գլխավոր ինժեներներից ու տեխնոլոգներից մինչև արհմիությունները և մյուս հասարակական կազմակերպություններն ու պետական մարմինները՝ բոլորը պետք է է՛լ ավելի ուշադիր գտնվեն կոմերիտմիության նկատմամբ, ներգրավեն իրենց գործերի մեջ, պաշտպանեն նրա նախաձեռնությունները, ցույց տան անհրաժեշտ օգնություն: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կոմերիտմիությունը միշտ և ամեն ինչում պետք է զգա կուսակցության, նրա բոլոր կադրերի ուղղություն տվող ձեռքը, նրանց օգնությունն ու աջակցությունը: Դա մեզ պատգամել է մեծ Լենինը, այդ են պահանջում մեր կոմունիստական կուսակցության բարձրագույն օրենքները: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ընկերնե՛ր: Դուք, այս դահլիճում նստած՝ համագումարի պատգամավորներդ, ներկայացնում եք սովետական մարդկանց այն սերունդը, որը ծնվել և մեծացել է խաղաղ երկնքի տակ: Դրանում մենք տեսնում ենք լենինյան արտաքին քաղաքականության կարևորագույն արդյունքներից մեկը, քաղաքականություն, որ հետևողականորեն վարում են մեր կուսակցությունը, երկիրը և ամբողջ սոցիալիստական համագործակցությունը:

Պայքարելով ՍՄԿԿ XXIV համագումարի հռչակած խաղաղության ծրագրի իրականացման համար, հաղթահարելով հետադիմական ուժերի հակազդեցությունը, սկսած իմպերիալիստական շրջաններից մինչև մաոյական ղեկավարությունը, մենք անշեղորեն, քայլ առ քայլ ընթանում ենք միջազգային լարվածության թուլացման դժվարին ճանապարհով:

Խաղաղ գոյակցության սկզբունքները ավելի ու ավելի խորն են թափանցում միջազգային հարաբերությունների պրակտիկայի մեջ, ետ մղելով միջուկային աղետի սպառնալիքը: Իրադարձությունների այդպիսի զարգացումը համապատասխանում է մարդկության արմատական շահերին, առավել բարենպաստ պայմաններ է ստեղծում հասարակական առաջադիմության, ժողովուրդների սոցիալական և ազգային ազատագրության պայքարի համար:

Մեր պետության արտաքին քաղաքական կուրսը անվանում են խաղաղ հարձակում: Եվ, թերևս, դրան կարելի է համաձայնել: Հարձակումը ենթադրում է գործողությունների ակտիվություն, առաջ շարժվելու և ձեռք բերած հաջողությունները զարգացնելու անշեղ ձգտում: Մենք կշարունակենք այդ ամենաազնիվ հարձակումը հանուն կյանքի, հանուն մեր երեխաների երջանկության, հանուն մարդկության ներկայի և ապագայի: (ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Զարգացման արդի փուլում է՛լ ավելի ակնբախությամբ երևան եկավ ժամանակակից կապիտալիստական հասարակության հոգևոր սընանկությունը: Իրենց ավելի ու ավելի ուժգին են զգալ տալիս իմպերիալիզմի սոցիալ-տնտեսական հակասությունները: Պետական մոնոպոլիստական կապիտալիզմի սիստեմը ուժեղացնում է սոցիալական անհավասարությունը, ճզմում մարդկանց, հատկապես երիտասարդ սերնդի ստեղծագործական հնարավորությունները, նրան հեռու պահում հասարակական կյանքին ակտիվորեն մասնակցելուց:

Կապիտալիստական երկրների երիտասարդության առջև ամբողջ հասակով ծառանում է ընտրության, իր դիրքավորումները որոշելու պրոբլեմը արդիականության ամենասուր հարցերում՝ պատերազմի և խաղաղության, հասարակության զարգացման ուղիների, գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործման, արվեստի և գրականության դերի, սեփական կյանքի և գործունեության իմաստի հարցե-

րում: Աշխատավոր երիտասարդության լայն խավերը մերժում են բուրժուական հասարակության բարոյականությունը, ավելի ու ավելի համարձակորեն են հանդես գալիս բանվոր դասակարգի գլխավորած հակաիմպերիալիստական շարժման շարքերում:

Դժվար է գերագնահատել սոցիալիստական երկրների կոմերիտմիության և ձեր հասակակիցների գործունեության նշանակությունը ամբողջ աշխարհի աշխատավոր և բովանդակ առաջադեմ երիտասարդության համար: Դուք սոցիալիզմի երկրի լիիրավ քաղաքացիներն եք: Հասարակության բարօրության համար ձեր ակտիվ, ստեղծագործական աշխատանքը, խոր բովանդակությամբ և վեհ խոհերով առլեցուն կյանքը հրաշալի ագիտացիա են հանուն Լենինի անմահ գործի: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Մենք մեծ գոհունակությամբ ենք նշում սոցիալիստական երկրների պատանիների ու աղջիկների հետ ձեր համագործակցության ամրապնդումը, երիտասարդական շարժման մեջ կոմերիտմիության հեղինակության աճը: Սոցիալիստական երկրների կոմերիտմիության և ամբողջ երիտասարդության հետ սերտ կապը, համատեղ գործողությունները, եղբայրական բարեկամությունը, ըստ իս, կոմերիտմիության աշխատանքի կարևորագույն սկզբունքներից մեկն է:

Սոցիալիստական երկրների երիտասարդության կազմակերպություններն այժմ ներկայացնում են պատանիների և աղջիկների մեծ ջոկատներ: Դրանք ձեր բարեկամներն են, պայքարի ձեր դաշնակիցներն ու համախոհները: Սոցիալիզմի երկրների կոմունիստական կուսակցությունները ըստ ամենայնի պաշտպանում են երիտասարդական շարժումը, իսկայական աշխատանք են կատարում երիտասարդ սերնդի դաստիարակության բնագավառում: Մենք դա գիտենք և բարձր ենք գնահատում: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Սոցիալիստական երկրների երիտասարդական կազմակերպությունները բարձր են գնահատում մեր կոմերիտմիության հետ ունեցած բարեկամությունը, այն համարում են իրենց կազմակերպական ու գաղափարական աճի կենարար աղբյուրը, իրենց երկրների երիտասարդության մարքս-լենինյան դաստիարակության կարևորագույն գործոնը:

Վերջին տարիներս զգալիորեն ընդլայնվել և ամրապնդվել են կոմերիտմիության կապերը աշխարհի բոլոր մայրցամաքների առաջադիմական ու դեմոկրատական երիտասարդական շատ կազմակերպությունների հետ: Դա, անտարակույս, մեծ նշանակություն ունի խաղաղության, ազգային անկախության և սոցիալական առաջադիմության համար ժողովուրդների պայքարին ակտիվորեն մասնակցող՝ միջազգային երիտասարդական շարժման տարբեր ջոկատների հակաիմպերիալիստական համերաշխության հետագա ամրապնդման գործում: Հարկավոր է այսուհետև ևս հիմք գտնել համատեղ աշխատելու բոլոր նրանց հետ, ովքեր անկեղծորեն շահագրգռված են տարբեր երկրների երիտասարդության փոխըմբռնման ու համագործակցության զարգացմամբ հանուն նրա լավագույն ապագայի: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թույլ տվեք ձեզ հաջողություններ մաղթել այդ ազնիվ գործունեության մեջ: Միշտ արժանի եղեք կոմունիզմի երիտասարդ կառուցողների, ինտերնացիոնալիստ–լենինյանների, խաղաղության, ազատության և սոցիալական առաջադիմության մարտիկների բարձր կոչմանը: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թանկագին ընկերնե՛ր և բարեկամնե՛ր:

Մենք հաճախ ենք ասում մեր երիտասարդությունը գնում է հայրերի ճանապարհով: Եվ դա ճիշտ է, ընկերնե՛ր: Վստահորեն քայլելով այդ ճանապարհով, երիտասարդությունը շարունակում է մեծ Հոկտեմբերի սկսած ուղին, նախորդ սերունդների փորձը հարստացնում նոր փորձով:

Չկա մի սահմանագիծ, չկա մի ջրբաժան սահման, որին նայելով կարելի լիներ ասել՝ ահա սա ներկան է, իսկ ահա սա՝ ապագան: Արդեն այսօր սեփական աշխատանքային կյանքի յուրաքանչյուր օրով պետք է կառուցել և հաստատել այդ ապագան, մոտեցնել այն, դարձնել իրողություն: Հանուն դրա էլ ձեր միությունը կրում է լենինյան, կոմունիստական միության վեհ կոչումը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ լենինյան կոմերիտմիությունը: Կեցցե՛ սովետների երկրի երիտասարդ սերունդը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը՝ կոմունիզմի կառուցողը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Կեցցե՛ կոմունիստների կուսակցությունը: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Թող ապրեն ու հաղթանակեն մարքսիզմ-լենինիզմի գաղափարները: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, «ՈՒՌԱ՛» ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ: ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐՆ ՈՒ ՀՅՈՒՐԵՐԸ ՀՈՏՆԿԱՅՍ ՎԱՆԿԱՐԿՈՒՄ ԵՆ՝ «ԼԵՆԻՆ-ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ–ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆ», «ԼԵՆԻՆԸ ՄԵԶ ՀԵՏ Է», «ԼԵՆԻՆՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻՆ՝ ՓԱ՛ՌՔ»):

# ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ

Ամբողջ երկրով մեկ ավելի ու ավելի է ծավալվում Սովետական Միության պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախընտրական կամպանիան: Ընտրությունները, որ տեղի են ունենալու հունիսի 16-ին, խոշոր իրադարձություն կլինեն երկրի ու ժողովրդի կյանքում: Բնականաբար, աշխատավորական կոլեկտիվները նախընտրական օրերին աշխատում են բազմապատկված եռանդով, ձգտում են արտադրական հաջողություններով նշանավորել ընտրությունները, նոր, վճռական քայլեր անել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, մեր հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման ճանապարհին: ՍՍՀՄ Գերագույն սովետի ներկա ընտրությունների առանձնահատկությունն այն է, որ սովետական ժողովուրդը նախընտրական հերթափոխի է կանգնել՝ ՍՄԿԿ XXIV համագումարի կանխագծումներն իրականացնելու, ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի որոշիչ տարում նոր նվաճումներ ձեռք բերելու վճռականությամբ:

Ընտրական կամպանիան յուրօրինակ ստուգատես է նաև աշխատավորների դեպուտատների սովետների համար: Կազմելով ՍՍՀՄ քաղաքական հիմքը, իրենց տերիտորիայում նրանք ղեկավարում են պետական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարությունը, հաստատում ժողովրդատնտեսական պլանն ու բյուջեն, կոորդինացնում բոլոր ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեությունը, վերահսկում բնակչության սպասարկման հետ կապված բնագավառներում կիրառվող միջոցառումների մշակումն ու իրականացումը:

Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ կառավարությունը լուրջ ուշադրություն են նվիրում պետական իշխանության և կառավարման մարմինների բոլոր օղակների գործունեության հետագա բարելավմանը, արդյունաբերության, գյուղատնտեսության բնագավառներում, բնակչության սպասարկման ոլորտում սովետների դերի բարձրացմանը, նրանց ֆինանսական ու նյութական բազայի ամրապնդմանը: Դրա շնորհիվ այժմ սովետներն ավելի արդյունավետ գործունեություն են ծավալում, հաջողությամբ լուծում իրենց առջև ծառացած խնդիրները: Նրանք շարունակում են մոտիկից զբաղվել հանրային արտադրության, բնակչության սպասարկման հարցերով, բացահայտում այդ ասպարեզներում նկատվող թերությունների պատճառները, կուսակցական կազմակերպությունների հետ միջոցներ ձեռնարկում գործերի վիճակը բարելավելու համար: Շատ սովետներ ավելի հարուստ փորձ են կուտակել, նրանք հաջողությամբ են կատարում մեր կոմունիստական կուսակցության XXIV համագումա-

րի նոր առաջադրանքները: Նրանք անընդհատ ընդլայնում են իրենց գործունեության շրջանակները, շահագրգռություն հանդես բերում ժողովրդատնտեսական պլանների կատարման, աշխատավորների բազմաբնույթ պահանջմունքների բավարարման գործում:

Արդեն վաղուց ավանդույթ է դարձել մեր երկրի բազմաբովանդակ կյանքի տարբեր ասպարեզներին վերաբերող միջոցառումների կապակցությամբ գնահատել կատարվածը, նշել հետագա անելիքները: Կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում 1973 թվականը բնութագրվում է որպես սովետական ժողովրդի հերոսական գործերի, հարվածային աշխատանքի տարի: ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման, ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կատարման համար աշխատավորների անձնվեր պայքարի կազմակերպման ոլորտում իրենց լուրջ ավանդն ունեն նաև տեղական սովետներն ու նրանց գործադիր կոմիտեները, դեպուտատները, որոնք, իրենց լիազորությունների իրականացման հետ մեկտեղ, հանդես են գալիս որպես ծավալված սոցիալիստական մրցության կազմակերպիչներ:

Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա արդյունքները հանրահայտ են: Մեր հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի իրացման և արտադրության ծավալի, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլաններն զգալիորեն գերակատարվեցին, յուրացվեց հարյուրավոր նոր արտադրատեսակների արտադրություն: Անցյալ տարի գործարկվեցին 655 միլիոն ռուբլու հիմնական արտադրական ֆոնդեր, շահագործման հանձնըվեցին 985 հազար **քմ** ընդհանուր մակերեսով բնակելի տներ, ավելի քան 35.500 տեղով դպրոցներ և մանկական նախադպրոցական հիմնարկություններ: Ավելի բարձր տեմպերով զարգացան էլեկտրաէներգետիկան, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, մետաղամշակությունը: Ապահովվել են արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների մեծ մասի տարեկան պլանով նախատեսված արտադրության ծավալները, իսկ մի շարք տեսակների՝ քիմիական մանրաթելերի, սինթետիկ ամոնիակի, էլեկտրալամպերի, սարքերի ու ավտոմատացման միջոցների, ինչպես նաև մսի, յուղի, պանրի արտադրանքը հասել է հնգամյա պլանով նախատեսված մակարդակին: Սրանք, անշուշտ, լուրջ նվաճումներ են:

Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները գերակատարել են անասնապահական ու հողագործական բարիքների արտադրության, պետությանը հացահատիկ, բանջարեղեն, պտուղներ վաճառելու առաջադրանքները:

Հանրապետության շատ շրջաններում ու քաղաքներում կուսակցական ու սովետական մարմինները մշակել են նաև տնտեսական ու սոցիալ-կուլտուրական հեռանկարային զարգացման կոմպլեքսային պլաններ՝ ըստ առանձին տնտեսությունների, ձեռնարկությունների և բնագավառների: Այդպիսի խրախուսելի նախաձեռնությամբ, օրինակ, հանդես են եկել Հրազդանի շրջանում: Շրջանային սովետը միաժամանակ իրականացնում է պետական իշխանության ու կառավարման տեղական մարմինների աշխատանքը գիտականորեն կազմակերպելու ուսանելի միջոցառումներ: Այս ամենը, ինչ խոսք, անհրաժեշտ պայմաններ է ստեղծում տնտեսությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեությունն է՛լ ավելի արդյունավետ դարձնելու



համար, մանավանդ որ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների աշխատավորները քաջ գիտակցում են, որ 1974 թ. պլանների կատարումն ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան ժողովրդական տնտեսության զարգացման, իններորդ հնգամյակն ամբողջությամբ վերցրած հաջողությամբ ավարտելու համար:

Սովետներն իրենց գործունեությունը ծավալում և մշակած միջոցառումներն իրականացնում են դեպուտատների միջոցով ու նրանց անմիջական մասնակցությամբ: Խոսելով սովետների դերի մասին՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում դեպուտատների ավելի քան երկու միլիոնանոց բանակը համարեց վիթխարի ուժ, որը կառավարում է մեր ամբողջ համաժողովրդական պետության գործերը՝ վարից վեր:

Սովետական դեպուտատները ժողովրդի լիազոր ներկայացուցիչներն են պետական իշխանության մարմիններում, իսկ ժողովուրդը, ինչպես հայտնի է, իր լավագույն մարդկանց, արտադրության առաջավորներին է ընտրում աշխատավորների դեպուտատների սովետներում: «Սովետների կողմից պետական իշխանության իրականացումը հիմնվում է սովետի ամբողջ աշխատանքին յուրաքանչյուր դեպուտատի ակտիվ մասնակցության վրա. դեպուտատները լուծում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերը, կազմակերպում են սովետների որոշումների կենսագործումը, մասնակցում են պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի վերահսկմանը, սովետների այլ լիազորությունների իրականացմանը»,— նշված է «ՍՍՀՄ-ում աշխատավորների դեպուտատների սովետների դեպուտատների ստատուսի մասին» օրենքում: Ինչպես նկատվում է, սովետի ամբողջ աշխատանքն ուղղակիորեն շաղկապված է յուրաքանչյուր դեպուտատի ակտիվ գործունեության հետ: Նշանակում է՝ տնտեսական ու կուլտուրական շինարարության տարբեր ասպարեզներում սովետների իրավասության հարցերը հենց իրենց՝ դեպուտատների գործունեության հիմնական խնդիրներն են, որոնք շատ կողմերով փոխադարձաբար պայմանավորում են ինչպես պետական իշխանության մարմնի, այնպես էլ դեպուտատների աշխատանքի արդյունավետությունը:

Ահա մեր հանրապետության տեղական սովետների դեպուտատների 1973 թվականի գործունեությունը բնութագրող որոշ տվյալներ. 24.646 դեպուտատներ կամ բոլոր դեպուտատների 95,2 տոկոսը, իրենց ընտրողների առջև անցյալ տարի հաշվետվությամբ հանդես են եկել սովետի և իրենց գործունեության մասին: Դեպուտատների կեսից ավելին մասնակցել է սովետների սեսիաների օրակարգի հարցերի քննարկմանը: 19.457 դեպուտատներ ընդգրկված են մշտական հանձնաժողովներում և ակտիվ աշխատանք են ծավալում սովետների, նրանց գործադիր կոմիտեների իրավասության հարցերի նախապատրաստման, նախնական քննարկման, պետական վերադաս մարմինների որոշումների և ընտրողների նակազների կատարման ասպարեզում: Ուժեղացել է դեպուտատների վերահսկողությունը պետական կառավարման մարմինների և պաշտոնատար անձանց աշխատանքի նկատմամբ:

Այժմ առավել մեծացել են դեպուտատներին ներկայացվող պահանջները: Նրանք պետք է լինեն սովետական ժողովրդի ու պետության շահերի իսկական արտահայտիչներ, սոցիալիստական հասարակարգի համոզված պաշտ-

պաններ: Դեպուտատը պետք է անձնական հիանալի օրինակ տա, ունենա բարոյական լավ հատկանիշներ, լինի արտադրության առաջամարտիկ, մեր հայրենիքի առաջընթացի, կոմունիստական հասարակարգի ստեղծման համար մղվող պայքարը համարի իր վեհ նպատակը: Ուստի, միանգամայն օրինաչափ է, որ աշխատավորները պետական իշխանության բարձրագույն օրգանում առաջադրել են իրենց ծոցից ելած հենց այդպիսի մարդկանց և մեծ հույսեր են կապում նրանց հետ: Անչափ ուրախալի է, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների թեկնածուների ցուցակում կարդում ենք մեր հանրապետության գիտության ու կուլտուրայի, հանրային արտադրության անվանի ու ճանաչված մարդկանց անունները:

Ինքնըստինքյան հասկանալի է, որ սովետների և դեպուտատների գործունեության առաջնային հարցերը չեն սահմանափակվում միայն տնտեսական խնդիրներով: Կոմունիզմի կառուցման գործը, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքին, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդմանն ըստ ամենայնի նպաստելը զուգորդվում են մասսաների հետ տարվող աշխատանքի բարելավման, սովետների գործունեության մեջ դեմոկրատական սկզբունքների լայն կիրառման հետ: Եվ դա բնական է, քանի որ կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանը նոր, է՛լ ավելի մեծ պահանջներ է ներկայացնում աշխատավորների դեպուտատների սովետներին, որոնք տեղերում կուսակցության ու պետության քաղաքականության գործնական իրականացումն ապահովող պետական մարմիններ են:

Նշանակալի են տեղական սովետների անմիջական խնդիրները ՍՍՀՄ Գերագույն սովետի առաջիկա ընտրությունների կապակցությամբ: Այդ խնդիրները սահմանված են ՍՍՀՄ սահմանադրությամբ, ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների կանոնադրությամբ: Ամենից առաջ, տեղական սովետները, որպես պետական իշխանության մարմիններ, շրջաններում, քաղաքներում, ավաններում և գյուղերում ապահովում են պետական կարգի պահպանումը, օրենքների կատարումը և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը: Հիմնական օրենքով սահմանված այս լիազորությունները պետք է իրականացվեն նաև նախընտրական կամպանիայի ընթացքում:

Օրենքների, այդ թվում ընտրությունների կանոնադրության ապահովումը, քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը յուրաքանչյուր սովետի ու նրա գործադիր կոմիտեի կարևոր ու առաջնահերթ խնդիրն են: Ընտրությունների նախապատրաստման ու անցկացման ամբողջ համակարգում կարևոր տեղ է հատկացվում նաև ընտրողների ցուցակները կազմելուն, որը բնակչությանը ընտրություններին ակտիվորեն մասնակից դարձնելու կարևոր նախապայման է: Հետևաբար, դա ոչ միայն տեխնիկական, այլև քաղաքական ու կազմակերպական լուրջ գործ է: ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների կանոնադրությամբ, ցուցակները կազմելու պատասխանատվությունը դրված է քաղաքային, շրջանային (շրջանային բաժանում ունեցող քաղաքներում), գյուղական և ավանային սովետների գործադիր կոմիտեների վրա:

Սովետական ընտրական սիստեմի առավելություններից մեկն այն է, որ պետական իշխանության մարմինների ընտրություններին մասնակցում են ՍՍՀՄ 18 տարեկանից և բարձր քաղաքացիները անկախ ռասայական ու ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից: Ընտրու-



թյուններին չեն մասնակցում ազատազրկման դատապարտվածները և օրենքով սահմանված կարգով խելագար ճանաչված անձինք: Այսպիսով, սովետական քաղաքացու ընտրական իրավունքի պահպանումը որոշակիորեն պայմանավորված է նաև ընտրողների ցուցակների լիարժեքությամբ: Այդ նշանակում է, որ տեղական սովետների գործադիր կոմիտեները պատասխանատվության մեծ զգացումով պետք է կազմեն ցուցակները:

Ընտրությունների նախապատրաստությունը չափազանց լուրջ ու պատասխանատու գործ է: ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների կանոնադրությամբ նախատեսված նախընտրական բոլոր միջոցառումներն իրականացվում են սահմանված կարգով ու ժամկետներում: Գործում են Գերագույն սովետի ընտրությունների կենտրոնական ընտրական հանձնաժողովը, Ազգությունների սովետի ընտրությունների Հայկական ՍՍՀ ընտրական հանձնաժողովը: Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության 1974 թվականի ապրիլի 12-ի հրամանագրով հաստատվել է Միության սովետի 7 և Ազգությունների սովետի ընտրությունների 32 օկրուգային ընտրական հանձնաժողովների կազմը: Հանրապետության շրջանային և քաղաքային սովետների գործադիր կոմիտեները կազմել են ընտրական տեղամասեր, հաստատել տեղամասային ընտրական հանձնաժողովների կազմը:

Այս օրերին ակտիվ գործունեություն են ծավալել ագիտկետերն ու ագիտկոլեկտիվները, քաղինֆորմատորներն ու ագիտատորները, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատողները: Նրանք կազմակերպում են դասախոսություններ ու զրույցներ՝ սովետական ընտրական սիստեմի, նախորդ ընտրություններից հետո մեր հայրենիքի, հանրապետության, շրջանի, գյուղի նվաճումների, միջազգային հրատապ պրոբլեմների և բազմազան այլ խնդիրների շուրջ, ընտրողներին ծանոթացնում դեպուտատության թեկնածուների կենսագրությանը:

Սովետական սոցիալիստական դեմոկրատիայի գլխավոր առանձնահատկություններից մեկն այն է, որ ընտրական ամբողջ կամպանիան, ինչպես և քվեարկության արդյունքների ամփոփման պրոցեսը, անցնում է մեր աշխատավորության, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների անմիջական և ակտիվ մասնակցությամբ: Հասարակական կազմակերպությունների ու աշխատավորների ընկերությունների, ինչպես նաև մամուլի ներկայացուցիչները իրավունք ունեն ներկա լինելու քվեարկության արդյունքների ամփոփմանը և՛ տեղամասային, և՛ օկրուգային ընտրական հանձնաժողովներում:

Ինչպես միշտ, այս անգամ նույնպես ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները նոր ուժով կցուցադրեն սովետական ժողովրդի և Սովետական Միության կոմունիստական կուսակցության անխախտ բլոկի միասնությունը:

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ Գերագույն սովետի ընտրությունների կապակցությամբ քաղաքի և գյուղի աշխատավորներին համակած արտադրական խանդավառությունը ծառայեցնել իններորդ հնգամյակի որոշիչ տարվա խնդիրների լուծմանը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, կուսակցության XXIV համագումարի կանխագծումների իրականացմանը:





# ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԸ

Կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված դիմումով ՍՄԿԿ Կենտկոմը նախանշեց ընթացիկ տարվա խնդիրները և դրանց լուծման գլխավոր ուղիները, կուսակցական կազմակերպությունների ու աշխատավորական կոլեկտիվների ուշադրությունը սևեռեց այն բանի վրա, որ 1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան ո՛չ միայն այս հնգամյակը հաջող ավարտելու, այլև կարևոր քայլ կլինեն եկող հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճի և ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ամուր հիմք ստեղծելու համար: Այդ խնդիրների լուծման գործում կուսակցության Կենտկոմը կարևոր տեղ է հատկացնում սոցիալիստական մրցության կազմակերպմանը:

Կենտկոմի դիմումը լայն արձագանք գտավ Հայաստանի աշխատավորության շրջանում, գործունեության ուղեցույց դարձավ կուսակցական կազմակերպությունների համար: Գործարար մթնոլորտում քննարկելով այդ կարևոր փաստաթուղթը՝ հանրապետության կուսկազմակերպություններն ու աշխատավորական կոլեկտիվները որոշեցին հնգամյակի չորրորդ տարվա իրենց անելիքները: Ամենուրեք, արդյունաբերական ու տրանսպորտային ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում մշակվեցին գիտատեխնիկական առաջընթացի արագացման, խնայողության ռեժիմի կիրառման, աշխատանքային ու նյութական ռեսուրսների լավագույն օգտագործման, հողագործության ու անասնապահության գործերի ճիշտ վարման և, վերջապես, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման միջոցառումներ, որոնք հաստատուն տեղ գրավեցին 1974 թ. սոցիալիստական պարտավորություններում: Այդ գործում կուսկազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների համար կարևոր ուղենիշ եղան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» և «1974 թվականին հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշումները: Դրանցում տրված են սոցիալիստական մրցության գլխավոր ուղղությունները, կարմիր թելի պես անցնում է ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի այն պահանջը, որ սոցիալիստական մրցությունը պետք է ծավալել՝ տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք՝ ավելի պակաս ծախսումներով նշանաբանով, մրցության մեջ առանձնահատուկ ուշադրություն նվիրել աշխատանքի արտադրողականության աճի արագացմանը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը:

Պետական պլանների ու ստանձնած պարտավորությունների կատարման շահերը պահանջում են սոցիալիստական մրցության կազմակերպման խնդիրները մշտապես պահել ուշադրության կենտրոնում, ընդհանրացնել ու տարածել մրցության լավագույն փորձը, կիրառել նոր ձևեր ու եղանակներ: Հենց այսպիսի պահանջներ դրեց ՀԿԿ Կենտկոմը կուսակցության քաղկոմ-շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների առջև՝ ընթացիկ տարվա հունվարին քննարկելով կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված



ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի կենսագործման միջոցառումների հարցը: Սոցիալիստական մրցության կազմակերպման բարելավմանը, ստանձնած պարտավորությունների կատարմանն ուղղված միջոցառումներ են մշակել կուսակցության Կիրովականի, Լենինականի, Երևանի քաղկոմները, շատ շրջկոմներ ու սկզբնական կուսկազմակերպություններ: ՀԿԿ Լենինականի քաղկոմի հրավիրած խորհրդակցությունում հանգամանորեն քննարկվել է հնգամյակի որոշիչ տարվա պետական առաջադրանքների կատարման և հանդիպական պլանների ընդունման հարցը. 26 ձեռնարկություններ ընդունել են 9,3 մլն ռուբլու հանդիպական պլան:

Սոցիալիստական մրցության ղեկավարման գլխավոր հոգսը ընկնում է սկզբնական կազմակերպությունների վրա: Կուսակցության ներքին օղակներն ամեն օր, ամեն ժամ առնչվում են մրցողների ու մրցության խնդիրների հետ: Սոցիալիստական պարտավորությունների կատարման հաջողությունը հիմնականում պայմանավորված է մրցության կազմակերպման նոր ձևերի ու եղանակների կիրառման նրանց հմտությամբ: Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, էլեկտրալամպերի, Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանների, Երևանի Ս. Մ. Կիրովի անվան, Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատների և այլ ձեռնարկությունների կուսկազմակերպությունների նախաձեռնությամբ սոցիալիստական մրցությունը կազմակերպվում է համասեռ բրիգադաների, հերթափոխությունների, արտադրամասերի և նույնանման մասնագիտություն ունեցող անհատների միջև: Սոցմրցության նոր պայմանների համաձայն մրցող կոլեկտիվները խմբերի են բաժանվել արտադրության բնույթին, տեխնիկական զինվածությանն ու կարողություններին համապատասխան: Այս մեթոդը նրանց համար ստեղծում է մրցությունում հաղթելու հավասար հնարավորություններ:

Սոցիալիստական մրցության ուշագրավ ձև է մշակել Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի կուսկոմիտեն: Պետական պլանների կատարմանը վերահսկելու և մրցությունը մշտապես գլխավորելու համար այստեղ ստեղծվել են օպերատիվ խումբ ու օպերատիվ շտաբ: Նմանօրինակ նախաձեռնությունն արժանացել է ՀԿԿ Ծահումյանի շրջկոմի հավանությանը: Օպերատիվ խմբեր ու շտաբներ են ստեղծվել նաև ուրիշ ձեռնարկությունների կուսկազմակերպություններում:

Սոցիալիստական մրցությունը բարձր գիտակցականության արգասիք է: Մրցության ընթացքում սովետական մարդիկ դրսևորում են փոխադարձ օգնության ու համագործակցության՝ միայն սոցիալիզմին յուրահատուկ հատկանիշներ, ճշտորեն զուգորդում հանրային ու անձնական շահերը, մտահոգվում արտադրական առաջադրանքների կատարմամբ ո՛չ միայն իրենց աշխատատեղում, այլև բրիգադայում, արտադրամասում, ֆերմայում, ձեռնարկությունում և տնտեսությունում: Նրանք ջանում են որոնել ու գտնել արտադրական նորմաները գերազանցելու հնարանքներ, հանդես գալ այնպիսի նախաձեռնությամբ, որի արմատավորումը օգտակար լինի հարյուր-հազարավոր մարդկանց, առաջ մղի արտադրությունը, արագացնի աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, նպաստի խնայողության ռեժիմի կիրառմանն ու արտադրանքի որակի էական բարելավմանը: Արտադրության առաջավորների շատ մտահղացումներ տոգորված են այդ ոգով:

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի գործվածքային ֆաբրիկայի ենթավարպետ Գ. Թորոսյանն առաջարկել է հնգամյակի որոշիչ տարում աշխատել «Թողարկել միայն բարձրորակ արտադրանք» նշանաբանով: Նորույթը լայն արձագանք գտավ ֆաբրիկայի կոլեկտիվում, քաղաքի մյուս ձեռնարկություններում, ՀԿԿ Լենինականի քաղկոմը հավանություն տվեց դրան: Աշխատանքի արտադրողականության աճի հարուստ ռեզերվներ է պարունակում ենթավարպետներ Գ. Սարգսյանի, Վ. Մնացականյանի, Վ. Մուրադյանի, ջուլհակուհի Լալա Դավթյանի՝ «Յուրաքանչյուր հաստոցից ժամում կես մետրով ավելի արտադրանք» նախաձեռնությունը:

Հնգամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու, որոշիչ տարվա պլանները շուտափույթ կատարելու ազնիվ ձգտումով Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատի աղացող մեխանիզմների վարպետ Բ. Չարչյանը կոչ արեց՝ «Հնգամյակի մնացած երկու տարին դարձնել մեկուկես տարի», իսկ Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի բանվորները՝ «Տարեկան պլանը կատարել ութ ամսում»:

Հայրենասիրական հիանալի, տնտեսական առաջընթացը խթանող շարժում է հանդիպական պլանների ընդունումը: Դրանք սոցիալիստական մրցությունը հասցնում են նոր, ավելի բարձր աստիճանի: Հանդիպական պլանները ենթադրում են ռեզերվներ որոնել յուրաքանչյուր աշխատանքային տեղում, ձեռնարկության ամեն մի օղակում, խնայողության ուղիներ հայտաբերել արտադրական յուրաքանչյուր պրոցեսում: Երկրի առաջավոր ձեռնարկություններում ծնունդ առած այս կարևոր նախաձեռնությունը լայն արձագանք գտավ նաև մեր հանրապետությունում: ՀԿԿ Շահումյանի շրջկոմը վերջերս քննարկեց 1974 թ. համար հանդիպական պլաններ ընդունելու վերաբերյալ «Էլեկտրոն», գարեջրի գործարանների, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, դեկորատիվ գործվածքեղենի և այլ կոլեկտիվների ծավալած շարժումը, պարտավորեցրեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ ամեն կերպ նպաստել աշխատավորների ստեղծագործական ակտիվության աճին, նոր, թաքնված ռեզերվների հայտաբերմանը: Այս տարի Հայաստանի 150 արդյունաբերական ձեռնարկություններ մշակել և ընդունել են ավելի քան 27 մլն ռուբլու հանդիպական պլաններ:

Կուսկազմակերպությունների խնդիրն է՝ ամեն կերպ խրախուսել նախաձեռնությունների հեղինակներին, որոնք, ինչպես գնահատում է կուսակցության Կենտկոմը, նոր տեխնիկային տիրապետած մարդիկ են, ցույց են տալիս բարձրարտադրողական աշխատանքի նմուշներ, անձնական օրինակով փոխում հնացած պատկերացումները արտադրության կազմակերպման ձևերի ու մեթոդների մասին: Նրանց նվաճումները ոգեշնչման աղբյուր են ստեղծագործական աշխատանքում նոր մեծագործությունների և մասսայական հերոսության համար:

Այժմ, երբ ավարտվել է հնգամյակի որոշիչ տարվա առաջին եռամսյակը, կարելի է խոսել սոցիալիստական մրցության և հայրենասիրական նախաձեռնությունների արմատավորման շնորհիվ ձեռք բերված նախնական արդյունքների մասին: Հենց սկզբից ասենք, որ դրանք հիմնականում գոհացուցիչ են և օրինական հպարտության զգացումով են համակում մեզ: Այդ արդյունքները, իրոք, սոցիալիստական մրցության և արտադրության առաջընթացը նշանավորող նախաձեռնությունների պտուղներն են, կուսկազմակերպությունների արդյունավետ գործունեության արգասիքը:

Հանրապետության արդյունաբերության աշխատողները առաջին եռամսյակի արտադրանքի իրացման առաջադրանքը կատարել են 103 տոկոսով՝ երկրին պլանից դուրս տալով 22 մլն 400 հազար ռուբլու արտադրանք: Ընդ որում, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճը կազմում է 11 տոկոս: Մեր հանրապետությունը, 1973 թ. առաջին եռամսյակի համեմատությամբ, երկրին ավելի է տվել 12,7 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ, 5 մլն ռուբլու կաթնամթերք, 17,3 մլն ռուբլու սննդամթերք, 5 մլն ռուբլու էլեկտրատեխնիկական արտադրանք, 3-ական մլն ռուբլու հաստոցներ ու ավտոմատացման սարքավորումներ և այլն: Եռամսյակի հետ հաշիվները լավ են փակել այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, կաբելի, էլեկտրաապարատների, էլեկտրալամպերի, ավտոդողերի, Կիրովականի «Ավտոմատիկա», Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ, Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատները, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկան և տասնյակ այլ ձեռնարկություններ:

Հպարտանալու իրավունք ունեն նաև գյուղի աշխատավորները: Բարձր պահելով սոցիալիստական մրցության դրոշը՝ նրանց հաջողվել է ապահովել



անասնապահական մթերքների արտադրության զգալի աճ: Հայաստանի գյուղատնտեսությունը, ամբողջությամբ վերցրած, մսի, կաթի ու ձվի արտադրությամբ զգալիորեն գերազանցել է անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում ձեռք բերված մակարդակը:

Կուսակցության շրջանային կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության չափանիշը պետք է լինեն մթերումների պլանների կատարման արդյունքները: Այս ասպարեզում ակնառու հաջողությունների են հասել Ապարանի, Արագածի, Ղուկասյանի, Կալինինոյի, Հրազդանի, Էջմիածնի և ուրիշ շատ շրջաններ: Շարունակելով անասունների ինտենսիվ բտման իրենց իսկ մեթոդի կիրառումը՝ Հրազդանի շրջանի տնտեսությունները պետությանը պլանից դուրս վաճառել են 1922 ցենտներ միս:

Ընդհանուր հաջողությունները կոլեկտիվ ջանքերի արգասիք են: Մեզ համար ուրախալի է, որ հանրապետությունն առաջին եռամսյակում, նախատեսված 103.350-ի (այդ թվում արտապլանային առաջադրանքը) փոխարեն, մթերել է 142.784 ցենտներ միս, կաթի մթերումների առաջադրանքը կատարել 105,1, ձվինը՝ 118,6 տոկոսով: Նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն աճել է այդ մթերքների վաճառքը:

Ինչպես տեսնում ենք, սոցիալիստական մրցության ծավալման ասպարեզում կատարված առաջին քայլերը հույս են ներշնչում, որ հնգամյակի որոշիչ տարվա ստանձնած պարտավորությունները կկատարվեն հաջողությամբ: Սակայն առանձին գերատեսչությունների, շրջանների, ձեռնարկությունների ու տնտեսությունների այսօրվա ցածր մակարդակը լրջորեն մտահոգվելու առիթ է տալիս: Ուսումնասիրությունները պարզում են, որ ո՛չ միայն ստանձնած պարտավորությունների, այլև պետական պլանների կատարման գործում կան ոչ քիչ թերացողներ: Օրինակ, թեթև արդյունաբերության մինիստրության համակարգի մի շարք ձեռնարկություններ միասին վերցրած առաջին եռամսյակում պակաս են թողարկել 2.023 մլն, իսկ միայն մարտին՝ 1.135 մլն ռուբլու արտադրանք: Սննդի արդյունաբերության մինիստրության ետ մնացող ձեռնարկությունները առաջին եռամսյակում երկրին պարտք են մնացել 708 հազարի, իսկ միայն մարտին՝ 1.075 մլն ռուբլու արտադրանք: Ճիշտ է, մինիստրությունները կատարել են պլանները, բայց թերացողները, գործերը նման ձևով վարելու դեպքում, կարող են լուրջ դժվարություններ հարուցել ընդհանուր առաջընթացին:

Կուսակցությունը չափազանց մեծ ուշադրություն է նվիրում ժողովրդական սպառման ապրանքների և սննդամթերքների արտադրության զարգացմանը: Դա լուրջ քայլ է լինելու իններորդ հնգամյակի հիմնական խնդրի լուծման ճանապարհին: Բնակչության կենսամակարդակի բարձրացման մասին կուսակցության ցուցաբերած հոգատարության վկայությունն են ՍՄԿԿ Կենտկոմի, ինչպես նաև Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի 1973 թվականի և ընթացիկ տարում ընդունած որոշումները թեթև և սննդի արդյունաբերության ճյուղերի արտադրական կարողությունների կառուցումն ու գործարկումն արագացնելու վերաբերյալ: Այդ որոշումները պետք է, որ գործողության ուղեցույց լինեն տնտեսական ղեկավարների ու կուսկազմակերպությունների համար: Մինչդեռ մի շարք ձեռնարկություններում անհրաժեշտ հետևություն չեն արել կուսակցության նոր պահանջներից: Այդ առումով գործերն անմխիթար են հատկապես Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում: Այս ձեռնարկությունն արդեն հաստատուն տեղ է գրավել թերացողների շարքում: Դրա կոլեկտիվն առաջին եռամսյակի պլանը կատարել է ընդամենը 86 տոկոսով կամ երկրին պակաս է տվել 1.488 մլն ռուբլու արտադրանք: Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատը եռամսյակի իրացման պլանը թերակատարել է 485 հազար ռուբլով: Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկան պակաս է թողարկել 323 հազար, Քանաքեռի կարի ֆաբրիկան՝ 279 հազար ռուբլու արտադրանք: Երևանի պահածոների գործարանը եռամսյակի իրացման պլանը թերակատարել է 16, մարտ ամսվանը՝ 37,3 տոկոսով: Մարտ ամսին չափազանց վատ են աշխատել «Արտենի», Արտաշատի, Հոկտեմբերյանի գինու,

Ալավերդու և Գորիսի գարեջրի և ոչ ալկոհոլային խմիչքների գործարանները: Հնգամյակի որոշիչ տարին վատ սկսեցին Երևանի «Շինանյութ» գործարանը և № 7 կոշիկի ֆաբրիկան: Թվում է, թե այդ ձեռնարկությունների դիրեկցիաներն ու կուսկազմակերպությունները գործնական միջոցներ կձեռնարկեին՝ դրությունը շտկելու համար, բայց այդպես չարեցին: Եվ ահա հետևանքը. մարտ ամսվա առաջադրանքը գործարանը կատարեց միայն 50, իսկ ֆաբրիկան՝ 47,4 տոկոսով:

Շինարարության ասպարեզում հիմնական թերությունը շարունակում է մնալ շինմոնտաժային աշխատանքների դանդաղ տեմպը: Այսօր էլ մի շարք կարևոր օբյեկտներ, որոնք սոցմրցությամբ պետք է շահագործման հանձնվեին 1973 թ., տակավին կառուցման ընթացքի մեջ են: Շինարարական շատ կազմակերպություններ դանդաղ տեմպով սկսեցին հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարին: Արդյունաբերական շինարարության մինիստրության «Երարդշին», «Ախթալշին», «Հրազդանշին» և № 12 (Դիլիջան), գյուղշինմինիստրության № 3 (Կիրովական) և № 8 (Հոկտեմբերյան) տրեստները առաջին եռամսյակի շինմոնտաժային աշխատանքի պլանները կատարել են 91—97, Երևանի քաղաքային սովետի «Երևանշին» գլխավոր վարչությունը՝ ընդամենը 89 տոկոսով:

Շինարարության մեջ աշխատանքի հաջողության չափանիշը օբյեկտները շահագործման հանձնելու պլանի կատարումն է: Սակայն, «Երարդշին» տրեստը և «Երևանշին» գլխավոր վարչությունն այդ ասպարեզում գրեթե մատը մատին չեն խփել, իսկ Երևանի № 3 շինմոնտաժային տրեստը բնակելի տներ շահագործման հանձնելու եռամսյա առաջադրանքը կատարել է 46,8, «Բարձրաբերձշին» տրեստը՝ 89,6 տոկոսով:

Հնգամյակի որոշիչ տարվա սոցիալիստական մրցությամբ տրանսպորտի աշխատողները խոստացել են ապահովել շարժակազմի բարձր արտադրողական ու հստակ աշխատանքը, բարձրացնել բնակչության սպասարկման կուլտուրան: Առաջին եռամսյակի արդյունքները, սակայն, ցույց են տալիս, որ նրանք թերանում են իրենց խոստումը կատարելու մեջ: Դրանց ցցուն օրինակը կարող են տալ Երևանի տրամվայ-տրոլեյբուսի գլխավոր վարչության տընտեսությունները: Տրամվայի երկու և տրոլեյբուսի երեք պարկերը ուղևորների փոխադրման առաջադրանքը կատարել են 81—89, ավտոտրանսպորտի մինիստրության «Հայուղևորտրանս» տրեստը՝ 93 տոկոսով:

Ալմա-Աթայում խոպանի յուրացման 20-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը հանգամանալից խոսեց նաև կուսակցության ագրարային քաղաքականության պրոբլեմների մասին: Նա պարզ ու որոշակի ցույց տվեց մեր երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման կոնկրետ ուղիները, շեշտեց այդ գործում նյութական ու բարոյական խթանման ձևերի կատարելագործման, ինդուստրիալ բազայի ստեղծման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման և ուրիշ այլ գործոնների հույժ կարևոր նշանակությունը: «Մենք,— ասաց ընկ. Բրեժնևը,— բերքատվության բարձրացման հարցերը կապում ենք քիմիացման, հողերի մելիորացիայի իրականացման, ագրոտեխնիկական աշխատանքների ամբողջ կոմպլեքսի լուծման հետ»:

Ընկեր Բրեժնևի ճառում առաջ քաշված դրույթները պետք է գործողության ուղեցույց լինեն մեր հանրապետության կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղատնտեսական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների և կուսակցության գյուղական շրջկոմների համար: Այս պահանջները իրենց կոնկրետ արտահայտությունը գտան նաև ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1974 թ.) պլենումի որոշումների մեջ:

Հանգամանորեն քննարկելով խաղողագործության և պտղաբուծության հետագա զարգացման և ինտենսիվացման ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները՝ ՀԿԿ Կենտկոմի պլենումը նրանց ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ «Գյուղատնտեսական



առանձին մթերքների արտադրության պակասը վտանգի տակ է դնում ոչ միայն այդ ճյուղի առաջադրանքների կատարումը, այլև խիստ բացասաբար է անդրադառնում հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի վրա: Դա հատկապես զգացվում է խաղողագործության և պտղաբուծության բնագավառում»: Պլենումը անհանդուրժելի համարեց, որ կոլտնտեսություններն ու սովխոզները հնգամյակի անցած երեք տարիներին զգալիորեն թերակատարել են խաղողի ու պտղի արտադրության ու մթերումների պլանները:

Սոցիալիստական մրցությամբ Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում խաղողի համախառն արտադրանքը հասցնել 194.100, պտղինը՝ 80.100 տոննայի: Բարձր են նաև մթերումների պարտավորությունները: Այդ բնագծերը, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի պլենումը, հնարավոր է նվաճել խաղողագործության ու պտղաբուծության ինտենսիվ վարման, քիմիացման, ոռոգման ու մեքենայացման աշխատանքների կազմակերպման բարձր մակարդակի ապահովման միջոցով: Գյուղական կուսակցական կազմակերպությունները պարտավոր են նյութական ու բարոյական խթանների ճիշտ օգտագործմամբ լայն թափ հաղորդել այգեգործների սոցիալիստական մրցությանը, հետևել ագրոտեխնիկական միջոցառումների ժամանակին ու բարձր որակով կատարմանը, այգիների բերքատվության բարձրացմանը:

Լավ մեկնարկը միշտ էլ պայմանավորում է գործի հաջողությունը: Անասնապահության ասպարեզի խնդիրների լուծման գործում կարևոր նշանակություն ունեն նաև ձմռան ամիսներին ձեռք բերած արդյունքները: Մինչդեռ, մի քանի շրջաններ ընթացիկ տարին անհաջող սկսեցին: Կրասնոսելսկի շրջանը, օրինակ, առաջին եռամսյակի մսի մթերումների պլան-առաջադրանքը կատարեց 97,9, կաթինը՝ 79,7, ձվինը՝ 76,1 տոկոսով: Մեղրու շրջանը մսի առաջադրանքը թերակատարեց 25,4, Դիլիջան քաղաքը՝ մսինը 16,5, կաթինը 36,8 տոկոսով: Կաթի մթերումների պլանները չեն կատարել նաև Ազիզբեկովի, Իջևանի, Սևանի, Նոյեմբերյանի, Մարտունու, Սիսիանի, Աբովյանի, ձվինը՝ Ազիզբեկովի, Արթիկի, Նաիրիի, Վարդենիսի շրջանները: Այս վիճակը պետք է, որ լրջորեն անհանգստացնի կուսակցության շրջկոմներին ու սկզբնական կուսկազմակերպություններին:

Սոցիալիստական մրցությունը աշխատավորների նախաձեռնությունը զարգացնելու, արտադրության ռեզերվները հայտաբերելու և օգտագործելու, ժողովրդական տնտեսության պլանները կատարելու ու գերակատարելու ներգործուն միջոց է: Հանրապետության կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ պարտքն է՝ բարձր պահել մրցության դրոշը, կիրառել դրա կազմակերպման արդյունավետ ձևեր ու մեթոդներ, միջոցներ ձեռնարկել առաջին եռամսյակում բաց թողածը վերագտնելու, հնգամյակի չորրորդ տարին իրոք որոշիչ դարձնելու համար: Այս խնդիրները լուծելու գործում կուսկազմակերպությունները պետք է լուրջ հետևություններ անեն «Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի՝ կենտկոմի պլենումների միջև ընկած ժամանակամիջոցում (1973 թ. նոյեմբեր—1974 թ. ապրիլ) կատարած աշխատանքի մասին» ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումից: Հնգամյակի որոշիչ տարվա պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու նպատակով Կենտկոմի պլենումը հանգամանորեն նշեց արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի, բնակչության սպասարկման ոլորտի և գյուղատնտեսության աշխատողների ու կուսկազմակերպությունների անհետաձգելի անելիքները: ՀԿԿ Կենտկոմի պլենումի որոշումների անշեղ կենսագործմամբ մեր հանրապետության արտադրական կոլեկտիվները և կուսակցական կազմակերպությունները պատվով կնվաճեն ընթացիկ տարվա նախանշած բնագծերը:

## ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

**Բ. Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*Գիտական կոմունիզմի փառահեղ շենքի հիմքում դրված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարները։ 125 տարի առաջ Մարքսը և Էնգելսը «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը» ավարտեցին մի կոչով, որը խոր ազդեցություն թողեց մարդկության լավագույն զավակների մտքերի վրա և գործողության ծրագիր դարձավ նրանց համար։ Գիտակցության մեջ ծնունդ առնելով որպես կապիտալիստական հասարակության նյութական կյանքի օբյեկտիվ պրոցեսների արտացոլում, ինտերնացիոնալիզմի գաղափարները զարգանալով՝ դարձան բանվոր դասակարգի ամբողջական աշխարհայացք։ Ավելին, դրանք դարձան մարքսիստական կուսակցությունների ներքին և միջազգային քաղաքականության հիմնարար դրույթներից մեկը, կուսակցություններ, որոնք հետևողականորեն պաշտպանում են բանվոր դասակարգի ազգային ջոկատների և բոլոր երկրների պրոլետարների կենսական շահերը։*

***

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության ու քաղաքականության տեսական հիմքերը դրել են Մարքսը և Էնգելսը։ Ուսումնասիրելով կապիտալիստական ֆորմացիան, գիտական կոմունիզմի հիմնադիրները ցույց են տվել, որ ազգայինն ու ինտերնացիոնալը այնպիսի երևույթներ են, որոնց հիմքում ընկած են արտադրության կապիտալիստական եղանակը, արտադրաուժերի զարգացման՝ կապիտալիզմի օրոք ձեռք բերված մակարդակը։ Դրա հետ մեկտեղ, նրանք ընդգծել են, որ երկու երևույթների՝ ազգայինի ու ինտերնացիոնալիստականի հարաբերակցության մեջ վերջինիս օբյեկտիվորեն վիճակված է գերիշխել առաջինի նկատմամբ։ Նման հարաբերակցությունը պայմանավորված է կապիտալիստական արտադրության բնույթով, համաշխարհային կապիտալիստական շուկայով, տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմով, նյութական արտադրության և հասարակական հարաբերությունների հետագա զարգացման օբյեկտիվ պահանջներով։

Մարքսը և Էնգելսը առանձնահատուկ ուշադրություն էին նվիրում վերջին պատճառին։ Այստեղ նրանք տեսան ոչ միայն կապիտալիստական սիստեմի գործունեության, այլև կապիտալի տիրապետությունը հեղափոխական ճանապարհով տապալելու մեխանիզմների բացահայտման հնարավորությունը։ Ուստի, բնական է այն նշանակությունը, որ նրանք տալիս էին նյութական արտադրության՝ ազգային սահմանները գերաճելու օբյեկտիվ պրոցեսի և կապիտալիստական հասարակության հիմնական հակամարտ դասակարգերի արմատական շահերի ինտերնացիոնալացման միջև եղած կապին։ Արտադրության ինտերնացիոնալացման և մի բևեռում բանվոր դասակարգի, մյուս բևեռում՝ կապիտալիստների դասակարգի տնտեսական, սոցիալ-քաղաքական, գաղափարախոսական շահերի ինտերնացիոնալացման միտումի ու փոխներգործության բացահայտումը Մարքսին և Էնգելսին հնարավորություն տվեցին անելու մի շարք հիմնական հետևություններ։ Նրանք ընդգծեցին, նախ, որ պրոլետարիատի ինտերնացիոնալ շահերը ո՛չ միայն չեն հակասում առանձին երկրի բանվոր դասակարգի ազգային շահերին, այլև իրենց էությամբ համընկնում են դրանց։ Երկրորդ. եթե պրոլետարիատի կոնկրետ ջոկատների պայքարի անմիջական ասպարեզը իրենց սեփական երկիրն է, ապա համաշխարհային կապիտալի գերիշխանության հեղափոխական հաղթահարումը հնարավոր է միայն բոլոր երկրների պրոլետարների օբյեկտիվ ջանքերով։ Երրորդ. պրոլետարիատի միջազգային միասնության ապահովումը ո՛չ միայն հնարավոր է, այլև անհրաժեշտ, իսկ դրա անտեսումը հղի է բանվոր դասակարգի գործի համար մեծ վտանգներով։

Այս գաղափարների ճշմարտացիությունը պատմական փորձով ստուգվեց դեռ Մարքսի և Էնգելսի կենդանության օրոք։ XIX դարի 50-ական թվականների վերջին, 60-ական թվականների սկզբին միջազգային պրոլետարական համերաշխության համար մղված պայքարը պսակվեց Բանվորների միջազգային ընկերության՝ I ինտերնացիոնալի հիմնադրմամբ, որի նպատակն էր, ինչպես գրել է Էնգելսը, «մեկ մեծ բանակի մեջ միավորել Եվրոպայի ու Ամերիկայի մարտնչող ամբողջ բանվոր դասակարգը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 22, էջ 61, ռուս.)։ Այդ գաղափարները հաստատվեցին նաև Փարիզի կոմունայի դասերով։ Պրոլետարիատի առաջին հեղափոխությունը ջախջախվեց, Մարքսի խոսքերով ասած, «վերսալյան բուրժուական սրիկաների» և պրուսացիների ուժերի փակված օղակում, որոնց եվրոպական պրոլետարիատը չկարողացավ հակադրել իր միավորված ջանքերը։

Ընդհանրացնելով հասունացած կապիտալիզմի դարաշրջանի բանվորական շարժման փորձը, որոշելով նրա պատմական խնդիրները, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելով բանվոր դասակարգի ազգային ջոկատներին, Մարքսը և Էնգելսը միջազգային համերաշխությունը կտակեցին որպես բոլոր երկրների պրոլետարների ստրատեգիական խնդիր՝ աշխարհի հեղափոխական նորացման համար գալիք մարտերում։

***

Իմպերիալիզմի ստադիայում հետագա տեղաշարժեր կատարվեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի տեսության ու պրակտիկայի բովանդակության և նշանակության մեջ։ Վ. Ի. Լենինը, Մարքսի և Էնգելսի գաղափարները զարգացնելով այնպիսի պայմաններում, որոնք բնութագրվում են մոնոպոլիաների տիրապետությամբ, կապիտալիստական սիստեմի հակասությունների ծայրահեղ սրումով, ընդգծեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի պրակտիկ-քաղաքական ասպեկտները։ Ելնելով ռուսական և համաշխարհային պրոլետարիատի հեղափոխական պայքարի պրակտիկայի շահերից, նա ձգտում էր միջազգային պրոլետարական համերաշխության գաղափարները հնարավորին չափ ավելի լրիվ մարմնավորել բոլշևիզմի ստրատեգիայի ու տակտիկայի մեջ։

Բոլշևիկներին էր վիճակված մշակել քաղաքական մի այնպիսի կուրս, որը նպատակ ունենար գրոհել կապիտալիզմի ամրոցը նախապես միայն Ռուսաստանում։ Իսկ դա ինտերնացիոնալ համերաշխության հարցերին տալիս էր առանձնահատուկ նշանակություն։ Անհրաժեշտություն առաջացավ բացահայտելու ինտերնացիոնալ համերաշխության բովանդակության դիալեկտիկան, դրա դրսևորման ձևերն ու նշանակությունը առանձին երկրների, ամբողջ շրջանների ու ողջ աշխարհի բանվորական շարժման բախտի համար։ Օբյեկտիվորեն հրատապ էր դառնում բանվոր դասակարգի տարբեր ջոկատների շահերի դիֆերենց-

ման պրոբլեմը։ Առանձին երկրների բանվորների ընդհանուր ու մասնավոր, անմիջական ու միջնորդավորված տակտիկական և ստրատեգիական շահերը տարբերակելու խնդիրը ամբողջ հասակով ծառացավ համաշխարհային պրոլետարիատի ազգային ջոկատների առջև։ Ավելին, սոցիալական զարգացման և սոցիալական պայքարի տրամաբանությունը պահանջում էր տարբեր երկրների պրոլետարների շահերի հիերարխիկ համաստորադասում, ուժերի ու գործողությունների կենտրոնացում դասակարգային մարտերի զարգացման գլխավոր ուղղություններում։ Բանվոր դասակարգի ազգային ջոկատները պետք է սովորեին «իրենց» շահերը ենթարկել ինտերնացիոնալ շահերին։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, գրել է Վ. Ի. Լենինը, պահանջում է, նախ, մեկ երկրի պրոլետարական պայքարի շահերը ենթարկել այդ պայքարի շահերին համաշխարհային մասշտաբով, երկրորդ, պահանջում է բուրժուազիայի նկատմամբ հաղթանակ իրականացրած ազգի ունակությունն ու պատրաստակամությունը՝ անելու մեծագույն ազգային զոհողություններ՝ հանուն միջազգային կապիտալի տապալման (տե՛ս ПСС, т. 41, стр. 166)։

Բոլշևիկների ամբողջ քաղաքականության միջով կարմիր թելի նման անցնում է միջազգային պրոլետարական համերաշխությունն ապահովելու գաղափարը նույնիսկ այն դեպքում, երբ իրադարձությունների մակերեսի վրա երևում է սոսկ առանձին երկրի բանվոր դասակարգի տեղական շահերը պաշտպանելու խնդիրը։ Երկրի ներսում, թե համաշխարհային ասպարեզում, համանշանակ թե սահմանափակ խնդիրներ լուծելիս լենինյան կուսակցությունն իր քաղաքականությունը խարսխում է բոլոր երկրների պրոլետարների գործողությունների միասնության վրա։

Այսպես, դեռ մեր դարասկզբին, երբ II Ինտերնացիոնալի օպորտունիստական առաջնորդները, ձայնակցելով իրենց երկրների բուրժուազիային, ժողովուրդներին կոչ էին անում պաշտպանել կառավարող շրջանների ռազմական հատկացումները, բոլշևիկներն անհաշտ պայքար էին մղում «իրենց» և օտար կառավարությունների միլիտարիստական ծրագրերի դեմ, չվախենալով ձեռք բերել «ազգային շահերի դավաճանների» համբավ։ Իսկ երբ ճայթեց առաջին համաշխարհային պատերազմը, բոլշևիկները ջանում էին իմպերիալիստական պատերազմը վերածել քաղաքացիականի, նպատակ ունենալով տապալել կապիտալի տիրապետությունը։ Մի քանի տարի հետո, իրադարձությունների նոր շրջադարձի պայմաններում, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության սկզբից, նրանք նոր երանգ հաղորդեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի բովանդակությանը։ Դրա բարձրագույն չափանիշը դարձավ Ռուսաստանի պրոլետարական հեղափոխության պաշտպանությունը ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի կողմից։ Միջազգային բանվոր դասակարգի կողմից սոցիալիզմի առաջին երկրի պաշտպանությունը մնում էր որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի իդեալներին նրա հավատարմության հիմնական չափանիշը համաշխարհային երկու պատերազմների միջև ընկած ամբողջ ժամանակամիջոցում։

Իրականացնելով ազգերի կամավոր դաշինքի՝ իրավահավասար սովետական սոցիալիստական հանրապետությունների միասնական միութենական պետություն ստեղծելու լենինյան պլանը, սովետական բանվոր դասակարգը, ՍՄԿԿ-ն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դիրքերից լուծեցին ազգային հարցը մեր երկրում։

Պատմական այս մեծ իրողությունը վիթխարի ներգործություն ունեցավ միջազգային պրոլետարական համերաշխության զարգացման վրա։ Ըստ որում՝ եռակի ներգործություն. նախ՝ վիթխարի բազմազգ երկրում ազգային հարցի հետևողական դասակարգային լուծման օրինակի ուժով. երկրորդ, համաշխարհային պատերազմում ֆաշիստական տոտալիտար պետության ջախջախման փաստով. երրորդ, կանխելով հակահեղափոխության արտահանումը և լայն օգնություն ցույց տալով այն երկրներին, որտեղ ռեակցիոն ռեժիմների և գաղութային տիրապետությունների փլատակների վրա ծագեցին ժողովրդադեմոկրատական կարգեր և երիտասարդ պետություններ, որոնք կանգնել են



զարգացման ոչ կապիտալիստական ուղու վրա։ Միջազգային բանվորական շարժումը և միջազգային պրոլետարական համերաշխությունը ստացան նոր թափ։

***

Մեր օրերում պրոլետարական ինտերնացիոնալիզմը հարստանում է թե՛ բովանդակությամբ և թե դրսևորման ձևերով։ Գոյանում են միջազգային պրոլետարական համերաշխության գործողության նոր ոլորտներ, դրա իրականացման նոր եղանակներ ու միջոցներ։ Տեղաշարժեր են կատարվում պրոլետարական ինտերնացիոնալիզմի կառուցվածքի մեջ և ֆունկցիաներում։ Բանվոր դասակարգի ուժերի ու գործողությունների միավորումն անհամեմատ ավելի մեծ նշանակություն է ստանում հասարակական և համաշխարհային զարգացման մեջ։ Վիթխարի չափով աճում է սովետական բանվոր դասակարգի, ՍՄԿԿ-ի, սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունների, մարքսիստական բոլոր կուսակցությունների դերը դեմոկրատիան ու սոցիալիզմը, ազատությունն ու անկախությունը, ժողովուրդների արդարացի խաղաղությունը պաշտպանող աշխատավորների միջազգային համերաշխությունն ապահովելու գործում։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի բովանդակության և դրսևորման ձևերի հարստացման օբյեկտիվ հիմքն են ժամանակակից հասարակության նյութական ու հոգևոր կյանքի արմատական պրոցեսները։ Դրանց շարքում առանձնահատուկ տեղ ունի արտադրաուժերի առավել ինտերնացիոնալացումը։ Արտադրաուժերի ձեռք բերված մակարդակը, տեղի ունեցող գիտա-տեխնիկական հեղափոխությունը ուժեղացնում են ժողովուրդների արտադրական գործունեության ինչպես մասնագիտացումը, այնպես էլ ինտերնացիոնալացումը։ Ընթանալով տարբեր ինտենսիվությամբ և առաջացնելով տարբեր, անգամ հակադիր սոցիալական հետևանքներ հասարակական ու համաշխարհային տարբեր սիստեմների պայմաններում, այդ պրոցեսներն ստացել են աննահանջ գործող տենդենցի բնույթ։ Արդեն այսօր գերազգային ու ազգամիջյան 500 ընկերությունների բաժին է ընկնում կապիտալիզմի զարգացած երկրների արդյունաբերական արտադրանքի մոտ կեսը։ Վերազգային ֆինանսա-արդյունաբերական հզոր կոմպլեքսները, առաջին հերթին ԱՄՆ-ը, ակտիվորեն միջամտելով ազգային էկոնոմիկաների լայն շրջանի հարցերի լուծմանը, սրում են կապիտալիզմի ավանդական հակասությունները և ծնում նորերը։ Դրա հետ մեկտեղ նրանք օբյեկտիվորեն սրում են պրոլետարիատի դասակարգային ու համադեմոկրատական պայքարը, ուժեղացնում նրա հակազդեցությունը ազգային ու միջազգային մասշտաբով։

Այլ են արտադրության ինտերնացիոնալացման սոցիալական հետևանքները սոցիալիստական հասարակական և միջպետական հարաբերությունների պայմաններում։ Առավել լրիվ արտահայտելով նյութական արտադրության զարգացման պահանջները, սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը դառնում է հասարակական-տնտեսական բարձրագույն ֆորմացիայի ո՛չ միայն տնտեսական, այլև ուրիշ շատ հակասությունների լուծման կարևոր միջոց։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմն այժմ բնութագրվում է նաև կառուցվածքային-ֆունկցիոնալ տեղաշարժերով։ Ներկայումս, ինչպես ընդգծվում է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. Մոսկվայի միջազգային խորհրդակցության որոշումներում, «հակաիմպերիալիստական ուժերի միասնական գործողությունների հիմնական օղակը առաջվա պես մնում է պայքարն ընդդեմ պատերազմական վտանգի, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի վտանգի, որը շարունակում է ժողովուրդներին սպառնալ մասսայական բնաջնջմամբ, պայքարը հանուն ամբողջ աշխարհի խաղաղության»։ Մեր ժամանակի կարևորագույն հարցում, որի լուծման եղանակից այժմ արդեն անմիջականորեն կախված է երկրագնդի ո՛չ միայն սոցիալական, այլև բիոլոգիական կյանքը, բանվոր դասակարգի արմատական շահերը համընկան մարդկության բացարձակ մեծամասնության կենսական շահերին։ Այժմ

ջերմամիջուկային պատերազմը կանխելու խնդիրը դարձել է պրոլետարական պայքարի և բանվոր դասակարգի միջազգային համերաշխության անկյունաքարը:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի բովանդակության, դրսևորման ձևերի, կառուցվածքի և ֆունկցիաների մեջ տեղի ունեցած փոփոխությունների հետ են կապված բանվոր դասակարգի միջազգային համերաշխության իրականացման մեթոդների ու միջոցների մեջ տեղի ունեցող տեղաշարժերը արդի հակաիմպերիալիստական պայքարում: Դեռ 1969 թվականին Լ. Ի. Բրեժնևը ընդգծում էր, որ «...այսօր, կապիտալիզմի խորացող ընդհանուր ճգնաժամի պայմաններում, տեղի է ունենում համաշխարհային ասպարեզում իմպերիալիզմի ստրատեգիայի ծանրության կենտրոնի որոշակի տեղաշարժ: Իմպերիալիզմի քաղաքականությունը ավելի ու ավելի մեծ չափով է որոշվում համաշխարհային սոցիալիզմի, ազգային ազատագրական հեղափոխությունների և բանվորական շարժման դեմ մղվող ընդհանուր պայքարի դասակարգային նպատակներով» (Լենինյան կուրսով, հատ. 2, էջ 500—501):

Հակաիմպերիալիստական պայքարի հարցերի ողջ կոմպլեքսից անջատելով առավել ընդհանուրն ու նշանակալիցը՝ համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը կանխելու հարցը, միջազգային կոմունիստական և բանվորական շարժումը ձգտում է շրջափակել ռեակցիոն բռնությունը՝ որպես սոցիալական հարաբերությունները կարգավորելու եղանակ: Բանվոր դասակարգի հարաճուն համերաշխությունը, համաշխարհային հեղափոխական շարժման ուժերի համախմբումը հուժկու պատնեշներ է դնում իմպերիալիզմի և իմպերիալիստական բռնության ճանապարհին: Անցյալում ամենազոր պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, որը, իր դասակարգային շահերից ելնելով, ցանկացած ձևով վերափոխում էր աշխարհը, այժմ ստիպված է հարմարվել դարաշրջանի սոցիալական դինամիզմին: Իմպերիալիստական բռնությունը՝ որպես սոցիալական գործողության մեթոդ, այժմ շրջափակվում է բանվոր դասակարգի ինտերնացիոնալ համերաշխությամբ, նրա պայքարով:

Իմպերիալիստական բռնությունը շրջափակելու ասպարեզում բանվոր դասակարգի ինտերնացիոնալ գործողություններն իրականացվում են ոչ ընդհանուր ձևով: Իրենց էությամբ լինելով դասակարգային, դրանք նպատակամղված են, դիֆերենցված ու կոնկրետ իրենց բոլոր դրսևորումներում՝ իմպերիալիստական բռնության գաղափարախոսության ու հոգեբանության պսակազերծումից մինչև պրակտիկ-քաղաքական հարկադրումը իմպերիալիզմին՝ ձեռնպահ մնալու զինված բռնությունից: Բանվոր դասակարգի պայքարի հստակությունն ու դինամիզմը կոտրեցին իմպերիալիստական բռնության ամբարտավանությունը: Այդ բանը խոստովանում են արևմուտքի ռեալիստորեն մտածող շրջանները: Արդեն 50-ական թվականների կեսերին ամերիկացի սոցիոլոգ Լյուիս Մեմֆորդը, անգլիացի փիլիսոփա Բերտրան Ռասելը, արևմտագերմանական էկզիստենցիալիստ Կարլ Յասպերսը, իսկ 60-ական թվականներին ու 70-ական թվականների սկզբին նաև արևմուտքի քաղաքական այնպիսի լիդերներ, ինչպես դը Գոլը, Պոմպիդուն, Քենեդին, Նիքսոնը, խոստովանեցին զինված բռնությունը որպես միջազգային քաղաքականության միջոց կիրառելու անհեռանկարայնությունը:

Չնայած դրան, բռնության ջատագովումն ու հոգեբանությունը, ինչպես նաև բռնության բուն պրակտիկան հաղթահարելու խնդիրը, դեռևս մնում են հրատապ: Հանդես գալով խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսում (Մոսկվա, 1973 թ.) Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց բռնության հոգեբանությունը հաղթահարելու և պետությունների հարաբերություններում ուժ կիրառելու և ուժով սպառնալու սկզբունքներից հրաժարվելու անհրաժեշտությունը: «Մենք կուզենայինք,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ այդ սկզբունքները եվրոպական կյանքի ամենօրյա պրակտիկայի, եվրոպական ժողովուրդների հոգեբանության մեջ մտնեն որպես սրբազան, անառարկելի սկզբունքներ, որ դրանք թե՛ կառավարությունների և թե ժողովուրդների կողմից ընդունվեն ու կենսագործվեն»:

ՍՍՀՄ-ի, մեր ժամանակի հեղափոխական բոլոր ուժերի ջանքերով ժողո-



վուրդների հարաբերություններում սկսված բեկումը հուսալի խաղաղության վերածելու համար մղվող պայքարը միջազգային բանվորական շարժման հետևողական դասակարգային գործունեությունն է: Օրակարգից բնավ չհանելով ազգային սահմաններում «զուտ» դասակարգային շահերի համար մղվող պայքարը, ընդհակառակը, դրան հաղորդելով նոր թափ, համաշխարհային ջերմամիջուկային աղետը կանխելու և պատերազմները հասարակության կյանքից բացառելու համար մղվող ամենապարփակ մարտը դարձել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի իդեալներին ու սկզբունքներին բանվոր դասակարգի առանձին ջոկատների, նրանց քաղաքական կուսակցությունների հետևողական նվիրվածության փորձաքարը:

Որքան ավելի ակնհայտ է այս ճշմարտությունը, այնքան ավելի անտրամաբանական ու հակաբնական են ՉԺՀ-ի ներկայիս ղեկավարների գործողությունները, որոնց նպատակն է՝ թունավորել միջազգային մթնոլորտը, ուժեղացնել լարվածությունը, խարխլել սոցիալիզմի երկրների միջազգային դիրքերը, խրախուսել ագրեսիվ ռազմական բլոկների և կապիտալիստական երկրների տնտեսական ներփակ խմբավորումների ակտիվացումը, ի չիք դարձնել սպառազինությունների մրցավազքը սահմանափակելու և կրճատելու բոլոր ռեալ միջոցառումները, վարկաբեկել այն օգնությունը, որ Սովետական Միությունն ու սոցիալիստական համագործակցության մյուս երկրները ցույց են տալիս ագրեսիայի զոհերին: Վտանգավոր անկայունության տարր խցկելով միջազգային կյանքի մեջ, չինական ղեկավարների նման քաղաքականությունը խոչընդոտում է բանվոր դասակարգի միջազգային համերաշխության ամրապնդմանը, նրա հակաիմպերիալիստական պայքարին:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հսկայական ուժը փորձության ենթարկվեց հասարակական և համաշխարհային զարգացման ավելի քան մեկդարյա պրակտիկայով: Միջազգային պրոլետարական համերաշխությունը իր կենսունակությունն ապացուցեց ամենադինամիկ դարաշրջանի փորձությունների բովում, դարաշրջան, որի հիմնական բովանդակությունն է անցումը կապիտալիզմից սոցիալիզմին: Անշեղորեն հարստանալով, պատմության այս նոր երևույթը միաժամանակ կոնկրետանում է և հարաճուն ներգործություն ունենում մարդկության կյանքի բոլոր կողմերի վրա:

Այժմ նրա կարևորագույն բաղկացուցիչ մասն է սոցիալիստական համագործակցության երկրների միասնությունը: Սոցիալիզմի ուղին ընտրած ժողովուրդների համագործակցությունն ահա արդեն երեք տասնամյակ է, ինչ խոր ներգործություն է ունենում ամբողջ մարդկության ճակատագրի վրա: Սոցիալիզմի հաղթանակը Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում, համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումը արմատական ազդեցություն ունեցան մեր օրերի սոցիալական դինամիկայի բովանդակության, ուղղության ու տեմպի վրա:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, որոնք առավել ամբողջականորեն իրականացվում են համաշխարհային սոցիալիստական սիստեմի շրջանակներում, նպաստում են ժողովուրդների ու պետությունների միջև որակապես նոր հարաբերությունների հաստատմանը: Իրագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը, սոցիալիզմը հաջողությամբ պայքարում է հանուն այն բանի, որ ապահովվի պատմական շրջադարձը լարվածության մեղմացման, միջազգային իրադրության նորմալացման, սոցիալական տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջև փոխըմբռնման և համագործակցության ասպարեզում: Սոցիալիստական երկրների

համախմբվածությունը, մեր սերտ համագործակցությունը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, այն ամենի հիմքն են, ինչին մենք հասել ենք լարվածության մեղմացման գործում։

Նորապես գիտակցելով պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հսկայական դերը երկու հակադիր աշխարհների պայքարի գործում, ՍՄԿԿ-ն անշեղորեն վարում է միջազգային կոմունիստական շարժման միասնությունն էլ ավելի ամրապնդելու քաղաքականություն։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքները, արտահայտելով բանվոր դասակարգի արմատական շահերը նրա ազատագրական պայքարում, անշեղորեն հարստանում են իրենց բովանդակությամբ և դրսևորման ձևերով, կառուցվածքով և ֆունկցիաներով։ Պատմական նոր պայմաններում պրոլետարիատի միջազգային համերաշխության նպատակակետը դարձան աշխարհում առաջին սոցիալիստական պետությանը ցույց տրվող աջակցությունը և իմպերիալիզմի հարվածային ուժի՝ գերմանական ֆաշիզմի ջախջախումը երկրորդ համաշխարհային պատերազմում։ Իսկ երբ աշխարհին սպառնաց ջերմամիջուկային աղետի վտանգը, միջազգային պրոլետարական համերաշխության ողջ ուժը, բնականաբար, ուղղվեց նոր համաշխարհային պատերազմը կանխելու նպատակին։

Այսպիսով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների ու սկզբունքների դիալեկտիկան, լինելով սոցիալական պրոցեսի օբյեկտիվ դիալեկտիկայի յուրահատուկ արտահայտություն, ավելի ու ավելի տիրապետելով մասսաներին, վերածվում է աշխարհը վերափոխող հսկայական նյութական ուժի։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

Կ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ինչպես միշտ, հասուն սոցիալիզմի պայմաններում ևս, մեծ ուշադրություն է նվիրում ազգային հարաբերությունների զարգացման օրինաչափություններին, աշխատավոր մասսաներին համակում սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, ճշտորեն զուգակցում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ազգային և ինտերնացիոնալ շահերը։ Սովետական բազմազգ երկրի հետագա զարգացման համար կենսական նշանակություն ունեցող տեսական պրոբլեմների ոլորտում լուրջ ավանդ է սովետական մարդու համազգային հպարտության վերաբերյալ դրույթը, որն առաջ է քաշված ՍՍՀՄ 50-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ։ Իր սոցիալ-քաղաքական նշանակությամբ կարևոր այս դրույթը խարսխվում է սոցիալիզմի առաջին երկրի առաջացման ու զարգացման օրինաչափությունների գիտական հիմնավորման, սոցիալիստական տնտեսական ու հասարակական հարաբերությունների և պրոցեսների ողջ սիստեմի կատարելագործման, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վրա։

ՀԱՅՏՆԻ Է, ՈՐ ԱԶԳԱՅԻՆ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ դարեր շարունակ եղել է հայրենասիրության կարևոր բաղկացուցիչ տարրը, ժողովրդի սոցիալական հոգեբանության էական բաղադրիչը։ Ազգային հպարտությունը բազում սերունդների գիտակցության մեջ ձևավորվել ու ամրակայվել է պատմական երկարատև զարգացման ընթացքում՝ յուրաքանչյուր երկրի տնտեսական, քաղաքական, գաղափարական ու կուլտուրական ուրույն պայմանների ազդեցությամբ։

Հասարակական առաջընթացի տարբեր ժամանակահատվածներում հակամարտ դասակարգերն ունենում են ազգային հպարտության ու հայրենասիրության իրարամերժ ըմբռնումներ։ Կապիտալիզմի զարգացմամբ, հատկապես իմպերիալիզմի դարաշրջանում, կապիտալիստական երկրների բուրժուազիան՝ առաջնորդվելով դասակարգային նեղ շահերով, հանդես է գալիս նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի և ռասիզմի դրոշով։ Կապիտալիզմի պաշտպաններն առիթը բաց չեն թողնում, որպեսզի ազգային հպարտության զգացմունքն օգտագործեն տարբեր ազգերի աշխատավորների միջև թշնամանք ու ատելություն սերմանելու համար։

Ծեշտելով այս իրողությունը, միաժամանակ, անհրաժեշտ է նշել, որ կապիտալիստական հասարակարգի ընդերքում է գոյավորվում ու առնականանում ամենահետևողական և ամենամարդկային հայրենասիրական ուժը՝ հեղափոխական պրոլետարիատը, որն իր ձգտումներով ու շահերով ներհակ է կեղեքող բոլոր դասակարգերին ու խավերին։ Իշխանություն նվաճած բանվոր դասակարգը ժառանգում ու զարգացնում է դարերի ընթացքում ժողովրդի ստեղծած նյութական ու հոգևոր մշակույթի լավագույն արժեքները։ Նա սիրում է իր հայրենիքն ու մայրենի լեզուն, իրավամբ հպարտանում օտար ու դասակարգային կեղեքիչների դեմ մարտնչողների սխրանքներով, ժողովրդի հեղա-

փոխական, ազատագրական մարտերի ավանդույթներով:

Հեղափոխական գոռ մարտերում մաքառելով իր հայրենիքի ազատության ու լավագույն ապագայի համար՝ բանվոր դասակարգը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մշակում է նաև ազգային հպարտության իր ըմբռնումը, որը գիտականորեն հիմնավորեց Վ. Ի. Լենինը: Պարզաբանելով պրոլետարիատի ազգային հպարտության էությունը՝ Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ այն տրամագծորեն հակադիր է բուրժուական նացիոնալիզմին: Մեծ առաջնորդը գիտականորեն հիմնավորեց, որ պրոլետարիատն՝ այն հզոր ուժն է, որը պատմության մեջ առաջին անգամ հայրենասիրությունը և դրա անբաժան տարրը՝ ազգային հպարտությունը, զուգակցում է հետևողական ինտերնացիոնալիզմի հետ: «Խո՞րթ է արդյոք մեզ համար,— գրել է Վ. Ի. Լենինը,— վելիկոռուսական գիտակից պրոլետարներիս համար, ազգային հպարտության զգացումը: Իհարկե, ո՛չ: Մենք սիրում ենք մեր լեզուն և մեր հայրենիքը... Մեզ համար ամենից ավելի ցավալի է տեսնել ու զգալ, թե ցարական դահիճները, ազնվականներն ու կապիտալիստները մեր գեղեցիկ հայրենիքն ինչպիսի բռնությունների, ճնշման ու ծաղրուծանակի են ենթարկում:

...Մենք լի ենք ազգային հպարտության զգացմունքով, և հենց այդ պատճառով մենք **առանձնապես** ատում ենք մեր ստրկական անցյալը... (Երկեր, հ. 21, էջ 118):

Ահա թե ինչու բանվոր դասակարգը, հակադրվելով բուրժուական հայրենիքում տիրող կարգերին, հեղափոխական եղանակով վերացնում է այդ ստրկական անցյալը, ստեղծում իր ազատ ու անկախ հայրենիքը: «Մենք,— ասում է Վ. Ի. Լենինը,— վելիկոռուսական բանվորներս, ազգային հպարտության զգացմունքով լի, կամենում ենք, ինչ գնով էլ լինի, ունենալ ազատ ու անկախ, ինքնուրույն, դեմոկրատական, հանրապետական, հպարտ վելիկոռուսիա, որը հարևանների նկատմամբ իր հարաբերությունները կհաստատի հավասարության մարդկային սկզբունքի վրա, և ոչ թե մեծ ազգը նսեմացնող արտոնությունների ճորտատիրական սկզբունքի վրա» (նույն տեղը, էջ 120): Ահա հայրենասիրության նման սկզբունքների իրականացումն է հնարավորություն ընձեռում ամրապնդելու բոլոր երկրների աշխատավոր զանգվածների ինտերնացիոնալ կապերը, արգասաբեր հող ստեղծելու ազգային առողջ հպարտության համար:

Այսպիսով, նացիոնալիստական ու մեծապետական շովինիզմի կաշկանդող կապանքներից զերծ, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներից սնվող ազգային հպարտությամբ տոգորված բանվոր դասակարգը, շահագործողների տիրապետությունը տապալելուց հետո, իր ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, օբյեկտիվ պայմաններ ու համակողմանի հնարավորություններ է ստեղծում հայրենասիրական այդ վեհ զգացմունքի զարգացման ու խորացման և այն աշխատավոր գյուղացիության, սոցիալական խմբերի բնորոշ հատկանիշը դարձնելու համար:

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ հաղթանակից, այնուհետև ՍՍՀՄ կազմավորումից հետո ազգերի իրավահավասարության ու եղբայրության լենինյան գաղափարների լիակատար կենսագործման համար ստեղծվեցին բարենպաստ նախապայմաններ: Մեր երկրի բազմազգ աշխատավորների սոցիալիստական հոյակապ հայրենիքը կերտվեց ու հզորացավ նրանց համատեղ մաքառումների ու հերոսական աշխատանքի բովում: Ստեղծվեց, Լենինի խոսքերով ասած, որակապես, իր բնույթով նոր՝ սոցիալական, քաղաքական և կուլտուրական միջավայր, այսինքն՝ աշխատավոր մարդու ազատ ու բարգավաճող սոցիալիստական հայրենիքը:

Սոցիալիզմը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների կյանքում հարուցեց սոցիալ-քաղաքական արմատական տեղաշարժեր: Պատմական կարճ ժամանակամիջոցում փայլուն հաղթանակներ նվաճեց ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը: Նոր հասարակարգի կառուցման ընթացքում իրականացված սոցիալ-տնտեսական, քաղաքական, կուլտուրական վիթխարի վերափոխումների շնորհիվ ՍՍՀՄ բոլոր ազգերն աննախընթաց ծաղկում ապրեցին: Առաջին անգամ նրանց միջև ստեղծվեցին բարեկամության, փոխադարձ վստահության ու եղբայրական փոխօգնության այնպիսի կայուն հարաբերություններ, որոնք Վ. Ի. Լենինը համարում էր մարդկության առաջընթացի կարևորագույն ազդակները: Մեծ առաջնորդը գիտական խորաթափանցությամբ կանխատեսում էր, որ կգա մի ժամանակ, երբ մարդկանց համակեցության նոր, բարձրագույն ձևերը, բոլոր ազգերի աշխատավորների առաջադեմ ձգտումներն ու երազանքները կիրականանան ու նրանց օրինական, կենսական պահանջմունքները կբավարարվեն ինտերնացիոնալ միասնությամբ:

Այժմ զարգացած սոցիալիզմի երկրում գիտական այդ կանխատեսումը իրականություն է դարձել: Հետևողականորեն, ստեղծագործաբար իրականացնելով սոցիալական ու ազգային հարաբերությունների լենինյան սկզբունքները՝ ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը լայն հնարավորություններ ստեղծեցին ՍՍՀՄ ժողովուրդների բարոյական կերպարի նույնանման հատկանիշների ձևավորման ու կատարելագործման, կոմունիզմի բազմազգ կառուցողների ընդհանրության առաջացման համար:

Այսօր ՍՍՀՄ-ը ավելի քան հարյուր ազգերի պատկանող 250 **մլն** իրավահավասար մարդկանց հարազատ տունն է: «Սովետական բոլոր մարդիկ,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— առանց ազգային պատկանելության կամ լեզվի տարբերության հպարտանում են իրենց մեծ հայրենիքով՝ մարդկության պատմության մեջ նոր դարագլխի ավետաբերով, հպարտանում են միլիոնների ոգեշունչ աշխատանքով, որոնք կոմունիստների առաջնորդությամբ կառուցել են նոր, իրոք արդարացի և ազատ հասարակարգ, որոնք ստեղծել են բազում ժողովուրդների եղբայրական աննախադեպ դաշինքը: Նրանք հպարտանում են միլիոնավոր հերոսների՝ այդ ժողովուրդների որդիների ու դուստրերի սխրագործությամբ, որոնք իրենց կյանքն են նվիրաբերել այդ նվաճումների համար մղված համատեղ պայքարում: Նրանք հպարտանում են ազատագրված աշխատանքի մեծագործություններով, գիտության նվաճումներով, ազգային բազմապիսի ձևերով օժտված կուլտուրայի ծաղկմամբ, սովետական ժողովրդի ամբողջ ապրելակերպով, որը մարդկությանը ցույց տվեց նոր հորիզոններ, բարոյական նոր արժեքներ և իդեալներ»: Ուստի այժմ, ՍՍՀՄ կազմավորումից կես դար անց, նշում է Լ. Ի. Բրեժնևը, հաստատորեն կարելի է ասել, որ գոյավորվել է մեր ժողովրդի հայրենասիրական մեծ զգացմունքը՝ **սովետական մարդու համազգային հպարտությունը** (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, **ՍՍՀՄ 50-ամյակի մասին**, էջ 92):

Այս հիրավի վեհ զգացմունքը, որը բնորոշ է Սովետական Միության բոլոր ազգերին ու ազգություններին, առավել զարգացավ ու խորացավ սովետական ժողովուրդ հանրության ձևավորմամբ: Սոցիալական արմատական վերափոխումների, իմպերիալիզմի բոլոր ոտնձգություններից սոցիալիզմի նվաճումների պաշտպանության, կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրերի իրականացման ասպարեզում ՍՍՀՄ բազմազգ աշխատավորների համատեղ ջանքերը զարգացման նոր աստիճանի բարձրացրին մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական միասնությունը: Ձևավորվեց ու ամրապնդվեց մարդկանց պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը, որը մեր երկրի դասակարգերի միջև ու ազգային հարաբերությունների ոլորտում կատարված տեղաշարժերի ու սոցիալական մեծ վերափոխումների, ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի օրինաչափ արգասիքն է: Սովետական ժողովուրդ հանրությունը մեր ողջ հասարակությունն է, բոլոր դասակարգերն ու սոցիալական խմբերը, այն, միաժամանակ, ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների համագործակցությունն է:

Այսպիսով, սովետական մարդկանց համազգային հպարտության զգացմունքը մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների անխախտ միասնության հոգևոր արտացոլումն է, զգացմունք, որի օբյեկտիվ հիմքը ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների սոցիալ-տնտեսական, իրավա-քաղաքական, գաղափարախոսական և կուլտուրական կյանքի ընդհանրությունն է:

Այժմ համառոտակի խոսենք այդ օբյեկտիվ հիմքի փոխկապակցված

տարրերի մասին, որոնք գոյավորեցին սովետական մարդու համազգային հպարտության զգացմունքը:

ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ եղբայրական սերտ միասնությունը, համազգային հպարտությունը ամենից առաջ պայմանավորված են նրանց տնտեսական շահերի ընդհանրությամբ, որը խարսխվում է արտադրամիջոցների հանրային սեփականության վրա: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունն իր բնույթով ինտերնացիոնալ, փոխկապակցված տնտեսական հարաբերությունների միասնական կոմպլեքս է, որը սովետական ժողովրդի բովանդակ կյանքի անսասան հիմքն է: Այդ միասնական կոմպլեքսի բաղկացուցիչ մասն է միութենական յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան, որը զարգանալով համապետական ընդհանուր պլանով, լիովին համապատասխանում է ինչպես ողջ երկրի, նույնպես և յուրաքանչյուր հանրապետության զարգացման շահերին:

ՍՍՀՄ հզոր էկոնոմիկան ստեղծվել է սովետական բոլոր ժողովուրդների համատեղ ջանքերով: Ներկայումս, երբ նրանք միահամուռ ուժերով կառուցում են կոմունիզմի նյութատեխնիկական բազան, անչափ մեծանում է նրանց միասնական աշխատանքի դերը: Գիտատեխնիկական արդի հեղափոխության ազդեցությամբ առավել լայն ծավալ են ստացել բոլոր հանրապետությունների տնտեսությունների մասնագիտացումն ու կոոպերացումը, առանց որոնց հնարավոր չէ հաջողությամբ վարել ինչպես համասովետական, այնպես էլ յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան: Համասովետական էկոնոմիկան սևեռված ձևով արտացոլում է այն վեհ նպատակներն ու ծրագրերը, որոնցով շահագրգռված են բոլոր ազգերն ու ազգությունները: Այս աննախադեպ պատմական եղելության փայլուն վկայություններից է ընթացիկ հնգամյա պլանը, որի հաջող կենսագործումը կապահովի բոլոր հանրապետությունների հսկայական նոր առաջընթացը:

Մեր երկրում գործող կամ կառուցվող ամեն մի ձեռնարկության, հաճախ նույնիսկ ամեն մեքենայի, հաստոցի մեջ առարկայացված է սովետական շատ ազգերի աշխատանքը: Այսպես, օրինակ, Լատվիական ՍՍՀ-ին իրենց արտադրանքն են մատակարարում մյուս հանրապետությունների ավելի քան 4 հազար ձեռնարկություններ, իսկ այն իր արտադրանքն է ուղարկում երկրի ավտոմոբիլային, տրակտորային, հեծանիվային և այլ ձեռնարկությունների: Մինսկի տրակտորների արտադրությունն ապահովում են Միության 274 այլ գործարաններ: Տիրասպոլի էլեկտրասարքատների գործարանը զանազան դետալներ է առաքում երկրի մոտ 100 ձեռնարկությունների: Միութենական բոլոր հանրապետությունների շուրջ 300 ձեռնարկություններ իրենց արտադրանքն են մատակարարում Տաջիկստանում կառուցվող Նուրեկի հիդրոկայանին և այլն (տե՛ս «Вопросы истории КПСС», № 2, 1974, стр. 40):

Մեր անծայրածիր հայրենիքում գրեթե չկա մի գործարան, խոշոր կառույց, որ չգործարկվի կամ չգործի եղբայրական ազգերի համատեղ ջանքերով: Միայն Վոլգայի ավտոմոբիլային գործարանում աշխատում են 44 ազգերի ներկայացուցիչներ, Կիրգիզիայի Տոկտոգուլի հիդրոկայանը կառուցում են 43 ազգերի բանվորներն ու ինժեներները, Թաթարիայում վեր խոյացող Կամայի ավտոգործարանը կառուցում են ավելի քան 50 ազգերի շինարարները (տե՛ս նույն տեղը): Մեր հանրապետության համաժողովրդական կառույցում՝ Արփա—Սևանում, հերոսաբար աշխատում են 20 ազգերի հորատողներ և այլ մասնագետներ: Այսպիսով, այն ամենը, ինչ ստեղծված է ՍՍՀՄ-ում, «...կազմում է սովետական մարդկանց միասնական, ընդհանուր, անհատնում ազգային հարստությունը: Այդ ամենով իրավամբ հպարտանում է յուրաքանչյուր սովետական մարդ, հպարտանում են մեր մեծ բազմազգ հայրենիքի բոլոր որդիներն ու դուստրերը» (Լ. Ի. Բրեժնև, **ՍՍՀՄ 50-ամյակի մասին**, էջ 53):

Առանց մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական միասնության, նրանց համատեղ, հերոսական ջանքերի, միութենական հանրապետությունները չէին կարող պատմական կարճ ժամանակամիջոցում ձեռք բերել իրենց՝ իրոք զարմանահրաշ նվաճումները: Նշելով այս պատմական իրողու-



թյունը, ՍՍՀՄ բոլոր ազգերն ըստ արժանվույն գնահատում են այդ գործում ռուս ժողովրդի մեծագույն ծառայություններն ու դերը: Կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, հաղթահարելով բազում դժվարություններ, նա մեծ զոհողությունների գնով շարունակ օգնել և օգնում է եղբայրական մյուս ժողովուրդներին՝ զարգացնելու էկոնոմիկան, ազգային մշակույթն ու գիտությունը:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ինտերնացիոնալ բնույթի, մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնության ու միասնական աշխատանքի արգասիք են նաև Սովետական Հայաստանի փայլուն հաստումները: Եթե հայ ժողովուրդն այսօր իրավամբ հպարտանում է, որ հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները մեկ օրում այնքան արտադրանք են տալիս, որքան սովետական կարգերի հաստատումից առաջ մեկ տարում, որ դրանց թողարկած 180 տեսակի արտադրատեսակներ (էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, մետաղահատ հաստոցներ, հոսքային գեներատորներ, ուժային տրանսֆորմատորներ և այլն) առաքվում են արտասահմանյան 70 երկրներ, որ այն դարձել է զարգացած գիտության, ծաղկուն մշակույթի երկիր, ապա այդ ամենը, ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը, ձեռք է բերվել ոչ թե ազգային ներպարփակմամբ ու մեկուսացմամբ, այլ սոցիալիստական ազգերի ու ազգությունների եղբայրական ընտանիքում՝ միմյանց փոխհարստացնող ներդաշնակ զարգացմամբ:

Ուստի, ինչպես սովետական բոլոր ժողովուրդների, նույնպես և հայ ժողովրդի ազգային հպարտության հիմքը ծառայող նյութական ու հոգևոր արժեքները, որոնք ստեղծվել են սոցիալիզմի օրոք, ինտերնացիոնալ, համասովետական բնույթ ունեն: ՍՍՀՄ բոլոր ազգերի տնտեսական նվաճումների միագումարից է գոյանում մեր մեծ հայրենիքի այն հզոր էկոնոմիկան, որը դարձել է սովետական բազմազգ աշխատավորների համազգային հպարտության աղբյուրը:

Անշուշտ, սովետական մարդու համազգային հպարտությունն ամենևին չի բացառում իր հանրապետության, երկրամասի նվաճումների համար տվյալ ազգի ազգային հպարտությունը: Այդ երկու զգացմունքների համար բնորոշ են փոխներթափանցումն ու փոխհարստացումը: Համազգային հպարտության հիմքում ընկած է ազգային առողջ հպարտությունը և վերջինիս հարուցիչները՝ տվյալ ազգի պրոգրեսիվ նվաճումները, որոնք, ի վերջո, դառնում են համազգային հպարտության օբյեկտներ:

— Մի քանի տարի առաջ Դամասկոսում կազմակերպվել էր միջազգային ցուցահանդես-տոնավաճառ: Տուրիստական մեր խումբը, որը բաղկացած էր ութ հոգուց (ռուս, բելոռուս, ուզբեկ, լատիշ, հայ), այցելեց ցուցահանդես:

Բազմամարդ էր հատկապես սովետական տաղավարը... Ոգևորված, անսքող հպարտությամբ մենք դիտում էինք, թե օտարերկրացիներն ինչպիսի՜ հետաքրքրությամբ են զննում սովետական մարդու ստեղծած բարդ մեքենաներն ու սարքերը, մեր ժողովրդի նյութական ու հոգևոր մշակույթի լավագույն նմուշները: Այցելուներից ոմանք, իմանալով մեր ով լինելը, մոտենում էին մեզ, շնորհավորում, գոհունակությամբ սեղմում մեր ձեռքը: Այդ պահին մեզ համակել էր մի ընդհանուր զգացմունք՝ հպարտություն մեր հզոր հայրենիքի, սովետական ժողովրդի ստեղծարար ուժի նկատմամբ. «Պատրաստված է ՍՍՀՄ-ում» պիտակը թանկ ու հարազատ էր բոլորիս:

Անցնում ենք սովետական տաղավարի ցուցանմուշների կողքով և... Էլեկտրոնային բարդ սարքերի մեջ տեսնում եմ «Նաիրի» հաշվիչ մեքենան: Հուզվում եմ, ես ինձ ավելի շոյված ու հպարտ եմ զգում, որ Սովետական Հայաստանը նույնպես արժանի ավանդ ունի մեր ընդհանուր նվաճումների ու հաջողությունների մեջ:

Ցուցահանդեսից հեռանալուց հետո, երբ վերհիշում էինք օրվա տպավորիչ դեպքերը և մտքեր փոխանակում, պարզվեց, որ իմ ընկերներին ևս համակել է այդ զգացմունքը:

Կարևորն այն է, որ ազգային հպարտությունը չհակադրվի ընդհանուրին, ինտերնացիոնալիստականին, այլ զուգակցվի այն գիտակցության հետ, որ

յուրաքանչյուր ազգի հասումները սովետական ողջ ժողովրդի **ընդհանուր ջանքերի** արգասիք են: Եթե մարդու ազգային հպարտությունը բխում է այն հեղհեղուկ ըմբռնումից, թե իր հանրապետության նվաճումները **սոսկ տվյալ ազգի** հերոսական գործերի, **յուրահատուկ** տաղանդի կամ այլ բարեմասնությունների արդյունք են (հակագիտական մի թեզ, որ, ի դեպ, առաջ են քաշում բուրժուական նացիոնալիստները, այդ թվում և դաշնակցական քարոզիչները), անտեսվում է միութենական հանրապետությունների և ողջ ՍՍՀՄ-ի էկոնոմիկայի ինտերնացիոնալ բնույթը, եղբայրական ժողովուրդների համագործակցությունը, ապա նման «հպարտությունը» հարուցում է ազգային սնափառություն ու պարծենկոտություն, որոնք հեշտությամբ կարող են վերածվել ազգային էգոիզմի ու խոտելի նացիոնալիզմի:

Իր ազգի հաջողությունների համար հպարտանալու զգացմունքը պետք է ձուլվի սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարների հետ, սովետական միասնական բազմազգ ընտանիքին պատկանելու, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների նվաճումների համար հպարտանալու զգացմունքի հետ:

Հիրավի, մեր սոցիալիստական առօրյան, երկրի բազմազգ աշխատավորների հերոսական գործերն ապացուցում են, որ սովետական մարդու հոգեբանության մեջ ձևավորվել է մի նոր տարր, այն է՝ ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացի իրեն համարում է ոչ միայն տվյալ ազգի ներկայացուցիչը, այլև սովետական ժողովրդի մի մասնիկը: Նրա գիտակցության մեջ հայրենիք հասկացությունը բովանդակում է առավել լայն իմաստ, չի պարփակվում սոսկ իր ծննդավայրի, հանրապետության կամ մարզի շրջանակներում, այլ ներառնում է սովետների ողջ երկիրը, որի բարգավաճման ու հզորության համար անխոնջ պայքարում է և պատրաստ է հանուն հայրենիքի անգամ իր կյանքը զոհաբերելու: Նա քաջ գիտակցում է, որ իր բարեկեցությունն ու ճակատագիրը պայմանավորված են սովետական ողջ ժողովրդի ճակատագրով: Ուստի, յուրաքանչյուր սոցիալիստական ազգ ձգտում է առավելագույն չափով նպաստել ՍՍՀՄ ընդհանուր առաջընթացին: Համազգային հպարտությամբ տոգորված բանվորը, գյուղացին ջանում են արտադրել ավելի շատ ու որակյալ ապրանքներ, գիտնականը, գրականության ու արվեստի գործիչը՝ ստեղծել գիտական ու հոգևոր մշակույթի մնայուն արժեքներ, դրանով իսկ պանծացնելով իր ազգն ու սովետական ողջ ժողովուրդը: Ուրեմն՝ հայրենասիրական այդ զգացմունքը տվյալ ազգին դրդում է աշխատել ավելի լավ, անհաշտ լինել թերությունների նկատմամբ, հաղթահարել հոռի սովորույթներն ու բարքերը, հասարակության առաջընթացի բոլոր խոչընդոտները:

Իրոք, մի՞թե ազգային, առավել ևս համազգային, հպարտությամբ համակված հայ աշխատավորը, հասարակական ու մշակութային գործիչը, որ իրավամբ, ոգևորվում, ուրախանում, հպարտանում է մեր հանրապետության աննախադեպ հասումներով, կարող է անտարբեր լինել, չմտահոգվել, երբ Սովետական Հայաստանի պիտակով արտադրվում են անորակ ապրանքներ, կառուցվում հաճախ մարդկանց չգոհացնող բնակելի շենքեր... Մի՞թե այն մարդկանց, ովքեր պատասխանատու են մեր հանրապետության քաղաքների ու բնակավայրերի, փողոցների ու թաղամասերի մաքրության ու բարեկարգման, տրանսպորտի անխափան աշխատանքի համար, պատիվ են բերում այդ ասպարեզում առկա թերությունները: Դրանք, ինչպես նաև առևտրի, կուլտուր-կենցաղային սպասարկման ոլորտում նկատվող բացերը, երբեմն տհաճ երևույթները վնասում են մեր ազգային հպարտությանը: Թերևս ոմանք դրանք «մանրուք» համարեն: Բայց չէ՞ որ նման «մանրուքներից» են գոյանում խոշոր թերությունները, որոնք աղարտում են ազգային հպարտության զգացմունքը:

Սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլում հաստատվել է այն իրողությունը, որ ազգային հպարտության օբյեկտները կարող են համայն մարդկության սեփականությունը դառնալ՝ սովետական մարդկանց ընդհանուր հարստություն դառնալուց հետո միայն, այսինքն՝ երբ դրանք վերածվեն համազգային հպարտության աղբյուրների: Վերջինս ավելի լայն ու



խոր հասկացություն է, որը ներառնում է ազգայինն ու ինտերնացիոնալիստականը, ընդհանուրն ու առանձնահատուկը, արտացոլում բոլոր ազգերի ազգային հպարտության լավագույն տարրերը: Այդ վեհ զգացմունքն արտացոլում է սոցիալիստական ազգերի ու ազգությունների հետագա ծաղկման, փոխհարստացման ու մերձեցման տենդենցը: «Սովետական մարդու համազգային հպարտությունը վիթխարի, տարողունակ, իր բովանդակությամբ բազմահարուստ զգացմունք է: Այն մեր երկրի կազմի մեջ մտնող ժողովուրդներից ամեն մեկի ազգային բնական զգացմունքներից **ավելի խորն է ու ավելի լայն** (ընդգծ. մերն է— Կ. Վ.): Այն իր մեջ ներառել է այն ողջ լավագույնը, ինչ ստեղծված է միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքով, խիզախությամբ, ստեղծագործական հանճարով» (Լ. Ի. Բրեժնև, **ՍՍՀՄ 50-ամյակի մասին,** էջ 92—93):

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ համազգային հպարտությունը բխում է ՍՍՀՄ ժողովուրդների քաղաքական ու գաղափարական կյանքի ընդհանրությունից: Այն հանգամանքը, որ սովետական բազմազգ պետությունն այժմ դարձել է համաժողովրդական, խոր ազդեցություն է գործում ազգային հարաբերությունների հետագա զարգացման վրա: Համաժողովրդական սոցիալիստական պետությունն առավել խորացնելով իր ինտերնացիոնալ բնույթը՝ համակողմանի ծավալում է սոցիալիստական դեմոկրատիան, ամրապնդում սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, բարձրացնում բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավոր զանգվածների քաղաքական ու ստեղծագործական ակտիվությունը: Առավել միասնական ու միաձույլ են դառնում ՍՍՀՄ ժողովուրդների հասարակական-քաղաքական կյանքի ինտերնացիոնալ և ազգային գործոնները, որոնք ապահովում են համամիութենական ու սովետական ազգային պետականության բազմակողմանի զարգացումը:

Մասնավոր սեփականության վերացմամբ անհետացավ տնտեսական այն հիմքը, որը դարեր շարունակ թշնամանք ու հակամարտություն էր ծնում դասակարգերի ու ազգությունների միջև: Գոյավորվեց աշխատանքի մարդկանց արմատական շահերի ընդհանրությունը: Քանի որ հանրային սեփականությունը բացառում է մարդու կողմից մարդու շահագործումը, ուստի, այդ հիմքի վրա ի մի են ձուլվում բոլոր դասակարգերի, սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու հասարակության անդամների կենսական շահերը:

Արտադրամիջոցների հանրային սեփականության հաստատմամբ արմատապես փոխվում են արտադրատնտեսական հարաբերությունների բովանդակությունը և արտադրության ոլորտում աշխատողի վիճակը: Բոլոր աշխատավորների դրության մեջ, անկախ նրանց դասակարգային ու ազգային պատկանելությունից, առաջանում են ընդհանուր էական գործոններ, որոնք հիմք են ծառայում անհատի միասնական շահերի ու հատկանիշների ձևավորման համար (տե՛ս Г. Л. Смирнов, Советский человек, М., 1971, стр. 138):

Սոցիալիզմի կառուցման ընթացքում բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և աշխատավոր ինտելիգենցիան օբյեկտիվորեն, մի շարք հատկանիշներով մերձենում են, բյուրեղանում է նրանց սոցիալական միատարրությունը, ամրապնդվում սովետական բազմազգ ժողովրդի սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը: Հասարակության հեղափոխական վերափոխումների շնորհիվ առաջացած սոցիալական նոր միջավայրում զարգանում ու կատարելագործվում է անհատը, ձևավորվում է սովետական նոր մարդը՝ իրեն բնորոշ հոգևոր, բարոյական ընդհանուր և յուրահատուկ հատկանիշներով, որոնցից է նաև համազգային հպարտության զգացմունքը:

Սոցիալական վերափոխումների ազդեցությամբ փոխվեց անձնականի և հասարակականի միջև եղած հարաբերակցությունը. սովետական մարդու անձնական աշխարհը հարստացավ սոցիալ-բարոյական նոր բովանդակությամբ: Եվ դա բնական է, չէ՛ որ այն ամենը, ինչ անհատն ստանում է հասարակությունից, ստեղծում են իր նման աշխատավորները: Ամեն ինչ մարդու,

նրա բարօրության համար— սոցիալիստական հասարակարգի այս գլխավոր սկզբունքը դարձել է անհատի բարոյական նորմը: Կառուցելով նոր աշխարհ, աշխատավոր մարդը հպարտ է, որ ինքն է հանրային բոլոր հարստությունների ստեղծողն ու տերը:

Սոցիալիստական հասարակարգի դասակարգային կառուցվածքի որակական փոփոխությունների շնորհիվ ներկայումս սովետական բոլոր ազգերն ու ազգությունները իրենց սոցիալական կազմով միատարր են: Սա, անշուշտ, սովետական մարդկանց միասնության ամրապնդման, նրանց համազգային հպարտության ձևավորման ու զարգացման կարևոր, վճռորոշ նշանակություն ունեցող գործոնն է:

Պատմական այս իրողության մեջ վիթխարի դեր է խաղացել ու այսօր ևս խաղում է իր կազմով բազմազգ և բնույթով ինտերնացիոնալ բանվոր դասակարգը: Նրա գաղափարախոսությունը, կազմակերպվածությունը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը, բարոյականությունը, առաջադիմական ավանդույթները սովետական մարդու հոգևոր կերպարի ձևավորման գլխավոր հիմքն են: Այժմ, զարգացած սոցիալիզմի պայմաններում, բանվոր դասակարգի քաղաքականությունն ու շահերը, նրա հայացքներն ու բարոյական նորմերը չափանիշ են դարձել հասարակության սոցիալական մյուս խմբերի համար: Նրա որդեգրած ուսմունքը՝ մարքսիզմ-լենինիզմը, միաժամանակ, գյուղացիության ու աշխատավոր ինտելիգենցիայի գաղափարախոսությունն է: Ուստի, օրինաչափ է, որ բանվոր դասակարգի հեղափոխիչ ազդեցությամբ ու ղեկավարությամբ գոյացել է սովետական հասարակության զարգացման կարևորագույն հատկանիշը՝ սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների գաղափարա-քաղաքական, կուլտուրական և բարոյա-հոգեբանական միասնությունը, որի վրա և խարսխվում է սովետական մարդու համազգային հպարտությունը:

Սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքի, սովետական մարդու համազգային հպարտության զարգացման համար կարևոր նշանակություն ունեն ազգային կուլտուրաների ծաղկումը, դրանց փոխազդեցությունն ու փոխհարստացումը: Այդ հիման վրա ստեղծվել ու համաշխարհային լայն ճանաչման է արժանացել սովետական միասնական, բազմազգ կուլտուրան, որն իր բովանդակությամբ և զարգացման գլխավոր միտումով սոցիալիստական է, ազգային ձևերով՝ բազմազան, ոգով ու բնույթով՝ ինտերնացիոնալիստական: Սովետական կուլտուրան, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ իր զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը, ներառնում է մեր հայրենիքի ժողովուրդների յուրաքանչյուր կուլտուրայի ու կենցաղի առավել արժեքավոր հատկանիշներն ու ավանդույթները: Միաժամանակ, սովետական ազգային բոլոր կուլտուրաները սնվում են ո՛չ միայն սեփական աղբյուրներից, այլև եղբայրական մյուս ժողովուրդների հոգևոր հարստությունից և, իրենց հերթին, բարերար ազդեցություն են գործում նրանց վրա: Միասնական սովետական կուլտուրան բոլոր ժողովուրդների կողմից ստեղծվող հոգևոր արժեքների օրգանական համաձուլվածքն է:

ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները ձգտում են սովետական կուլտուրայի ընդհանուր գանձարանը մուծել իրենց ազգային հպարտությունը հարուցող լավագույն ստեղծագործությունները, սովորույթներն ու ավանդույթները, որոնք աստիճանաբար դառնում են մեր ժողովրդի ընդհանուր սեփականությունը, սովետների երկրի քաղաքացու համազգային հպարտության ակունքները: Միաժամանակ, այս օբյեկտիվ զարգացման ընթացքում անհետանում են տարբեր ազգերի հին, խոտելի սովորույթները, բարքերը, որոնք արգելակում են մեր ընդհանուր առաջընթացը:

Այսպիսով, Սովետական Միության ազգերի ու ազգությունների պատմական ճակատագրի ընդհանրությունը, սոցիալական ու դասակարգային միատարրությունը, ընդհանուր գաղափարախոսությունն ու գլխավոր նպատակը՝ կոմունիզմի կառուցումը, ավելի քան կեսդարյա համատեղ պայքարի ու աշխատանքի ընթացքում կուտակված կենսափորձը դարձել են նրանց միասնական



սոցիալական զգացմունքի և նրա բաղադրիչ տարրը հանդիսացող համազգային հպարտության գոյավորման ու զարգացման հաստատուն հիմքը: Այլ խոսքով՝ համազգային հպարտությունը մեր երկրի բոլոր ժողովուրդների, դասակարգերի, սոցիալական խմբերի պատկանող մարդկանց միասնական, **ընդհանուր զգացմունքն է**: Այն ազգային հարցի լենինյան լուծման արգասիքն է, մեր հայրենիքի բազմազգ աշխատավորների սերտ բարեկամության ու համագործակցության, միասնական սովետական ժողովրդի ինտերնացիոնալ գիտակցության արգասիքը:

Այդ վսեմ զգացմունքը միաձուլում է սովետական մարդկանց ջանքերը կոմունիստական շինարարության ասպարեզում, կարևոր գործոն հանդիսանալով յուրաքանչյուր աշխատողի սոցիալական ակտիվության և իր հայրենիքի ճակատագրի ու հետագա բարգավաճման համար պատասխանատվության բարձրացման մարզում: Այդ զգացմունքի մեջ առավել խորությամբ ու համակողմանի դրսևորվում են բանվոր դասակարգի և նրա մարտական ավանգարդի՝ կոմունիստների, ազգային հպարտության ինտերնացիոնալիստական ու հայրենասիրական բոլոր հատկանիշները: Ընդ որում, ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության օրգանական պարզ զուգակցումը չէ այդ զգացմունքը, այլ դրանց յուրօրինակ ու նոր համաձուլվածքը:

Սովետական մարդկանց հայրենասիրական ու ինտերնացիոնալիստական գաղափարներով համակում է սոցիալիստական ողջ իրականությունը, որին խորթ են ազգային հակամարտությունը, ազգային կամ ռասայական բացառիկության նացիոնալիստական միտումները:

Մեր հասարակարգում հաստատված սոցիալական կապերի նոր, կոլեկտիվիստական ձևը արմատական հեղաշրջում առաջացրեց ինչպես ազգային, այնպես և ազգամիջյան եղբայրական փոխհարաբերությունների ոլորտում: «Հասարակական գիտակցության կոլեկտիվիստական բովանդակությունը մուտք է գործել սովետական մարդկանց կենցաղի մեջ, հաստատվել նրանց ապրելակերպում. այն նրանց անհատական գիտակցության, հոգեբանության և բարոյականության հիմքն է: Ընդհանուր պատմական ճակատագիրը, առաջընթացի միասնական հեռանկարները սովետական յուրաքանչյուր մարդու գիտակցության մեջ ավելի են ամրապնդում գիտական, կոմունիստական գաղափարախոսության սկզբունքները, հետևաբար և՝ առավել միաձուլում հայրենասիրական զգացմունքները և ինտերնացիոնալիստական համոզմունքները» («Вопросы философии», № 4, 1973, стр. 7—8):

Հիրավի, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարներն այսօր դարձել են մեր երկրի բազմամիլիոն աշխատավորների խոր համոզմունքը, նրանց վարքի, բարոյականության, կենցաղի, ապրելակերպի գլխավոր նորմը: Պատմական այս վիթխարի նվաճումը ՍՍՀՄ բազմազգ ժողովուրդները ձեռք են բերել իրենց ղեկավարի ու մարտական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության անդուլ և հետևողական գործունեության շնորհիվ:

Կուսակցությունը, ասել է Լ. Ի. Բրեժնևը, կարողացավ ինտերնացիոնալիզմը մի բուռ կոմունիստների իդեալից դարձնել ՍՍՀՄ բոլոր ազգերի միլիոնավոր աշխատավորների խոր համոզմունքն ու վարքագիծը: Հասարակական գիտակցության մեջ կատարված այս հեղափոխական վերափոխումը օբյեկտիվ, բնական պրոցես է, որովհետև «ՍՄԿԿ-ն ինտերնացիոնալիստ լենինյանների կուսակցություն է թե՛ իր գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ և թե իր կազմով ու կառուցվածքով: Քաղաքական կուսակցությունների պատմության մեջ բոլշևիկների կուսակցությունն առաջինն էր, որը կառուցված է այնպիսի պրոլետարական կազմակերպությունների միավորման սկզբունքով, որոնցում բոլոր ազգությունների բանվորները ի մի են ձուլվել որպես միասնական մարտական ուժ:

...Կուսակցությունը միավորում է երկրի բոլոր ազգերի ու ազգությունների առաջավոր ներկայացուցիչներին: Նա ՍՍՀՄ աշխատավորների մարտական ընկերության ու բարեկամության, ամբողջ սովետական ժողովրդի ան-

խախտ միասնության առավել վառ մարմնացումն է։ Մեր բոլոր կոմունիստները, ինչ ազգության էլ պատկանելիս լինեն՝ լենինյան միասնական կուսակցության անդամներ են։ Նրանք ունեն նույնանման իրավունքներ ու պարտականություններ, հավասարապես պատասխանատու են երկրի բախտի համար» (Լ. Ի. Բրեժնև, **ՍՍՀՄ 50-ամյակի մասին**, էջ 34—35)։

Կոմունիստական կուսակցությունը սովետական բոլոր մարդկանց ազգային հպարտությունը հասցնելով համազգային հպարտության մակարդակին՝ միաժամանակ ջանում է, որ ՍՍՀՄ ժողովուրդների ազգային զգացմունքներն ու հայրենասիրական վեհ ձգտումները համակվեն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով։ Ուստի, նա անհաշտ պայքարում է լենինյան ազգային քաղաքականությանը վնասող ամեն կարգի սխալների ու շեղումների, նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ։ Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում չպետք է տեղ գտնի ազգայինի գերագնահատում՝ ի վնաս ինտերնացիոնալիստականի, որովհետև համազգային հպարտության գլխավոր օբյեկտը՝ ՍՍՀՄ-ը, հետևաբար և բոլոր հանրապետությունները, զարգանում են ինտերնացիոնալ հիմունքներով։

***

Սովետական մարդու համազգային հպարտության գիտական նոր հասկացությունը կարևոր ներդրում է մարքս-լենինյան տեսության մեջ։ Այն սեղմված ձևով արտացոլում է մեր կուսակցության ազգային քաղաքականության վեհությունը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդումն ու զարգացումը, սոցիալիստական հասարակարգի անվիճելի առավելությունները։

Կոմունիստական շինարարության արդի փուլում ՍՍՀՄ էկոնոմիկայի, սոցիալ-քաղաքական հարաբերությունների, հասարակական գիտակցության զարգացման ասպարեզում տեղի են ունենում որակական նոր տեղաշարժեր, որոնք հնարավորություն են ընձեռում սովետական մարդու համազգային հպարտության հետագա խորացման համար։ Եվ, ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը, որքան մենք առաջ ենք ընթանում կոմունիզմի կառուցման ուղիով, որքան բազմազան ու ամուր են դառնում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդներին շաղկապող տնտեսական, կուլտուրական և մյուս կապերը, այնքան ուժեղ ու խորն է արտահայտվում մեծ ընդհանրության վեհ զգացումը, որը մենք անվանում ենք սովետական մարդու համազգային հպարտություն։

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ե. Հ. ՄԱԿԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում, կուսակցության տնտեսական քաղաքականությունը սերտ կապված է եղել աշխատանքի կազմակերպման կատարելագործման հետ, իսկ կոմունիստական շինարարության ներկա ժամանակաշրջանում այդ պրոբլեմն առավել մեծ նշանակություն ունի։ Ներկայումս, ինչպես նշել է ՍՄԿԿ ԿԿ գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, առաջնահերթ խնդիրներից մեկը պետք է դիտել արտադրության և աշխատանքի գիտական կազմակերպման ներդրումը բոլոր ձեռնարկություններում, որը կհամապատասխանի ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի պահանջներին։ Ներկա ժամանակաշրջանի գիտատեխնիկական հեղափոխությունը պայմանավորում է արտադրության տեխնոլոգիայի, աշխատանքի գործիքների ու առարկաների որակական փոփոխություն, հետևաբար, դրանից կախված աշխատանքի բնույթի, մարդկանց աշխատանքային գործունեության բովանդակության արմատական փոփոխություն։ Միաժամանակ այդ հեղափոխությունը խորապես ներգործում է աշխատողի կերպարի վրա, հնարավորություն ստեղծում բարձրացնելու նրա գիտական ու կուլտուրական մակարդակը, ընդլայնելու գիտատեխնիկական շրջահայացությունը։*

*Այժմ հսկայական ուշադրություն է նվիրվում աշխատանքի էներգո և էլեկտրազինվածության մակարդակի անընդհատ բարձրացմանը, արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմատացմանը, առաջնակարգ տեխնոլոգիայի ներդրմանը։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսվում է ստեղծել աշխատանքի նոր գործիքներ, նյութեր և ավտոմատ սարքեր, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով պետք է գերազանցեն հայրենական և արտասահմանյան լավագույն նվաճումները։*

*Հետևաբար, այս պայմաններում չափազանց մեծ դեր ունի արտադրության կազմակերպման անընդհատ կատարելագործումը, քանի որ առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործման արդյունավետությունը որոշվում*

է արտադրության ռացիոնալ կազմակերպմամբ և վերջինիս մակարդակին համապատասխան աշխատանքի կիրառմամբ։

Աշխատանքի կազմակերպման մշտական համապատասխանեցումը տեխնիկայի անընդհատ աճող մակարդակին, արտադրողականության աճի տեմպերի արագացմանը մեր երկրի տնտեսական վերելքի անշեղ աճի կարևորագույն պայմանն է։ Այդ են վկայում անցյալ հնգամյակի փաստացի և ընթացիկ հնգամյա պլանի տվյալները։

Հասարակական աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը զգալի չափով բարձրացան անցած հնգամյակում (1966—1970)։ Եթե 1961—1965 թթ. աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արդյունաբերական արտադրանքի աճը 62 տոկոսից հասել է մինչև 73-ի, ապա 1970 թ. այն կազմել է 84 տոկոս։

Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի բարձրացման գործում կարևոր նշանակություն է ունեցել աշխատանքի գիտական կազմակերպման ներդրումը։ ՍՍՀՄ ԿՎՎ տվյալներով, միայն 1969—1970 թթ. արդյունաբերության մեջ ներդրվել է 1 մլն-ից ավելի ԱԳԿ միջոցառում, որոնց շնորհիվ տնտեսվել է 1,1 մլրդ ռուբլի, այդ թվում աշխատավարձի ֆոնդը՝ 545 մլն, իսկ աշխատող ձեռքերի պայմանական տնտեսումը կազմել է 500 հազար մարդ։

Ինչպես ողջ ժողովրդական տնտեսության, այնպես էլ արդյունաբերության մեջ արտադրության տեխնիկական զինվածության մակարդակի բարձրացումն ու կատարելագործումը դրսևորվում են որպես հասարակական արտադրության արդյունավետության մեծացման անմիջական և կարևոր գործոններ, երբ աշխատանքի կազմակերպման անընդհատ կատարելագործմամբ ապահովվում է աշխատանքի արտադրողականության աճի գերազանցությունը աշխատանքի ֆոնդազինվածության և էլեկտրաէներգազինվածության աճին։

Ընթացիկ հնգամյա պլանի դիրեկտիվներին համապատասխան այսուհետև տեխնիկական բարձր տեմպերով կծավալվի արդյունաբերությունը։ Սակայն տեխնիկական վերազինման աճի համեմատ, ֆոնդահատույցի շարունակական իջեցումը (որը կնշանակի աշխատանքի արտադրողականության աճի ցածրացում), բոլորովին չի բխում ինչպես ժողովրդական տնտեսության զարգացման ներկա պահանջներից, այնպես էլ իններորդ հնգամյա պլանով հանրապետության արդյունաբերության համար սահմանված այդ ցուցանիշի մեծությունից։

Ընթացիկ հնգամյա պլանով նախատեսված աշխատանքի արտադրողականության աճի 1971—1972 թթ. փաստացի կատարողականները չեն հաստատում վերոհիշյալ միտքը։ Այստեղ իր վճռական ազդեցությունն է ունեցել հատկապես արդյունաբերության առաջատար ճյուղերի շատ ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպման ոչ բավարար մակարդակը։

Արդյունաբերական արտադրանքի ծավալի պլանային առաջադրանքների կատարումը և դրա հետագա մեծացումը (որը հիմնավորված է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. պլանային առաջադրանքների վերաբերյալ կառավարության ու կուսակցության որոշումներով և էկոնոմիկայի ընթացիկ ու հեռանկարային կանխատեսումների տնտեսագիտական բազմաթիվ ուսումնասիրություններով) պետք է իրականացվեն գերազանցապես աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Եթե դրան



ավելացնենք հանրապետության աշխատանքային ռեսուրսների բալանսի լարվածությունը, ապա պատկերն ամբողջովին պարզ կդառնա։

Մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության կազմակերպման փաստացի վիճակի մանրամասն ուսումնասիրությունն ու վերլուծությունը ցույց են տալիս, որ ներկայումս արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն տենդենցը աշխատանքի կազմակերպման արդյունավետության ըստ ամենայնի ապահովումն է։

ԱԳԿ և դրա ներդրումը ձեռնարկություններում ու միավորումներում, ընդհանուր առմամբ, մի կողմից՝ ապահովում է աշխատաժամանակի ֆոնդի լրիվ օգտագործումը, կանխում հերթափոխային կորուստները, կրճատում որակյալ աշխատուժի հոսունությունը, մյուս կողմից՝ մեծապես բարձրացնում է անհատական աշխատանքի արտադրողականությունը։ ԱԳԿ-ի այնպիսի տարրեր, ինչպիսիք են՝ աշխատանքի ռացիոնալ բաժանումն ու կոոպերացումը, աշխատատեղի սպասարկումն ու կազմակերպումը, աշխատանքի ռացիոնալ հնարքների ու մեթոդների ներդրումը, աշխատողների որակավորման բարձրացումը կրճատում են աշխատաժամանակի կորուստների քանակությունը և նույն ժամանակահատվածում մեծացնում թողարկվող արտադրանքի ծավալը։

Հանրապետության արդյունաբերության տարբեր ճյուղերում ու ձեռնարկություններում ԱԳԿ ներդրման վերաբերյալ եղած վիճակագրական տվյալների վերլուծության արդյունքները վկայում են աշխատանքի արտադրողականության և դրա կազմակերպման մակարդակի բարձրացման գործում ԱԳԿ մեծ դերի մասին։ Միայն 1970—1971 թթ. հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում ներդրվել է ԱԳԿ 5.543 միջոցառում, որի իրականացման համար ծախսվել է 4.758,1 հազար ռ., իսկ տարեկան տնտեսական արդյունավետությունը կազմել է 9.677,0 հազար ռուբլի, պայմանական տնտեսված աշխատող ձեռքերի քանակը՝ 4.638 մարդ։

1970—1971 թթ. արդյունաբերության մեջ ԱԳԿ միջոցառումների մշակման ու ներդրման համար կատարված ծախսերի փոխարեն ստացված արդյունավետությունը (մեկ տարվա հաշվով) ցույց է տալիս, որ աշխատանքի կազմակերպման բարելավման ու կատարելագործման նպատակով կատարված ծախսերն անհամեմատ ավելի բարձր չափով են հատուցվում, քան կապիտալ ներդրումները, արտադրաֆոնդերի ընդլայնումը և գիտությունը։ Միության մասշտաբով, ժողովրդական տնտեսության մեջ ԱԳԿ ներդրման յուրաքանչյուր մեկ ռուբլու դիմաց ստացվել է 1969 թ. 1,61, 1970 թ.՝ 2,00 ռուբլի, իսկ մեր հանրապետությունում՝ 1970 թ. 1.84, 1971-ին՝ 2,53 ռուբլի։

Գիտության բնագավառում ներդրված յուրաքանչյուր ռուբլու դիմաց (1966—1970 թթ.) ստացվել է 1 ռուբլի 45 կոպեկ, իսկ հանրապետության արդյունաբերության կապիտալ ներդրումներին՝ 1 ռուբլի 17 կոպեկ։

ԱԳԿ կիրառման տնտեսական արդյունավետությունն առավել պարզորոշ կարող է արտահայտվել, երբ այն վերլուծվում է ըստ ԱԳԿ առանձին տարրերի, դարձյալ վերոհիշյալ համադրմամբ։

ՀՍՍՀ արդյունաբերության մեջ ԱԳԿ մշակման ու ներդրման համար կատարված ծախսումները և տնտեսական արդյունավետությունը ըստ ԱԳԿ առանձին տարրերի

| Աշխատանքի կազմակերպման տարրերը | 1970 թ. | | 1971 թ. | | 1 ռ. ծախսերին ընկնող հատույց (ռուբլիներով) | |
|---|---|---|---|---|---|---|
| | ԱԳԿ մշակման ու ներդրման ծախսումները (հազար ռուբլիներով) | Արդյունավետությունը (հազար ռուբլիներով) | Կատարված ծախսումներ (հազար ռուբլիներով) | Արդյունավետությունը (հազար ռուբլիներով) | 1970 թ. | 1971 թ. |
| Աշխատատեղի կազմակերպման կատարելագործում | 683,2 | 1.098,2 | 25,95 | 708,2 | 1—61 | 2—73 |
| Աշխատատեղի սպասարկման բարելավում | 849,2 | 1.305,0 | 190,6 | 357,1 | 1—54 | 1—87 |
| Աշխատանքի բաժանման և կոոպերացման կատարելագործում | 97,7 | 741,6 | 84,9 | 428,0 | 7—59 | 5—04 |
| Աշխատանքի առաջավոր մեթոդների և հնարքների ներդրում | 572,9 | 733,9 | 77,9 | 515,3 | 1—28 | 6—61 |
| Աշխատանքի նորմավորման և վարձատրման կատարելագործում | 67,7 | 1.532,5 | 25,4 | 769,6 | 22—63 | 30—29 |
| Աշխատանքի պայմանների բարելավում | 713,0 | 412,4 | 593,0 | 297,7 | 0—58 | 0—50 |
| Ընդամենը | 2.983,7 | 5.823,6 | 1.231,3 | 3.075,9 | 1—95 | 2—50 |

Ինչպես ցույց են տալիս աղյուսակի տվյալները, կատարած մեկ ռուբլի ծախսումների դիմաց հատույցը՝ ըստ ԱԳԿ առանձին տարրերի, տատանվում է 1 ռ. 28 կոպեկից մինչև 30 ռուբլու սահմաններում, բացառությամբ աշխատանքի պայմանների բարելավման տարրի, որի համար կատարված ծախսերը հատուցվում են 50—58 տոկոսով։

ԱԳԿ ներդրման տնտեսական արդյունավետության գումարի մեծ մասը (ինչպես երևում է աղյուսակի տվյալներից) բաժին է ընկնում աշխատատեղի ռացիոնալ կազմակերպմանը և աշխատանքի նորմավորման կատարելագործմանը։ ԱԳԿ մշակման ու ներդրման ընդհանուր ծախսերի մեջ այդ երկու ուղղությամբ ներդրված միջոցները 1970 թ. կազմել են 21,9 տոկոս, որին համապատասխանում է տարեկան արդյունավետության ընդհանուր գումարի 41,7 տոկոսը. 1971 թ. դրանք համապատասխանաբար կազմել են 21,5, 44,0 տոկոս։

Միավոր ծախսի դիմաց առավել մեծ արդյունավետություն ապահովվում է հատկապես աշխատանքի նորմավորման ու վարձատրման կատարելագործման (22—63, 30—29) և աշխատանքի բաժանման ու կոոպերացման ռացիոնալ ձևերի ներդրման (7—59, 5—04) շնորհիվ։ Այդ երկու բնագավառներն էլ համարվում են մեր արդյունաբերության ներկա ժամանակաշրջանի աշխատանքի կազմակերպման «ամենանեղ տեղերը»։ Հասկանալի է, որ այդ ասպարեզում աշխատանքի կազմակերպման շարունակ բարելավումն ու կատարելագործումը աստիճանաբար կհանգեցնեն հատույցի բացարձակ մեծության իջեցման, որի ազդեցությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա անընդհատ աճում է։



ԱԳԿ տնտեսական մեծ արդյունավետություն կարող է ապահովվել միայն այն դեպքում, երբ ընդգրկվում են ինչպես աշխատանքի կազմակերպման ամբողջ կոմպլեքս տարրերը, այնպես էլ արտադրության բոլոր օղակները։

Արդյունաբերության հիմնական ու առաջատար ճյուղերում ԱԳԿ արդյունքները բոլորովին տարբեր են, իսկ, ընդհանուր առմամբ, արդյունավետությունը ցածր է արդյունաբերության միջին ցուցանիշից։

Արդյունաբերության առաջատար ու հիմնական ճյուղերում ԱԳԿ ներդրումը դարձյալ բնութագրվում է զգալի արդյունավետությամբ, հատույցը, միջին հաշվով, կատարված ծախսերը գերազանցում է ավելի քան 1,8 անգամ։

ԱԳԿ ներդրման արդյունավետությունն առավել բարձր է գունավոր մետալուրգիայի և թեթև արդյունաբերության ձեռնարկություններում (առաջինում՝ ավելի քան 7,8, երկրորդում՝ 5,7 անգամ)։

Եթե արդյունաբերության բոլոր ճյուղերում աշխատանքի կազմակերպման կատարելագործման նպատակով կատարված ծախսումները փոխհատուցվում են օգուտներով (1,84 անգամ), ապա հանրապետության արդյունաբերության խոշոր և առաջատար ճյուղերից մեկում՝ մեքենաշինության և մետաղամշակման մեջ, ԱԳԿ ներդրման տարեկան ծախսումները հազիվ փոխհատուցվում են (կատարված 1 ռուբլի ծախսումների դիմաց ստացվել է 1 ռուբլի հատույց)։ Իսկ եթե դրան ավելացնենք, որ մեկ տարվա հաշվով ԱԳԿ մշակման ու ներդրման համար փաստացի ընդհանուր ծախսումների 46 տոկոսը կատարվել է այդ ճյուղի ձեռնարկություններում, ապա կստացվի, որ նման նպատակներով կատարված աշխատանքներն անիմաստ են։

ԱԳԿ մի շարք տարրերի՝ աշխատանքի բաժանման ու կոոպերացման ռացիոնալ ձևերի կիրառման, աշխատատեղի կազմակերպման ու սպասարկման, աշխատանքի նորմավորման ու վարձատրման կատարելագործման, առաջավոր մեթոդների ու հնարքների ներդրման միջոցառումների արդյունքը հնարավոր է քանակապես ու որակապես գնահատել. դրանք, իրոք, արտահայտվում են ձեռնարկությունների ու մինիստրությունների կողմից ներկայացվող պաշտոնական վիճակագրական հաշվետվություններում։ Իսկ ԱԳԿ մի շատ կարևոր տարրի՝ աշխատանքի պայմանների բարելավումը, առանձին վերցրած, քանակական գնահատման չի ենթարկվում. ուստի, հաշվետվությունում դրա արդյունավետությունը ամբողջովին չի արտացոլվում։ Հետևաբար, ինչպես երևում է ձեռնարկությունների ու մինիստրությունների տարեկան հաշվետվությունների տվյալներից, հսկայական միջոցներ են հատկացվել աշխատանքի պայմանների բարելավմանը, սակայն դրանց արդյունավետությունը ցույց է տրված նվազ գումարով։ 1970 թ. հանրապետության արդյունաբերության մեջ ԱԳԿ միջոցառումների մշակման ու ներդրման ընդհանուր փաստացի ծախսումների 20,7 տոկոսը բաժին է ընկնում աշխատանքի պայմանների բարելավմանը, իսկ արդյունավետությունը կազմել է ընդհանուրի 6,5 տոկոսը, 1971 թ. համապատասխանաբար՝ ծախսումները 44,7, իսկ արդյունավետությունը՝ 8,9 տոկոս։

Արդյունաբերության ճյուղերի մեծ մասում աշխատանքի պայմանների բարելավման համար կատարված ծախսումները փոխհատուցվում են միջին հաշվով 42, իսկ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ միայն 18 տոկոսով։

Սակայն առանց տատանվելու կարելի է պնդել, որ արդյունաբերական ձեռնարկությունների օղակներում աշխատանքի պայմանների բարելավման համար կատարված միավոր ծախսումների հատույցը մեկ ռուբլուց ավելի է: Ինչպես արդեն նշել ենք, ներկայումս օգտագործվող ԱԳԿ ներդրման արդյունավետության սահմանման մեթոդիկայով հնարավոր չէ ճիշտ որոշել աշխատանքի պայմանների համար կատարված կապիտալ ներդրումների արդյունավետությունը: Անժխտելի է և մասնագիտական գրականության մեջ կոնկրետ ուսումնասիրություններով ապացուցված, որ աշխատատեղում ու արտադրամասերում նորմալ ջերմաստիճանի ու լուսավորության ապահովումը, օդի գազային խառնուրդի պարբերական վնասազերծումը, արտադրական աղմուկի չեզոքացումը, շրջապատի կանաչապատումն ու համապատասխան երանգավորումը և այլն, բարձրացնում են աշխատողների տրամադրությունն ու աշխատունակությունը, պահպանում նրանց ամենօրյա առողջական վիճակը, ավելի դյուրին ու շուտ վերականգնում օրվա ընթացքում կատարված մտավոր ու ֆիզիկական աշխատանքային ծախսումները: Հետևաբար, ԱԳԿ համակողմանի մշակված ու հիմնավորված պլանի հիման վրա աշխատանքի պայմանների բարելավման նպատակով կատարված ծախսումները, որպես կանոն, պետք է ենթադրել, որ փոխհատուցվում են արդյունավետ. վատագույն դեպքում միավոր ծախսումների և արդյունավետության գումարը պետք է ընդունել հավասար, եթե տվյալ ձեռնարկությունում կամ միավորումում չի հաշվարկվում աշխատանքի կազմակերպման մակարդակի ընդհանուր գործակիցը:

Այսպես, 1970 թ. հանրապետության արդյունաբերության մեջ 713,0 հազար ռուբլու ծախսումները, որոնք հատկացվել են արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի պայմանների բարելավմանը, փոխհատուցվել են ոչ թե 412,4 հազար, այլ առնվազն 713,0 հազար ռուբլու չափով:

Ուստի, ճշգրիտ մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության մեջ միավոր ծախսումների հատույցը կազմում է ո՛չ թե 1,00, այլ 1,09 ռուբլի, քիմիական արդյունաբերության մեջ 1,57-ի փոխարեն՝ 1,67 ռուբլի և այլն:

Հաշվարկի նման ձևը, ինչ խոսք, չափազանց կոպիտ է և զերծ չէ էական թերություններից, մանավանդ. որ այս դեպքում ընդունում ենք ծախսի ու հատույցի հավասարությունը, երբ վերջինս կարող է շատ ավելի բարձր լինել: Ուստի, հարկավոր է հաշվարկել աշխատանքի պայմանների բարելավման ընդհանուր գործակիցը, որն այդ պայմանների (առանձին տարրերի) փաստացի վիճակի շեղման ինդեքսն է նորմատիվի նկատմամբ: Իսկ այդ գործակցի մեծության փոփոխությունը, անկասկած, փոփոխություն է մտցնում և ձեռնարկության աշխատանքի կազմակերպման մակարդակի ընդհանուր գործակցի մեջ, որով և ճիշտ կարտահայտվի վերջինիս արդյունավետության չափը ինչպես ողջ արդյունաբերության, այնպես էլ նրա առանձին ճյուղերում ու ձեռնարկություններում:

ԱԳԿ կոմպլեքս միջոցառումների շարունակ մշակման ու ներդրման պայմաններում գործում է մեկ ընդհանուր օրինաչափություն: Այն, որ արդյունաբերության մասշտաբով մշակվող ու ներդրվող միջոցառումների թիվը տարեցտարի կարող է աճել, պարտադիր պայման չէ, այն կարող է նվազել, սակայն ապահովել ավելի բարձր արդյունավետություն: Վկայակոչվող օրինաչափությունը վերաբերում է միավոր միջոցառման մշակման ու ներդրման համար



միջին ծախսումների աստիճանական իջեցմանը, իսկ արդյունավետության՝ բարձրացմանը: Դա պայմանավորված է հետևյալ հանգամանքներով. նախ՝ արդյունաբերական ձեռնարկություններում ու մինիստրություններում ԱԳԿ ըստ ամենայնի ներդրման նպատակով, սկզբնական ժամանակաշրջանում (1965—1969) կատարվել ու կատարվում են հսկայական միանվագ նյութական, աշխատանքային ու ֆինանսական ծախսումներ (ԱԳԿ լաբորատորիաների, բաժինների ստեղծման, կադրերի հավաքագրման, նրանց որակավորման բարձրացման, անհրաժեշտ գույքի, սարքավորումների, միջոցների և գրական մեթոդական օգնության և այլն): Հետևաբար, որոշակի ժամանակաշրջանի համար միավոր միջոցառման մշակման ու ներդրման միջին ծախսումները կարող են աճել կամ մնալ նույնը: Երկրորդ, միավոր միջոցառման արդյունավետության անընդհատ աճը բացատրվում է նրանով, որ արտադրության օղակներում ԱԳԿ պլանաչափ ու համակողմանի ներդրումը նպաստում է աշխատանքի ընդհանուր արդյունավետության բարձրացմանը: Նախորդ տարիներին կատարված ծախսումների զգալի մասը, որպես կանոն, տարածվում է հաջորդ տարիների տնտեսական գործունեության վրա, իսկ ամենամյա նոր ներդրումների՝ համեմատաբար փոքր մասշտաբների դիմաց ակնկալվում է ավելի բարձր արդյունավետություն:

Այստեղից հետևում է, որ միավոր միջոցառման արդյունավետության բարձրացմանը համազոր նշանակություն ունի դրա մշակման ու ներդրման ծախսումների իջեցումը: Այդ կարելի է համարել ճիշտ, եթե աշխատանքի կազմակերպման կատարելագործման խնդիրների կատարումը ամբողջովին համապատասխանում է ձեռնարկություններում ու միավորումներում նախօրոք մշակված ու հաստատված ԱԳԿ, կոլեկտիվի սոցիալական զարգացման ընթացիկ ու հեռանկարային պլանային առաջադրանքներին: Իսկ եթե միավոր միջոցառման իրականացման ծախսումները իջեցվեն ի հաշիվ միջոցառումների թվի խիստ կրճատման, ինչպես այդ նկատվում է մեր արդյունաբերության մեջ, ապա այն ոչ մի ընդհանուր կապ չունի ինչպես ԱԳԿ, այնպես էլ միավոր միջոցառման ծախսումների իջեցման և արդյունավետության բարձրացման համազորության օրինաչափության հետ:

Այսպիսով, հանրապետության արդյունաբերության մեջ ԱԳԿ ներդրման վերաբերյալ վիճակագրական տվյալների վերլուծությունից պարզվում է, որ դրա նպատակն է աշխատանքի արդյունավետության մեծացումը, աշխատանքի պայմանների բարելավումն ու դյուրացումը և, ամենակարևորը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումը:

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Հ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ, Վ. Ռ. ԳԱՍՊԱՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածուներ

*Հասարակության զարգացման արդի պայմաններում վիթխարի է գիտատեխնիկական առաջընթացի դերը: Այսօր չկա հասարակական կյանքի մի բնագավառ, որտեղ չզգացվի գիտության օբյեկտիվ անհրաժեշտությունը: Գիտատեխնիկական առաջընթացի բուռն զարգացման պայմաններում գիտության, տեխնիկայի և արտադրության փոխազդեցության բնագավառն արագորեն ընդլայնվում է, և տեսական հետազոտությունների, նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների ուղիների հայտնաբերումն ու դրանց փոխադարձ մերձեցումը դարձել են կարևորագույն պրոբլեմ:*

*«Մեր առջև,— նշված է ՍՄԿԿ XXIV համագումարում՝ Լ. Ի. Բրեժնևի հաշվետու զեկուցման մեջ,— ծառացած է պատմական կարևորություն ունեցող խնդիր՝* գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ, *ավելի լայնորեն զարգացնել արտադրության հետ գիտության միացման սեփական, սոցիալիզմին հատուկ ձևերը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 75—76):*

*Գիտության և արտադրության կապի տեխնիկա-տնտեսական մեխանիզմում (կառուցվածքում) գոյություն ունեն բազմաթիվ և բազմակողմանի կոմպլեքս պրոբլեմներ: Դրանք, առաջին հերթին, փոխադարձաբար իրար հետ կապված երկու խոշոր խնդիրներ են, որոնք մի կողմից, առնչվում են արտադրության ոլորտին, որը արտադրողաբար սպառում է գիտության նորագույն նվաճումները, մյուս կողմից՝ գիտությանը, որն իր նվաճումներն իրացնում է արտադրության պրոցեսում: «Գիտություն-տեխնիկա-արտադրություն» ամբողջական ցիկլում գործող հարաբերությունների շարքում կարևոր են տեխնիկա-տնտեսական կապերը, որոնք իրացվում են հետևյալ հաջորդականությամբ և բաղկացած են հետևյալ հիմնական սողերից. գիտական հետազոտություններ և նախագծումներ, տեխնիկական մշակումներ, նոր տեխնիկայի արտադրական սպառում:*

*Այստեղ խնդիրն այն է, որպեսզի առավելագույն հնարավորության սահմաններում ապահովվի գիտահետազոտական և նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունների, միջանցիկ օղակների, ճյուղերի աշխատանքների կոորդինացումը:*

*Երկրում գոյություն ունեցող խոշոր արտադրամիավորումների և ձեռնարկությունների փորձի ուսումնասիրությունները վկայում են, որ այդ հնարավորությունները որոշակի կարճ ժամանակաշրջանում ազդում են կոմպլեքսային կոորդինացված նոր տեխնիկայի ստեղծման վրա, դրանք միաժամանակ իրենց տեխնիկա-տնտեսական պարամետրերով չեն զիջում, կամ հաճախ, նույնիսկ գերազանցում են համաշխարհային լավագույն նմուշներին: Կարելի է նշել, որ ձեռնարկությունը տեխնիկապես լիարժեք կարող է լինել միայն այն դեպքում, երբ օրգանապես միասնական են գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական և արտադրական աշխատանքները:*

*Մեր երկրում այժմ գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական բազմաթիվ կազմակերպություններ միավորվում են արդյունաբերական ձեռնարկությունների հետ: Այս բնագավառում հատկապես ուշագրավ է էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, որտեղ գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունների մեծ մասը միավորված է արդյունաբերական ձեռնարկությունների հետ:*

*Մեր երկրի էլեկտրատեխնիկական արդյունաբերության ճյուղում, գիտության, տեխնիկայի և արտադրության միավորման շնորհիվ, կարճ ժամանակամիջոցում (3—4 տարի) առավել նպատակասլաց դարձան գիտահետազոտական աշխատանքները, բարձրացավ գիտական և ինժեներական աշխատողների պատասխանատվությունը ստանձնած գործի նկատմամբ: Նրանք դարձել են արտադրության լիարժեք մասնակիցներ, ավելի շատ են շահագրգռված նրա բազմակողմանի առաջընթացի ու զարգացման համար: Միավորման շնորհիվ բարելավվել է թողարկվող էլեկտրամեքենաների տեխնիկական մակարդակը, կրճատվել նոր տեխնիկայի արտադրական յուրացման ժամանակը:*

*Բավական է նշել, որ 1972 թ. սկզբին ավելի քան 350 էլեկտրատեխնիկական արտադրանքի և կոմպլեքսներ արժանացել են պետական որականիշի: Դրանց զգալի մասը մշակվել է գործարանային ինստիտուտներում և կոնստրուկտորական բյուրոներում: Եթե ընդհանրապես տրանսֆորմատորաշինության բնագավառում թողարկվող արտադրանքի մոտ 15 տոկոսն է բարձրորակ, ապա միայն ինստիտուտ-գործարան «Ուրալէլեկտրատյաժմաշ»-ում այն կազմում է 24 տոկոս: Գիտության և արտադրության համագործակցության ու մերձեցման շնորհիվ նոր տեխնիկայի յուրացման ժամկետը կրկնակի կրճատվել է: Օրինակ, եթե նոր սերիայի խոշոր էլեկտրական մեքենաները մեկուսացված կոնստրուկտորական բյուրոյում նախկինում մշակվում էին մոտավորապես 4—5 տարում, ապա գործարանների կոնստրուկտորական բյուրոներում այն իրականացվում է 1,5—2 տարում: Էլեկտրաշարժիչների սերիաներից մեկի մշակումը (մեկուսացված ինստիտուտում) տևել է 5 տարի, սակայն համասեռ էլեկտրաշարժիչների մի ուրիշ սերիա, որի տեխնիկական պարամետրերը և արտադրության բնույթը գրեթե նույնն են, Խարկովի էլեկտրամեխանիկական գործարանի հատուկ կոնստրուկտորական բյուրոն մշակել է 2 տարում: Նոր կոնստրուկցիայի ուժային կաբելը ճյուղային առանձին ինստիտուտում մշակվել է 4 տարում, իսկ «Մոսկաբել» գործարանն իր հատուկ կոնստրուկտորական բյուրոյի ուժերով այդ նույն աշխատանքը կատարել է մեկ ու կես տարում:*

*Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ միաժամանակ ստեղծվում են գլխադաս և կոմպլեքսային գիտահետազոտական խոշոր ինստիտուտներ, որոնք իրականացնում են իրենց պրոֆիլին համապատասխանող բոլոր աշխատանքների գիտական և տեխնիկական ղեկավարությունը: Դրանց լայն իրավունքներ և միջոցներ են տրված ինչպես ֆինանսավորման, այնպես էլ*

կատարվող աշխատանքների վերահսկման բնագավառում: Օրինակ, «Էլեկտրոպրովոդ» գիտահետազոտական ինստիտուտը (Մոսկվա) կատարում է ավելի քան 40 կազմակերպությունների ու ձեռնարկությունների տեխնիկական պահանջները և ձևակերպում դրանց արմատավորման պլանները:

Իհարկե, գիտահետազոտական աշխատանքների և արտադրության կապի բնույթագիրը չի սահմանափակվում գիտության նվաճումների ներդրմամբ: Այստեղ կարևոր նշանակություն ունի գիտությանն անհրաժեշտ ռեսուրսների օգտագործումը, որոնց փոխադարձ կապն ու կախվածությունը դեռևս բավարար չէ, որի հետևանքով «գիտություն-տեխնիկա-արտադրություն» ընդհանուր կոմպլեքսում նոր տեխնիկայի ներդրումից ստացվող վերջնական արդյունքի տնտեսական արգասիքը ժողովրդական տնտեսության մասշտաբով որոշակիորեն չի դրսևորում այդ ընդհանուր ցիկլի յուրաքանչյուր տարրի առանձնահատկությունները, նշանակությունն ու դերը: Հատկապես այս վերջնական արդյունքին պետք է ծառայի գիտահետազոտական աշխատանքների կոմպլեքսային պլանավորման, ղեկավարման և խրախուսման ամբողջ սիստեմը:

Մինչև տնտեսական ռեֆորմը ճյուղային գիտահետազոտական ինստիտուտները տնտհաշվարկային սկզբունքների կիրառմամբ անբավարար հարաբերությունների մեջ էին արդյունաբերական ձեռնարկությունների հետ: Այժմ արդյունաբերության շատ ենթաճյուղերում, հատկապես էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ, կատարվել են արմատական փոփոխություններ: Գիտահետազոտական ինստիտուտները գործելով տնտհաշվարկային սկզբունքով և ընդգրկվելով արդյունաբերական, արտադրական, գիտաարտադրական և այլ խոշոր միավորումներում, դարձել են սոցիալիստական միասնական արտադրական ձեռնարկությունների բաղկացուցիչ մասեր: Ստեղծված միավորումներում օրգանապես միաձուլվում են ինչպես գիտական, այնպես էլ արտադրական կոլեկտիվները և նրանց աշխատանքը հետապնդում է մեկ ընդհանուր նպատակ՝ բուռն կերպով զարգացնել արտադրաուժերը, ելնելով ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի պահանջներից:

Կոմպլեքսային գիտահետազոտական միավորումների աշխատանքային փորձը վկայում է, որ այնպիսի ցուցանիշներ, ինչպիսիք են նորաստեղծ կոնստրուկցիայի աշխատանքային ծախսումները, մշակման ժամանակը, նախագծերի քանակը և այլն, ավելի են համապատասխանում արտադրական պահանջներին, քան առանձին մասնագիտացված գիտատեխնիկական կազմակերպություններում: Վերջիններիս մշակած ընդհանուր կոնստրուկցիաների մոտ 15 տոկոսն է առանց որոշակի ուղղումների և շտկումների հանձնվում արտադրության, իսկ վերոհիշյալ միավորումներում այդ ցուցանիշը հասնում է մինչև 50 տոկոսի: Միաժամանակ կարելի է նշել, որ ստեղծված կոմպլեքսային գիտահետազոտական միավորումներում համեմատաբար արագ է տեղի ունենում ինչպես նոր կոնստրուկցիաների մշակման, այնպես էլ դրանց ներդրման գործը:

Այսպես, Լենինգրադի «Պոզիտրոն» գիտա-արտադրական միավորումում գիտությամբ և արտադրությամբ զբաղվողների աշխատանքը կազմում է մեկ միասնություն, որտեղ զուգակցվում են տեխնիկական և տնտեսական հետազոտությունները, որոնք փոխադարձաբար նպաստում են նոր տեխնիկայի զարգացմանը և դրա արդյունավետության բարձրացմանը: Լենինգրադի «Պոզիտրոն», «Էլեկտրասիլա» և «Սվետլանա» միավորումները մեր երկրում առաջինը սկսեցին սոցիալիստական մրցությունը «հետազոտություն-արտադրու-



թյուն» ցիկլի ընդհանուր տևողության կրճատման համար, հիմնական շեշտը դնելով նոր տեխնիկայի մասսայական և սերիական ներդրման վրա: Նոր կոնստրուկցիաների մշակման տևողությունը նվազում է հիմնականում գիտահետազոտական աշխատանքների կատարման ժամկետների կրճատման, կոնստրուկտորական և տեխնոլոգիական աշխատանքների ու արտադրության նախապատրաստման զուգակցման շնորհիվ: Սակայն, այստեղ հիմնական արդյունքը ստացվում է նոր արտադրատեսակների իրացման փուլում: Օրինակ, «Պոզիտրոն» միավորումում նոր արտադրատեսակների քանակը, որոնց փաստաթղթերի հանձնումից մինչև սերիական արտադրությունը տևել է 2 տարուց պակաս, 3 տարվա ընթացքում ավելացել է 6—20-ով, կամ ավելի քան եռապատկվել:

Լենինգրադի «Էլեկտրասիլա» միավորման կատարած գիտահետազոտական գրեթե բոլոր աշխատանքները ներդրվել են արտադրության մեջ, զգալիորեն կրճատվել է նոր ապրանքների պատրաստման ցիկլը, և թողարկվող արտադրանքն ունի տեխնիկական բարձր մակարդակ:

Այսպիսով, գիտահետազոտական աշխատանքների կատարման ժամկետի կրճատման ու դրանց արդյունքների ներդրման արագացման, ինչպես նաև «հետազոտություն-արտադրություն» ընդհանուր ցիկլի տնտեսական արդյունավետության բարձրացման գործում ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում գիտա-արտադրական և գիտա-տեխնիկական միավորումներում, որոնք կազմակերպվել են վերջին ժամանակներս արդյունաբերության տարբեր ճյուղերում: Նման միասնական տնտհաշվարկային գիտա-արտադրական կոմպլեքսները լայն հնարավորություններ են ընձեռում՝ վերացնելու գիտության և արտադրության պլանավորման ու ղեկավարման մեջ գոյություն ունեցող թերությունները:

Ինչպես գործող, այնպես էլ առաջիկայում կազմակերպվող միավորումներում, մեր կարծիքով, միշտ պետք է առաջնությունը տրվի գիտա-արտադրականին, քանի որ այս ձևն ավելի առաջադիմական է: Այն բխում է և՛ ընդհանուր գիտատեխնիկական առաջընթացի, և՛ արտադրության զարգացման շահերից: Միաժամանակ պետք է նշել, որ խորագիտակ ղեկավարն ու կազմակերպիչը կարող է նույն հաջողություններն ունենալ նաև գիտության և արտադրության զուգակցման, միասնական ղեկավարման ու կազմակերպման գործում: Հետևաբար, միավորումների կազմակերպման պրակտիկայում առաջնությունն օբյեկտիվորեն պետք է տրվի գիտահետազոտական կազմակերպություններին և դրանց պետք է ենթարկվեն արդյունաբերական ձեռնարկությունները: Հակառակ դեպքում զգալիորեն կրճատվում են գիտահետազոտական աշխատանքները, և որոնք, այդպիսով, կսահմանափակվեն տվյալ արտադրության շրջանակներում: Նման երևույթի օրինակ կարող է ծառայել մեր հանրապետությունում կազմակերպված «Հայէլեկտրամեքենա» միավորման փորձը, երբ համամիութենական կոմպլեքսային էլեկտրասարքավորումների գիտահետազոտական ինստիտուտն ընդգրկվեց Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կազմում, ստեղծելով արտադրա-գիտական միավորում:

Գիտության և արտադրության կապի բնագավառում կարևոր նշանակություն ունեն ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի մշակած ձևերը: Տեսական մի շարք հետազոտությունների հիման վրա կատարվում են տեխնիկական մշակումներ

և դրանց արդյունքները ներդրվում արտադրության մեջ։ Այստեղ մեծ դեր են խաղում տեսական խոշոր ինստիտուտներին կից գործող հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոները, որոնք գործում են տեսական հետազոտությունների հեղինակների անմիջական ղեկավարությամբ։ Այդ իսկ բյուրոներում պատրաստվում և ստուգվում են նոր կոնստրուկցիաներ։

«Հայէլեկտրամեքենա» արտադրա-գիտական միավորումն էլեկտրատեխնիկական սարքավորումների մշակման և արտադրության մեկ ընդհանուր արտադրատնտեսական համալիր է՝ 100 կվտ-ից բարձր գեներատորներով, խոշոր էլեկտրական մեքենաներով (100 կվտ-ից բարձր էլեկտրաշարժիչներով), շարժական էլեկտրակայաններով, ուժային տրանսֆորմատորներով, բարձր հաճախականության փոխարկիչներով, ցածրավոլտ ապարատուրայով և կենցաղային սարքավորումներով։ Այդ միավորման մեջ ընդգրկված են Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանները, ցածրավոլտ ապարատուրայի արտադրության՝ Ապիզբեկովի մասնաճյուղը (գործարանի արտադրամասային իրավունքով) և կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը։ Միավորման գլխամասային գործարանը Երևանի էլեկտրամեքենաշինականն է, իսկ Լենինականի սառնարանային կոմպրեսորների և ինստիտուտի փորձնական գործարանները, մտնելով արտադրա-գիտական միավորման մեջ, հանդես են գալիս ինքնուրույն իրավաբանական անձի իրավունքով։

Այսպիսով, «Հայէլեկտրամեքենա» արտադրա-գիտական միավորումն իր արտադրա-տնտեսական գործունեությունն իրականացնում է տնտհաշվարկային սկզբունքով, ունի իր հաշվեկշիռը, որն արտացոլում է ամբողջ միավորման գործունեության արդյունքները և հանդես է գալիս նաև մեկ ընդհանուր իրավաբանական անձի իրավունքով։

Վերոհիշյալ միավորումը պատասխանատու է պետական բոլոր սարքավորումների և նախատեսված տեխնիկա-տնտեսական ցուցանիշների կատարման համար, ապահովելով արտադրության տեխնիկական կատարելագործման, դրա կազմակերպման մակարդակի բարձրացման և թողարկվող արտադրանքի որակի սիստեմատիկ բարելավման գործը։ Միավորումն ինչպես արտադրատեխնիկական, այնպես էլ գիտանախագծային ծառայություններն ու աշխատանքներն իրականացնում է էլեկտրասարքավորումների որակի բարելավման, ժողովրդական տնտեսության խնդիրների ապահովման համապատասխան։

Ընդհանուր արտադրատնտեսական միավորման իրավունքներն ու պատասխանատվությունը որոշվում են միութենական համապատասխան արդյունաբերական մինիստրության, իսկ արտադրական բաժանմունքներինը կամ արտադրամասերինը, ինստիտուտինը՝ միավորման կողմից։ «Հայէլեկտրամեքենա» արտադրատնտեսական միավորումը՝ կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը, կոչված է իրականացնելու գիտահետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների պլանավորման, ղեկավարման և հսկողության գործը, միավորման ներսում ապահովում է կապը գիտահետազոտական և փորձա-կոնստրուկտորական այլ կազմակերպությունների հետ՝ գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների ռացիոնալ իրականացման և կոորդինացման, ինչպես նաև նոր տեխնիկայի մակարդակի հետագա բարձ-



րացման նպատակով։ Ինստիտուտը, միավորման մյուս ծառայությունների հետ մեկտեղ, ղեկավարում և իրականացնում է նոր մշակվող և պատրաստվող արտադրատեսակների ճյուղային և պետական ատեստավորման աշխատանքները։ Միաժամանակ նրան են հանձնարարված այն էլեկտրասարքավորումների պահանջարկի ուսումնասիրությունն ու որոշման խնդիրները, որոնք արտադրվում և մշակվում են «Հայէլեկտրամեքենա» արտադրա-գիտական միավորման կողմից։ Գիտահետազոտական ինստիտուտի գործունեությունն իրականացվում է միավորման գլխավոր դիրեկտորի հաստատած կանոնադրությամբ, որը մշակված է ՍՍՀՄ Մինիստրների սովետի գիտության և տեխնիկայի պետական կոմիտեի 1970 թ. նոյեմբերի 13-ի № 427 որոշման հիման վրա։

Իհարկե, գիտահետազոտական ու նախագծային կոնստրուկտորական աշխատանքների և արտադրության մերձեցման գործում որոշակի աշխատանքներ արդեն կատարվել են «Հայէլեկտրամեքենա» արտադրա-գիտական միավորման կազմակերպություններում։ Սակայն, պետք է նշել, որ դեռևս շատ անելիքներ և բարդ խնդիրներ կան, որոնք հետագայում պետք է ուսումնասիրվեն ու կատարելագործվեն։ Մեր կարծիքով, «Հայէլեկտրամեքենա» միավորման արտադրա-գիտական գործունեության հետագա բարելավման, արտադրության արդյունավետության բարձրացման գործում նպատակահարմար է գիտահետազոտական և նախագծային կոնստրուկտորական աշխատանքների դերի բարձրացումը և ինստիտուտի ենթակայության կարգավորումը միավորման ներսում։

Մեր հետազոտությունները ցույց են տալիս, որ ՍՍՀՄ արդյունաբերության մի շարք ճյուղերում իրականացվող գիտության և արտադրության համատեղ կազմակերպման պրոցեսում ծագել են որոշ հրատապ խնդիրներ և դժվարություններ, որոնք ունեն ընդհանուր բնույթ։

Դեռևս լիովին չի մշակված նոր տեխնիկայի ստեղծման, իրացման և օգտագործման փաստացի արդյունավետության սահմանման միասնական մեթոդիկան։ Անհրաժեշտ է նշել, որ գիտահետազոտական նախագծային-կոնստրուկտորական շատ կազմակերպություններ առանց հիմնավորված արտադրական ծրագրերի, նոր մշակվող արտադրատեսակների համար (իհարկե, դրանք բոտացվում են արդյունաբերական ձեռնարկություններից) հաշվարկում են պայմանական տնտեսական էֆեկտը, որի հիման վրա գնահատվում է գիտահետազոտական կազմակերպության ընդհանուր գործունեությունը։

Այս միտքը պարզաբանելու համար բավական է նշել միայն մեկ փաստ։ Երևանի ավտոմատացման սարքերի և տարրերի պետական միութենական կոնստրուկտորական բյուրոյում իրենց մշակած յուրաքանչյուր նոր սարքի կամ թեմայի տնտեսական արդյունավետությունը հիմնավորում են վերոհիշյալ մեթոդով. ստացվում է տնտեսական մեծ արդյունավետություն, որը ռեալ չէ։ Այսպես, կոնստրուկտորական բյուրոյի 1970 թ. թեմատիկ պլանով նախատեսված է մշակել գիտահետազոտական և փորձա-կոնստրուկտորական 24 թեմա։ Դրանցից միայն 15-ի տնտեսական արդյունավետության հաշվարկները կազմել են 3407 հազար ռուբլի, այդ թվում՝ 8 թեմայից 2293 հազար ռուբլի, այն դեպքում, երբ բյուրոյի ամբողջ գործունեության ընթացքում (1961—1972 թթ.) նրա մշակումներից սարքաշինական արդյունաբերական ձեռնարկություններն արտադրել են ընդամենը 798 տարբեր տեսակի սարքեր կամ, արժեքային արտահայտությամբ, 190,2 հազար ռուբլու արտադրանք։

Իհարկե, մեր կարծիքով, նման տնտեսական արդյունավետության հաշվարկը հիմնավոր և ռեալ չէ և կրում է ձևական բնույթ:

Դեռևս չկա ճյուղային գիտահետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների պլանավորման և հաշվառման մեթոդիկա: Նոր տեխնիկա յուրացնող և նոր արտադրատեսակներ թողարկող ձեռնարկություններում անբավարար են ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների համար կատարվող տնտեսական խթանման և նյութական խրախուսման ֆոնդերի վերահաշվարկները: Դեռևս բավարար չէ գիտահետազոտական աշխատանքների և նոր տեխնիկայի ներդրման պլանների համապատասխանությունը, գրեթե բացակայում է պլանավորման միասնական սիստեմը: Նոր տեխնիկա և առաջադիմական տեխնոլոգիա կիրառող արդյունաբերական ձեռնարկություններում անհրաժեշտ է կատարելագործել խրախուսման սիստեմը այն հաշվով, որ հնարավոր լինի համապատասխան նյութական միջոցներ հատկացնել գիտահետազոտական աշխատանքների խրախուսման համար:

Այսպես, գործող կարգի համաձայն, նույնիսկ լավ աշխատող ձեռնարկությունը, որի թողարկած արտադրանքի ծավալի 15—20 տոկոսը կազմում է նոր արտադրանքը, կարող է նորագույն տեխնիկայի խրախուսման ֆոնդ ստեղծել միայն աշխատավարձի ֆոնդի 1,5—2 տոկոսի չափով: Արտադրական գործունեության բարձր արդյունքների համար պարգևատրումները միջին հաշվով կազմում են 10 տոկոս: Նման վիճակն իջեցնում է արդյունաբերության մեջ գիտության նվաճումների ներդրման աշխատանքների արագացման կոմպլեքս միջոցների մշակման արդյունավետությունը:

Գիտատեխնիկական առաջընթացի կոնկրետ ուղիներն ու մեթոդները մշակված են ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումներում, որոնք հենվում են սոցիալիստական շինարարության լենինյան դրույթների վրա: Զարգացնելով տնտեսավարման լենինյան սկզբունքները, մեր կուսակցությունը ջանք չի խնայում՝ հետևողականորեն կիրառելու տնտեսական ռեֆորմի հետագա սկզբունքները, սոցիալիստական տնտեսաձևի առավելություններն ըստ ամենայնի օգտագործելու աշխատավորության ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու համար՝ հանուն արտադրական ռեսուրսների արդյունավետ օգտագործման և ժողովրդի հարաճուն պահանջմունքների բավարարման: Հատկապես այս առնչությամբ գիտության՝ որպես հասարակության անմիջական արտադրաուժի, արդյունավետության բարձրացումը, գիտական հետազոտությունների ըստ ամենայնի ծավալումն ու ներդրումը, որոնք ապահովում են հասարակական աշխատանքի արտադրողականության աճը, միշտ եղել են կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում: Ուստի, գիտության ու արտադրության մերձեցումն ու գիտա-արտադրական միավորումների ստեղծումը կարևոր քայլ են կուսակցության վիթխարի կանխագծումներն իրականացնելու ճանապարհին:

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ
ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**ԷԼՄԻՐԱ ԿԱՖԱՐՈՎԱ**
Ադրբեջանի կոմկուսակցության Բաքվի
քաղկոմի քարտուղար

Արդի պայմաններում կուսակցության գաղափարական-դաստիարակչական աշխատանքի առավել աճող նշանակությունը բնորոշվում է կոմունիստական շինարարության ընթացիկ փուլի օբյեկտիվ առանձնահատկությամբ: Սոցիալ-տնտեսական առաջընթացի տեմպերը, տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների միացման պատմական խնդրի իրականացումը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը պահանջում են մշտապես զբաղվել հասարակության արտադրողական գլխավոր ուժի՝ աշխատողի, մարդու, գաղափարական ու քաղաքական համակողմանի զարգացման հարցերով:

Գաղափարական աշխատանքի բովանդակությունն ու ներգործունությունը պայմանավորված են կոմունիստի անձնական օրինակով, մարքս-լենինյան ուսմունքի նրա իմացությամբ: Որքան բարձր է այդ մակարդակը, այնքան կուսակցությունն օժտվում է քաղաքական ազդեցության մեծ ուժով, առավել լուրջ հաջողության հասնում կոմունիստական հասարակության ստեղծման ճանապարհին: Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ «...եթե մենք բանվորներին և գյուղացիներին պարտաճանաչությամբ սովորեցնում ենք կարգապահություն, ապա մենք պարտավոր ենք սկսել այն հենց մեզնից» (ПСС, т. 50, стр. 63): Այս պահանջը, անկասկած, առաջին հերթին վերաբերում է ղեկավար աշխատողներին:

Գրեթե մեկ միլիոն բնակիչ ունեցող Բաքվում, ակտիվ գործունեություն է ծավալում կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական ղեկավար աշխատողների ու մասնագետների մի ստվար բանակ: Ղեկավար աշխատողների կեսը մինչև 40 տարեկան է և, հասկանալի է, նրանք ունեն անհրաժեշտ փորձ: Սա վկայում է, որ Բաքվի կուսկազմակերպությունն իր տրամադրության տակ ունի բավականաչափ կադրեր, որոնք ունակ են լուծելու տնտեսական և կուլտուրական շինարարության ամենաբարդ խնդիրները, միաժամանակ պահանջելով մշտական ուշադրություն իրենց նկատմամբ:

Կուսակցության քաղաքականությունը պրակտիկայում իրականացնելու, աշխատավորներին դաստիարակելու և կազմակերպելու՝ ղեկավար կադրերի գիտելիքների ու իմացության մակարդակով է պայմանավորված հասարակության հետագա հաջողությունը: Այդ պատասխանատու խնդիրները լուծել, ղեկավար լինել կարող են ո՛չ միայն քաղաքականապես գրագետ ու խորագիտակ

մարդիկ, այլև նրանք, ովքեր աչքի են զարնում իրենց ինտուիցիայով, մշտապես որոնում աշխատավորների գաղափարական ներգործության արդյունավետ եղանակներ ու մեթոդներ: Ուստի, զարմանալի չէ, որ ղեկավար կադրերի հետ տարվող աշխատանքը միշտ եղել է կոմկուսակցության ուշադրության կենտրոնում: «Կուսակցության և երկրի առջև դրված մեծ ու բարդ խնդիրները,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում,— հրամայաբար պահանջում են, որ ղեկավար կադրերը կատարելապես տիրապետեն կառավարման ժամանակակից մեթոդներին, ունենան նորի զգացում, տեսնեն զարգացման հեռանկարը, կարողանան գտնել ծագող պրոբլեմների լուծման առավել արդյունավետ եղանակները, օգտագործել այլոց գիտելիքներն ու փորձը: ...Կյանքից ետ չմնալու համար մեր բոլոր կադրերը պետք է շարունակ սովորեն, բարձրացնեն իրենց գաղափարական-տեսական մակարդակը, տիրապետեն գիտության և առաջավոր պրակտիկայի նվաճումներին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 277, 278):

Բաքվի քաղաքային կուսկազմակերպությունը, գործողության ծրագիր ընդունելով ՍՄԿԿ XXIV, Ադրբեջանի կոմկուսակցության XXVII համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, ելնելով կուսակցության Տաշքենդի և Թբիլիսիի քաղաքային կոմիտեների գործունեության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից մշակել է քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային միջոցառումներ: Դրանց նպատակն է, մի կողմից՝ բարելավել ղեկավար կադրերի գաղափարական-տեսական, տնտեսագիտական ու մասնագիտական պատրաստությունը, մյուս կողմից՝ նրանց ակտիվորեն ներգրավել կոլեկտիվների քաղաքական դաստիարակության շնորհակալ գործում: Քաղկոմը, շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները իրենց կարևոր խնդիրն են համարում՝ յուրաքանչյուր կոմունիստի, ղեկավար աշխատողի դաստիարակել գաղափարական համոզվածության ոգով, զինել մարքսիզմ-լենինիզմով: Դրա վկայությունը թեկուզ այն է, որ քաղաքական ուսուցման բոլոր օղակներում ընդգրկված են Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի, Բաքվի քաղաքային և շրջանային կոմիտեների 4.300 ղեկավար կադրեր: Հատկանշական է, որ Բաքվի քաղաքական և տնտեսագիտական ուսուցման սիստեմի 9.028 պրոպագանդիստներից 8.059-ը կոմունիստներ են, և նրանց մեջ քիչ չեն ղեկավար կադրերը:

Հարկ է նկատել, որ պրոպագանդիստ-ղեկավարների թիվը վերջին շրջանում աճել է: Քաղլուսացանցի նոր ուսումնական տարում յուրաքանչյուր ղեկավար աշխատող պրոպագանդիստ է: Կուսակցության Բաքվի քաղկոմն ու շրջկոմները մեծ կարևորություն են տալիս ղեկավար կադրերին պրոպագանդիստական գործունեության մեջ ներգրավելուն: Ինչպես ապացուցում է փորձը, դա տալիս է դրական արդյունք: Մի կողմից՝ ապահովվում է պարապմունքների կազմակերպական և գաղափարական բարձր մակարդակը, մյուս կողմից՝ խթանվում է ղեկավարի գաղափարական աճը, ընդլայնվում նրա գիտական մտահորիզոնը: Պրոպագանդիստական պարտականությունը դրդում է մարդուն՝ խորությամբ յուրացնել մարքսիզմ-լենինիզմը, հնարավորություն ընձեռում՝ լավ իմանալու իր ունկնդիրներին, պատկերացում կազմելու նրանց քաղաքական հասունության, բանիմացության, հետաքրքրությունների ու պահանջմունքների շրջանակի մասին: Իր հերթին ենթակաների քաղաքական ու գործնական հատկանիշներին քաջատեղյակ լինելը հնարավորություն է ընձեռում ղեկավարին՝ գործնականորեն լուծելու տնտեսական ու արտադրական հարցերը, մոբիլիզացնելու կոլեկտիվին՝ հնգամյակի խնդիրների լուծման համար: Հետևաբար, պրոպագանդիստական աշխատանքը չի շեղում ղեկավարին իր հիմնական գործունեությունից, այլ օգնում է նրան՝ հաջողությամբ ղեկավարելու կոլեկտիվը:

***

Մարքս-լենինյան կրթության մոբիլիզացնող դերն առավել քան մեծ է այսօր, երբ երկրում արմատական շրջադարձ է կատարվում դեպի տնտեսա-



վարման նորագույն մեթոդները: Պրոպագանդիստ-ղեկավարները, որպես ժողովրդական լայն մասսաների շրջանում կուսակցության քաղաքականության կիրառողներ, կոչված են օգնելու կուսկազմակերպություններին: Ահա թե ինչու Բաքվի քաղաքային կուսկազմակերպությունը պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը համարում է քաղաքական ու տնտեսագիտական կրթության հետ առնչվող բոլոր հարցերի լուծման հիմնական օղակ:

Կոմունիստ-ղեկավարների մարքս-լենինյան կրթության խնդիրները կարևոր տեղ են գրավում կուսակցության Բաքվի քաղկոմի գործունեության մեջ: Միայն վերջին երկու տարում մեր քաղկոմը տարբեր առումներով անցկացրել է կադրերի մարքս-լենինյան ուսուցմանը և տնտեսագիտական կրթությանը նվիրված հատուկ խորհրդակցություններ, կուսշրջկոմներն իրենց բյուրոների նիստերում պարբերաբար քննարկել են քաղաքական-մասսայական ու պրոպագանդիստական գործունեությանը ղեկավարների անձնական մասնակցության, նրանց գիտելիքների տեսական մակարդակի բարձրացման հետ կապված հարցերը:

Կադրերի ուսուցման համար մեզ մոտ կան նպաստավոր պայմաններ: Վերջին տարիներին Բաքվի կուսկազմակերպություններում ստեղծվել է ղեկավար կադրերի մարքս-լենինյան պատրաստության արդյունավետ համակարգ. ուսուցումը Բաքվի բարձրագույն կուսդպրոցի կուսակցական և սովետական աշխատողների վերապատրաստման դասընթացներում, մարքսիզմ-լենինիզմի համալսարանում, մշտական գործող տեսական սեմինարներում, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցներում, տեսական կոնֆերանսներում և ինքնուրույն ուսուցումը՝ անհատական պլանով:

Կադրերի քաղաքական կրթության և դաստիարակության գործում վճռական դեր է խաղում Ադրբեջանի կոմկուսակցության Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանը, որը միաժամանակ դարձել է պրոպագանդիստների պատրաստման և նրանց տեսական գիտելիքների հարստացման գործող օղակ: Այս տարի այն տվել է իր երեսուներորդ շրջանավարտները: Այժմ այնտեղ սովորում է 1.300 մարդ: Վերջին տարիներին այստեղ բացվել են կուսակցական-տնտեսական ակտիվի, կուլտուրաաշխատողների ֆակուլտետներ, գիտական աթեիզմի, կոմերիտական ակտիվի բաժիններ: Նոր ուսումնական տարում սկսեց գործել Ադրբեջանի՝ Ս. Մ. Կիրովի անվան պետհամալսարանին կից մարքսիզմ-լենինիզմի համալսարանի մասնաճյուղը: Այստեղ Բաքվի պրոֆեսորա-դասախոսական կազմն ուսումնասիրում է կուսակցության տնտեսական քաղաքականության, քաղաքատնտեսության, ժամանակակից հեղափոխական պրոցեսի հրատապ պրոբլեմները: Ուսուցման ընթացքում կիրառվում են այնպիսի ակտիվ ձևեր, ինչպիսիք են՝ ունկնդիրների ռեֆերատների պատրաստումը, գիտատեսական կոնֆերանսները, պրոպագանդիստական պրակտիկան:

Ղեկավար կադրերի մարքս-լենինյան պատրաստության գործում նշանակալի տեղ է հատկացվում նաև կուսակցական կրթության մյուս ձևերին: Քաղաքում լայնորեն կիրառվում են տեսական սեմինարներն ու կոնֆերանսները, որտեղ ուսումնասիրում են մարքս-լենինյան տեսության և կոմունիստական շինարարության, միջազգային կոմունիստական շարժման պրակտիկայի հրատապ հարցերը: Ներկայումս 1.325 տեսական սեմինարներում ընդգրկված է 30.304 մարդ, որից 5.749-ը ղեկավար աշխատողներ են: Կադրերի քաղաքական կրթության այս ձևին կարևոր ուշադրություն են նվիրում հատկապես Կրասինի անվան ԳՐԷՍ-ի, Բաքվի Լենինի անվան մետրոպոլիտենի, Մոնտինի և Վանո Ստուրուայի անվան գործարանների, երկրաբանական վարչության կուսկազմակերպությունները: Գիտությունների ակադեմիայի ինստիտուտներում լայն մասսայականություն են վայելում բժշկության, բնագիտության, մաթեմատիկայի, ֆիզիկայի և մյուս գիտությունների փիլիսոփայական պրոբլեմներին նվիրված մեթոդոլոգիական սեմինարները:

Կազմակերպել ենք նաև քաղաքի ստեղծագործական մտավորականության ուսուցումը: Տեղերում գործում են 17 տեսական սեմինարներ, ուր ուսումնասի-

րում են հասարակական գիտությունների զանազան պրոբլեմներ։ Հաջողությամբ է գործում քաղկոմին կից ստեղծագործական միությունների և գեղարվեստական հիմնարկությունների ղեկավարների տեսական սեմինարը։ Սեմինարի յուրաքանչյուր պարապմունքում ուսումնասիրվող պրոբլեմի առնչությամբ առաջադրվում են աշխատավորության քաղաքական, բարոյական և գեղագիտական դաստիարակության հարցերը։

Թերթերի և ամսագրերի, հրատարակչությունների և տպարանների 97 աշխատողներ ուսանում են Ադրբեջանի կոմկուսի Բաքվի քաղկոմին կից գործող ստեղծագործական սեմինարում, որը ղեկավարում է պատմական գիտությունների դոկտոր Կ. Ռահիմովը։

Կյանքը ցույց է տալիս, որ սոցիալիստական հասարակարգի զարգացման արդի պայմաններում շատ կարևոր է պրոֆեսորա-դասախոսական կազմի գաղափարական համոզվածությունը։ Այդ հարցն առավել հրատապ է դառնում «Երկրում բարձրագույն կրթության հետագա կատարելագործման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումից հետո։

Քաղաքի կազմակերպություններն սկսել են արդյունավետ կերպով զբաղվել ղեկավար կադրերի, գիտական և ստեղծագործական մտավորականության գաղափարական դաստիարակության գործով, նրանց լայնորեն ներգրավել հասարակական կազմակերպությունների գործունեության մեջ, ավելի շատ հոգատարություն ցուցաբերել կոմունիստական շինարարության արդի խնդիրների լուծման գործում նրանց դերի բարձրացման նկատառմամբ։

Բուհերի դասախոսների գաղափարական-դաստիարակչական աշխատանքում կուսկազմակերպությունները լայնորեն օգտագործում են քաղաքական ինֆորմացիան։ Մեծ նշանակություն է տրվում բուհերի դասախոսների հետ քաղկոմի ու շրջկոմների քարտուղարների, կուսակցական ապարատի պատասխանատու աշխատողների հաղորդակցմանը։

Կադրերի մարքս-լենինյան կրթության համակարգում հատուկ դեր ենք հատկացնում հասարակական գիտությունների ամբիոններին։ Վերջին շրջանում մեր բուհերում դասախոսների մեթոդոլոգիական սեմինարների պրակտիկան վկայում է նրանց օգնության արդյունավետությունը, գիտության ու դասավանդման մեթոդոլոգիական պրոբլեմների համատեղ քննարկման բեղմնավորությունը։ Այդ գործին ակտիվորեն մասնակցում են ինչպես հասարակական, այնպես էլ ուրիշ՝ հումանիտար, բնագիտական, մասնագիտական առարկաների դասախոսները։ Այդ ամենը սոցիալ-տնտեսական առարկաների դասախոսներից պահանջում է՝ անընդհատ բարձրացնել իրենց տեսական պատրաստականության մակարդակը և գիտական որակավորումը։ Գաղափարական-քաղաքական ազդեցության ուժեղացման նպատակով Ս. Մ. Կիրովի անվան Ադրբեջանի պետական համալսարանի հասարակական գիտությունների ամբիոնների կոմունիստ դասախոսները կցված են համալսարանի բոլոր ֆակուլտետներին։ Այդ ամբիոնների գործունեության կոորդինացման համար համալսարանի կուսկոմիտեին կից ստեղծվել է գիտա-մեթոդական խորհուրդ։

Սակայն, նշելով սկզբնական կուսկազմակերպությունների և ուսումնական հաստատությունների ղեկավարների կազմակերպական և քաղաքական գործունեության նկատելի առաջխաղացումը, մենք չենք կարող շրջանցել նրանց աշխատանքում տեղ գտած թերությունները։ Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմը կուսակցական մարմինների ուշադրությունը հրավիրել է ուսումնա-դաստիարակչական աշխատանքի ցածր մակարդակի վրա, որը կապված է դասախոսական կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործի կազմակերպման հետ։ «Մեզ հարկավոր է առողջացնել բարոյական մթնոլորտը մի քանի ուսումնական հաստատություններում, որտեղ դասախոսների շրջանում դեռևս առկա են խմբակայնությունն ու մանր վեճերը, զրպարտությունն ու անանուն նամակները, տեղայնության ու անվարության դրսևորումները։ Բուհերի և մյուս ուսումնական հաստատությունների դասատուները պետք է միշտ խորհեն յուրաքանչյուր քայլի դաստիարակչական հետևանքի մասին,



բարձր պահեն իրենց հեղինակությունը սովորող երիտասարդության աչքում։ Այդ հարցերը պետք է մշտապես գտնվեն ուսումնական հաստատությունների կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում», ասել է Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Ա. Ալիևը՝ 1973 թ. ապրիլին կայացած կուսակցական ակտիվի ժողովում։ Հենց դրա համար պրոֆեսորների ու դասախոսների շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի հարցերը պարբերաբար քննարկվում են կուսշրջկոմների բյուրոների, կուսկազմակերպությունների նիստերում, ուսումնական հաստատությունների կուսժողովներում։

Ուսումնական հաստատությունների կուսկոմիտեները, ռեկտորատների, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների հետ միասին, մշակում և իրականացնում են գաղափարական-քաղաքական աշխատանքի հեռանկարային կոմպլեքսային պլաններ, որոնց նպատակն է՝ ապահովել ուսման հետ դաստիարակության սերտ կապը, բոլոր ամբիոնների ու դասատուների ակտիվ մասնակցությունը ժողովրդական տնտեսության ապագա մասնագետների բարոյական կերպարի, աշխարհայացքի ձևավորման պրոցեսին։

Ղեկավար կադրերի դաստիարակության և ուսուցման, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացման զգալի փորձ է կուտակել Շահումյանի կուսշրջկոմը։ Այստեղ մշակվել է կուսակցական ակտիվի, ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարների ուսուցման համակարգ։ Որպես դրական փաստ, կարելի է նշել այն, որ գիտա-պրակտիկ և տեսական կոնֆերանսներում մշակվում են կոնկրետ հանձնարարականներ։ Կուսակցական ցանցի և տնտեսագիտական կրթության պրոպագանդիստները, ժողովրդական համալսարանների ռեկտորները հիմնականում խոշոր ձեռնարկությունների դիրեկտորներ են։ Նարիմանովի կուսշրջկոմը հասել է այն բանին, որ շրջանի ղեկավար աշխատողների մեծամասնությունը կամ ընդգրկված է ուսուցման տարբեր ձևերում, կամ պրոպագանդիստ է։ Հոկտեմբերյանի կուսշրջկոմը, հաշվի առնելով շրջանի ղեկավար կադրերի կազմի բնորոշ առանձնահատկությունը, մշակել է գործնական միջոցառումներ՝ բուհերի, գիտահետազոտական և նախագծային ինստիտուտների տեսական և մեթոդոլոգիական սեմինարների գործունեությունը բարելավելու, պարապմունքների բովանդակությունը հարստացնելու համար։ Այդ կազմակերպություններում գործում է 93 տեսական և 7 մեթոդոլոգիական սեմինար, որտեղ ընդգրկված է ավելի քան երեք հազար մարդ։ Միայն մասնագիտական ուսումնական հաստատությունների ուսուցիչների համար գործում է 65 տեսական սեմինար, որտեղ ուսումնասիրում են երիտասարդության կոմունիստական և գիտա-աթեիստական դաստիարակության հարցեր։

Լենինյան շրջանում գործում է կուսակցական և հասարակական ակտիվի դպրոցը, որի պարապմունքներն անցկացվում են ամիսը մեկ անգամ։ Այստեղ սովորում են կուսկազմակերպությունների քարտուղարներ, արհմիության կոմիտեների և ժողովրդական վերահսկողության խմբերի նախագահներ։ Պարապմունքները վարում են քաղաքի առաջատար դասախոսներն ու գիտնականները, քաղաքային ու հանրապետական կազմակերպությունների ղեկավար աշխատողները։

Կենսագործելով «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ քաղաքի կուսկազմակերպությունները զգալի չափով ուժեղացրել են ուշադրությունը ղեկավար աշխատողների տնտեսագիտական կրթության նկատմամբ։ Տնտեսագիտական կրթությունը լայն հնարավորություններ է ընձեռում ուսումնասիրվող նյութը կյանքի հետ, հնգամյակի որոշիչ տարում արտադրական կոլեկտիվների կողմից իրականացվող պրակտիկ միջոցառումների հետ անմիջականորեն կապելու համար։ Քաղկոմին կից շարունակում է գործել արտադրության կազմակերպիչների համաքաղաքային դպրոցը, որտեղ ուսանում են ձեռնարկությունների դիրեկտորները, նրանց տեղակալները և գլխավոր ինժեներները։ Նրանք ուսումնասիրում են Վ. Ի. Լենինի աշխատությունները, տնտեսական շինարարության, կուսակցա-

կան տնտեսական քաղաքականության հրատապ պրոբլեմների վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը:

Տեսական պրոբլեմների քննարկումն ամրապնդվում է արտադրության կառավարման, ձեռնարկություններում սարքավորումների, նոր տեխնիկայի, հումքի ու էլեկտրաէներգիայի օգտագործման փաստացի նյութերի վերլուծությամբ: Ուսուցման ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ տարվա վերջում ունկնդիրները գրեցին և պաշտպանեցին կուրսային աշխատանքներ: Անցած տարի, օրինակ, կուրսային աշխատանքի թեման էր «Արտադրության արդյունավետության բարձրացման ուղիները»: Յուրաքանչյուր կուրսային աշխատանք հագեցած էր տվյալ ունկնդրի ղեկավարած ձեռնարկության փաստերով, տնտեսական գործունեության վերլուծությամբ, պրակտիկ եզրակացություններով: Դպրոցը ղեկավարում է Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար Կ. Վ. Շչերբակովը, տնտեսագիտական սեկցիան՝ քաղկոմի դասախոսական խմբի ղեկավար, պրոֆեսոր Ա. Մ. Ալիբեկովան:

Ազիզբեկովի կուսշրջկոմին կից ստեղծվել է տնտեսագիտական լեկտորիում, որի ունկնդիրներն են արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի ձեռնարկությունների ղեկավարներն ու առաջատար մասնագետները: Լեկտորիումի աշխատանքին մեծ օգնություն է ցույց տալիս Ադրբեջանի գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտի կուսկազմակերպությունը: Նրա մասնակցությամբ մշակվել է զեկուցումների ու դասախոսությունների, գիտա-պրակտիկ կոնֆերանսների թեմատիկան, հրապարակվել է «Ունկնդրի հուշատետր»: Ունկնդիրների առջև հանդես են եկել գիտնական-տնտեսագետները, շրջանի ղեկավար աշխատողները:

Բաքվի աշխատավորները հայրենասիրական մեծ թափով պայքար են ծավալել իններորդ հնգամյակի որոշիչ տարվա պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների հետևողական կատարման համար, խանդավառությամբ կենսագործում են տնտեսական ու սոցիալական առաջընթացի վերաբերյալ կուսակցության մշակած հոյակապ ծրագիրը: Այդ խնդիրների անհապաղ լուծման համար անհրաժեշտ է, որ կոմունիստ ղեկավարը խորությամբ ու հետևողականորեն ուսումնասիրի մարքս-լենինյան տեսությունը, կոմունիստական գաղափարախոսությունը:

Կադրերի քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը կազմակերպելիս՝ մեր ելակետը ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի հայտնած այն միտքն է, որ կուսակցության գաղափարական-դաստիարակչական ողջ աշխատանքի նպատակն է՝ աշխատավորական լայն մասսաների մեջ ձևավորել կոմունիստական աշխարհայացք, նրանց դաստիարակել մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով:

Այդ պահանջներից ելնելով՝ կուսակցության Բաքվի քաղկոմը և շրջկոմները կազմակերպում են ղեկավար կադրերի քաղաքական և տնտեսագիտական ուսուցումը: Ինչպես և նախկինում, մենք կարևոր ուշադրություն ենք նվիրում Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության, ՍՄԿԿ XXIV համագումարի և նրան հաջորդած պլենումների նյութերի ուսումնասիրությանը:

Քաղաքի կուսկազմակերպության քաղաքական, կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական ողջ գործունեությունը ներկայումս ուղղված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների անշեղ կենսագործմանը, կադրերի մարքս-լենինյան և տնտեսագիտական կրթության արդյունավետության բարձրացմանն ու ներգործունության ուժեղացմանը: Այդ ամենը մենք ծառայեցնում ենք իններորդ հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում մեր քաղաքի առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծմանը:



# ՊԵԿԻՆԻ ՄԵԾԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՐՍԸ ԵՎ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԵՎՐՈՊԱՆ

ՅՈՒ. ԱԳՐԱՆՈՎ

ՎԵՐՋԻՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՍ նշանակալի փոփոխություններ տեղի ունեցան արևմտաեվրոպական երկրների նկատմամբ Պեկինի վարած քաղաքականության մեջ: Իմպերիալիստական պետությունների հետ այսպես կոչված «անհրաժեշտ կոմպրոմիսների» վերաբերյալ ՉԿԿ X համագումարում (1973 թ. օգոստոս) Չժոու Էն-լայի առաջ քաշած ֆորմուլան, ըստ էության, նշանակում է մաոիստների ձգտումը՝ «տեսական բազա» ստեղծել հակասովետական, հակասոցիալիստական հիմքի վրա ամենառեակցիոն ուժերի հետ բլոկ կազմելու իրենց կուրսի համար:

Ինչպես հայտնի է, 60-ական թվականների սկզբից ՉԿԿ-ի ղեկավարությունը քաղաքական լայն պայքար է ծավալել ՍՄԿԿ-ի և համաշխարհային կոմունիստական շարժման դեմ: Առանձնապես կատաղի հարձակումների էր ենթարկվում խաղաղ գոյակցության կուրսը, որը մաոիստները որակում էին ոչ այլ կերպ, քան «սոցիալ-ռեֆորմիզմ» և «սոցիալ-պացիֆիզմ»: Ընդսմին, մաոիստները բարձրաձայն հայտարարում էին, որ սկզբունքորեն չի կարելի թույլ տալ որևէ համաձայնություն կապիտալիստական երկրների հետ և որ անհրաժեշտ է ուժեղացնել պայքարը իմպերիալիզմի դեմ: Սակայն հակաիմպերիալիստական աղմկոտ կամպանիաները անհանգստություն չէին առաջացնում Արևմուտքում, քանի որ առաջատար կապիտալիստական երկրներում իրենց հաշիվ էին տալիս, որ այդ «պայքարը» դատարկ խոսք է, կամ, ինչպես իրենք՝ չին ղեկավարներն են սիրում ասել՝ «թղթային» բնույթ է կրում:

Հակառակ համաշխարհային ռեակցիայի հույսերին, մաոիստներին չհաջողվեց միմյանցից անջատել սոցիալիստական համագործակցության երկրները և խախտել նրանց համաձայնեցված գիծը միջազգային հարցերում: Պեկինը ձախողվեց նաև միջազգային կոմունիստական շարժմանը հակալենինյան պլատֆորմ պարտադրելու իր փորձերում: Նրան չհաջողվեց նաև ազգային ազատագրական պայքարը ծառայեցնել իր նպատակներին, այն ուղղել հակասովետական հունով:

Համոզվելով իրենց «առանձնահատուկ գծի» սնանկացման և համաշխարհային կոմունիստական շարժման գաղափարական հիմքերը խարխլելու անհնարինության մեջ, չին ղեկավարներն սկսեցին ավելի շատ հույսերը դնել ռեակցիոն իմպերիալիստական շրջանների վրա, սոցիալիզմի ուժերի միջազգային ազդեցության աճի դեմ մղած պայքարում նրանց համարելով պարտնյորներ: Ըստ որում, չին ղեկավարները ձգտում են իրենց հեգեմոնիստական նպատակների համար օգտագործել իմպերիալիստական բուրժուազիայի հակասովետական, հակասոցիալիստական նկրտումները:

Այդ նպատակին է ուղղված, մասնավորապես, նաև Պեկինի քաղաքականությունը Արևմտյան Եվրոպայում: «Իմպերիալիզմի ծայրահեղ ռեակցիոն ուժերը և մաոիստական ղեկավարությունը,— նշում է չեխոսլովակյան «Ռուդե Պրավո» թերթը,— լավ են հասկանում միմյանց: Այդ բանը արտահայտվում է Եվրոպայում և ամբողջ աշխարհում խաղաղության ու առաջադիմության դեմ նրանց կոորդինացված գործողություններում» ("Rude Pravo„ 17 Ledna 1974):

Պեկինի պլաններն այժմ ուղղված են բոլոր միջոցներով Եվրոպայում իրադրությունը բարդացնելուն, «սառը պատերազմի» ժամանակները վերականգնելուն: Այդ նպատակով մաոիստները ձգտում են առավելագույն չափով դժվարացնել եվրոպական արմատական պրոբլեմների լուծումը և բլոկ են կազմում այն ուժերի հետ, ովքեր խոչընդոտներ են հարուցում անվտանգության համաեվրոպական սիստեմ ստեղծելու ճանապարհին:

□

ՎԵՐՋԻՆ ԵՐԿՈՒ-ԵՐԵՔ ՏԱՐՈՒՄ Չինաստանը արագացրել է դիվանագիտական հարաբերությունների հաստատումը արևմտաեվրոպական կապիտալիստական երկրների հետ: Առ այսօր Պեկինը պաշտոնական հարաբերություններ է հաստատել մայրցամաքի գրեթե բոլոր երկրների հետ:

Տարբեր երկրների միջև հարաբերությունների զարգացումը ինքնին, իհարկե, միանգամայն օրինաչափ պրոցես է: Սակայն արևմտաեվրոպական երկրների հետ կապերի ընդլայնումը չինական ղեկավարները օգտագործում են ոչ թե խաղաղությունն ու միջազգային անվտանգությունն ամրապնդելու, այլ, ամենից առաջ, Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների խաղաղասիրական քաղաքականության դեմ պայքարը ուժեղացնելու համար: Եվրոպայում Պեկինի վարած քաղաքականության մեջ ուշադրություն է գրավում երկու մոմենտ. մի կողմից՝ չինական լիդերների նահանջը դասակարգային դիրքերից, իսկ մյուս կողմից՝ այդ մայրցամաքում լարվածության մեղմացման պրոցեսը խափանելու ձգտումը: Նման գործունեությունը վնաս է հասցնում Արևմտյան Եվրոպայի երկրների առաջադեմ ուժերին: Դրա վտանգավորությունն սկսում են գիտակցել նաև այդ պետությունների կառավարող շրջանների զգաստ մտածող գործիչները:

Պեկինը ցանկանում է Արևմտյան Եվրոպայում տեսնել մի ուժ, որը կարողանար քաղաքական ու ռազմական ճնշում գործադրել ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների վրա: Չինաստանի նպատակն է, ինչպես անկեղծորեն պարզաբանեց Չժոու Էն-լայը արևմտաեվրոպական գործիչների հետ ունեցած զրույցներում, խրախուսել «միավորված, անկախ Եվրոպայի» ստեղծումը, այն հաշվով, որ «այդ երկրների ուժը ծառայի որպես Արևմուտքում Սովետական Միությանը զսպող գործոն»:

Չինական ղեկավարությունն այդ գիծը ակտիվորեն կենսագործում է «երկու գերտերությունների» դեմ պայքարի մասին խոսակցությունների քողի տակ: Պեկինի համար այդ կոնցեպցիան ծառայում է ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության երկրների խաղաղասիրական քաղաքականության դեմ իրենց ելույթները արդարացնելու, արևմտաեվրոպական երկրներում Սովետական Միության նկատմամբ թշնամանք ու կասկածամտություն սերմանելու համար:

Չնայած խոսքով չինական լիդերները հանդես են գալիս «երկու գերտերություններից» արևմտաեվրոպական պետությունների պաշտպանությամբ, գործով նրանք հարձակվում են միայն Սովետական Միության վրա, պնդելով, թե իբր հենց ՍՍՀՄ-ն է սպառնում Արևմտյան Եվրոպային: Այս դեպքում էլ նրանք պայքարում են եվրոպական մայրցամաքում ամերիկյան ռազմական ներկայությունը պահպանելու և Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ Արևմտյան Եվրոպայի ռազմական դաշինքը ուժեղացնելու օգտին: Չժոու Էն-լայը 1972 թ. հուլիսին ամերիկյան սենատորներ Հ. Բոգսի և Դ. Ֆորդի հետ ունեցած զրույցում անկեղծորեն հասկացրեց, թե Պեկինը կցանկանար, որ ամերիկյան զինվորական ուժերը մնային Արևմտյան Եվրոպայում: Չինական պրեմիերը անհապաղ պաշտպանեց ԱՄՆ-ի առաջարկությունները «ատլանտյան նոր խար-



տիայի» մասին, 1973 թ. հունիսին հայտարարելով, թե այդ պլանի դեմ առարկելու ոչ մի պատճառ չի տեսնում, եթե դա ուղղված է Սովետական Միությանը «զսպելու» ձգտող ուժերի միավորմանը: Միևնույն ժամանակ «երկու գերտերությունների» կոնցեպցիան Չինաստանին չի խանգարում «բարելավելու» հարաբերությունները ԱՄՆ-ի հետ, որի մասին հայտարարվեց ՉԿԿ X համագումարում:

Դիմելով հակասովետական զրպարտանքի, մաոիստները մտադիր են ազդել արևմտաեվրոպական պետությունների հետ ՍՍՀՄ-ի ունեցած հարաբերությունների վիճակի վրա, արգելակել դրանց զարգացումը և խարխլել բարիդրացիական համագործակցությունը նրանց միջև: Նրանք վախեցնում են արևմտաեվրոպական երկրներին, պնդելով, թե իբր եվրոպական անվտանգության սիստեմ ստեղծելու վերաբերյալ սոցիալիստական երկրների առաջարկությունները ընդունելու դեպքում ՍՍՀՄ-ը իր «հեգեմոնիան» կհաստատի Եվրոպայում: Եվրոպական մայրցամաքում Սովետական Միության վարած քաղաքականության դեմ նման չարամիտ հարձակումներով լի է, օրինակ, Սինխուա գործակալության 1974 թ. հունվարի 20-ի հոդվածը: ՍՍՀՄ-ը, ասված է այդ հոդվածում, նպատակ ունի «բթացնել Արևմտյան Եվրոպայի երկրների զգոնությունը, տարանջատել դրանց, ԱՄՆ-ին դուրս մղել այնտեղից և այդպիսով իր անբաժան վերահսկողության տակ դնել ամբողջ Եվրոպան»:

Այս ամենը ցույց է տալիս, որ եվրոպական ռեակցիան և մաոիստները, ինչպես ընդգծվում էր «Ռուդե Պրավո»-ի վերոհիշյալ հոդվածում, «համատեղ ջանքերով վերակենդանացրին «սառը պատերազմի» ամենագլխավոր լոզունգներից մեկը՝ կոմունիստական վտանգի մասին լոզունգը: Նրանք միաձայն խոսում են այն մասին, թե իբր Մոսկվան ուզում է տեսնել խաղաղ ու հանգիստ Եվրոպա, որպեսզի կազմալուծի Արևմուտքի համատեղ պաշտպանության ձրգտումը, ցրի Հյուսիսատլանտյան պակտը. դրա շնորհիվ, իբր, Սովետական Միությունը տիրապետություն ձեռք կբերի ամբողջ Եվրոպայում»:

Դժվար չէ տեսնել պեկինյան պրոպագանդայի պնդումների ամբողջ կեղծիքն ու սուտը: Բանն այն է, որ Եվրոպայում հարաբերությունների այնպիսի սիստեմի ստեղծումը, որին ձգտում են ՍՍՀՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները, ոչ միայն չի ոտնահարում որևէ երկրի շահերը, այլ, ընդհակառակը, ենթադրում է անցում «սառը պատերազմից» խաղաղ գոյակցության, դիմակայությունից՝ բարիդրացիական համագործակցության— փոխադարձ շահավետության և հավասար անվտանգության հիմքի վրա:

Չինական ղեկավարները մտադիր են իրենց մեծապետական շահերի համար օգտագործել Արևմուտքի որոշ շրջանների քաղաքական զիգզագները. շրջաններ, որոնք ձգտում են պահպանել Եվրոպայի պառակտումը միմյանց հակադիր ռազմա-քաղաքական խմբավորումների: Մաոիստները չեն թաքցնում Եվրոպայում լարվածության մեղմացումը կասեցնելու համար ՆԱՏՕ-ի և ԵՏՀ-ի ռեակցիոն շրջաններն օգտագործելու իրենց ցանկությունը: Պեկինն արտահայտվում է այն բանի օգտին, որ արևմտաեվրոպական երկրներում ինտեգրացման պրոցեսներն ընդգրկեն ո՛չ միայն տնտեսական բնագավառը, այլև քաղաքական ու առանձնապես ռազմական ոլորտները և «ընդհանուր շուկան» վերածեն ռազմա-քաղաքական բլոկի, որը հակադրված լինի սոցիալիստական երկրներին: Անցյալ տարվա հունվարին Չժոու Էն-լայը հայտարարում էր, թե չինական կառավարությունը ցանկանում է, որ Արևմտյան Եվրոպայում ընդլայնվի ինտեգրացման շարժումը, էկոնոմիկայի բնագավառից տարածվելով նաև քաղաքականության և պաշտպանության վրա (տե՛ս «Le Monde», 11 janvier, 1973):

1973 թ. հունիսին ՉԺՀ-ի արտաքին գործերի մինիստր Ցզի Պեն-ֆեյը Փարիզում ճամարտակում էր այն մասին, որ Չինաստանը պաշտպանում է «արևմտաեվրոպական երկրների՝ համատեղ հզորության ձգտումը»:

Չինական ղեկավարների նման քաղաքականությունը, որն ուղղված է Եվրոպայում ռազմական ու քաղաքական նոր դաշինք ստեղծելու փորձերը պաշտպանելու նպատակին, խիստ քննադատության ենթարկվեց Բրյուսելի՝ եվրոպա-

կան կապիտալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների հունվարյան (1974 թ.) խորհրդակցությունում: «Այս կապակցությամբ,— խորհրդակցությունում հանդես գալով, ասաց ՖԿԿ-ի գլխավոր քարտուղար Ժ. Մարշեն,— մեր պատվիրակությունը չի կարող չհայտարարել, որ իմպերիալիստական խոշոր բուրժուազիայի այս նախաձեռնության պաշտպանումը Չինաստանի կոմունիստական կուսակցության ներկայիս ղեկավարների կողմից վառ կերպով ցուցադրում է նրանց նահանջը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից»:

Պեկինի համար միանգամայն բնութագրական է նրա վերաբերմունքը ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի նկատմամբ: Որտեղ միայն հնարավոր է, չինական ղեկավարները արտահայտում են իրենց շահագրգռվածությունը իմպերիալիստական այդ բլոկի ամրապնդման գործում: 1973 թ. հոկտեմբերին Չժոու Էն-լայը ամերիկյան ժուռնալիստ Սուլցբերգերի հետ ունեցած հարցազրույցում բացահայտորեն խոստովանեց, թե «ցանկանում է, որ ՆԱՏՕ-ն ու Արևմտյան Եվրոպան մնան ուժեղ, թեև սկզբնապես դեմ է եղել այդ դաշինքին», ընդսմին, ՆԱՏՕ-ն նա հայտարարեց «պաշտպանողական դաշինք՝ ընդդեմ ագրեսիվ դարձած Վարշավայի պայմանագրի» („The New York Times„, October 29, 1973):

Սակայն անհեռանկար են մաոիստների և ՆԱՏՕ-ի շրջանների առավել անզուսպ ներկայացուցիչների մանևրները, որոնք ուղղված են Եվրոպայում ագրեսիվ բլոկներն ամրապնդելու և սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու նպատակին: Դրանք խիստ հակասում են եվրոպական ժողովուրդների շահերին, որոնք ձգտում են բազմակողմանի համագործակցություն և կայուն խաղաղություն ու անվտանգություն հաստատել մայրցամաքում:

□

ԵՎՐՈՊԱԿԱՆ ՄԱՅՐՑԱՄԱՔՈՒՄ ձեռք բերված դրական տեղաշարժերը վարկաբեկելու նպատակով մղած իրենց պրոպագանդայում մաոիստները անդադար կրկնում են, թե իբր մեղմացումը «ժամանակավոր», «մակերեսային», «պատրանքային» երևույթ է: Ինչպես նշում էր բելգիական «Լիբր Բելժիկ» թերթը, արևմտաեվրոպական երկրների ներկայացուցիչների հետ չինական պաշտոնական գործիչների ունեցած հանդիպումների ժամանակ առաջինները ուշադրություն էին դարձնում, թե «չինացիները ինչպիսի համառությամբ էին ընդգծում լարվածության թուլացման «մակերեսային» բնույթը և պաշտպանում միավորման համար Եվրոպայի ջանքերը» („Libre Belgique„ 24 septembre, 1973): Հայտարարելով մեղմացման «մակերեսային» բնույթի մասին, մաոիստները բոլոր միջոցներով ձգտում են ստեղծել «վիթխարի անկարգությունների» իրադրություն, որը Չինաստանում սովորաբար հասկացվում է իբրև պատերազմ:

Եվրոպայում իրադրությունը բարդացնելու համար չինական ղեկավարությունը տարբեր էտապներում դիմում էր զանազան միջոցների, սակայն դրանց էությունը մնում էր անփոփոխ՝ բացասական վերաբերմունք եվրոպական պրոբլեմների լուծման նկատմամբ: Պեկինում կասկածամտորեն, համառությամբ ջանում են վերանայել երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունքները: Այդ նպատակով մաոիստները փորձում են ռևանշիստական տրամադրություններ բորբոքել Եվրոպայի ռեակցիոն որոշ ուժերի շրջանում, հանդես են գալիս այստեղ հաստատված պետական սահմանների անխախտության դեմ: ՉԺՀ-ի արտաքին գործերի մինիստր Ցզի Պեն-ֆեյը 1973 թ. հունիսին Լոնդոնում ասում էր, որ, «Թեև երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անցել է 28 տարի, երկրագնդի վրա դեռևս իշխում են խառնաշփոթություն և անկարգություն»:

Եվրոպական սահմանների անխախտությունը, որը արձանագրված է ԳՖՀ-ի հետ ՍՍՀՄ-ի, ԼԺՀ-ի, ԳԴՀ-ի և ՉՍՍՀ-ի կնքած պայմանագրերում, ինչպես նաև Արևմտյան Բեռլինի մասին քառակողմ համաձայնությամբ, ակնհայտորեն ձեռնտու չէ չինական ղեկավարներին: 1973 թ. մայիսին Չժոու Էն-լայը իր հարցազրույցներից մեկում պնդում էր, թե «երկրորդ համաշխարհային պատերազմը թողել է մի ամբողջ շարք պրոբլեմներ, որոնք հարկավոր է լուծել»:



Արևմտագերմանական կոնցեռնների ներկայացուցիչների հետ ունեցած զրույցում նա նույնիսկ եզրահանգեց, թե ինքը, իբր, «ճանաչում է միայն Քյոնիգսբերգը»: Պեկինի լիդերները, հայտարարելով եվրոպական սահմանների անիրավականության մասին, դրանով իսկ փորձում են տերիտորիալ ընդհարումներ հրահրել եվրոպական պետությունների միջև: Դժվար չէ տեսնել, թե մաոիստները Եվրոպայում ինչպիսի վտանգավոր ավանտյուրաների ոգեշնչողներ են: Չէ՞ որ ներկա պայմաններում նման «գաղափարներով» հանդգնում են հանդես գալ միայն ամենաասանձարձակ ռևանշիստներն ու ամենամոլի ռեակցիոներները:

Անհաջողության մատնվելով ԳՖՀ-ի հետ սոցիալիստական երկրների կնքած պայմանագրերը ձախողելու փորձերում, չինական ղեկավարները այժմ ապավինում են ուրիշ միջոցների, որոնց օգնությամբ հնարավոր կլիներ լարվածության օջախ ստեղծել Եվրոպայի կենտրոնում: Վերջին ժամանակներս նրանք առաջ են քաշել երկու Գերմանիաների գոյության «աննորմալության» թեզը: 1973 թ. նոյեմբերին Չժոու Էն-լայը հայտարարեց, որ Չինաստանը «պաշտպանում է գերմանական միասնություն ձեռք բերելու նպատակը» (Frankfurter Allgemeine, 24 November 1973):

Այսպիսով, Պեկինը համերաշխ է ԳՖՀ-ի ռեակցիոն շրջանների հետ, որոնք, ինչպես նշում էր «Ունզերե ցայտ» թերթը, «Գերմանիայի միասնության» ֆորմուլի օգնությամբ փորձում են «վերացնել սոցիալիստական ԳԴՀ-ը» և «ոչնչացնել սոցիալիզմը գերմանական հողում» („Unsere Zeit.“ 24 November 1973).

Չինական ղեկավարներն սպառազինվում են «միասնական գերմանական ազգի» և «գերմանական ժողովրդի վերամիավորման» մասին ռևանշիստական լոզունգներով: Չինական լիդերների նման գործունեությունն արժանի հակահարված է ստանում ԳԴՀ-ի, ինչպես նաև ԳՖՀ-ի առաջադեմ գործիչների կողմից: Ինչպես ընդգծեց ԳՄՍԿ-ի Կենտկոմի առաջին քարտուղար Է. Հոնեկերը, «Պեկինում ձայնակցում են այն մարդկանց, ովքեր կցանկանային «բաց պահել գերմանական հարցը», որպեսզի այն իբրև բռնկիչ օգտագործեն Եվրոպայում նոր կոնֆլիկտների համար: Պեկինը լարվածության թուլացման թշնամիների հետ հանդես է գալիս ձեռք-ձեռքի տված՝ սա խիստ ամոթալի փաստ է» («Պրավդա», 1973 թ. հոկտեմբերի 7):

Թույլ չտալ, որ վերջնականապես ամրապնդվեն երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունքները— այսպիսի նկատառումներով է թելադրված նաև Պեկինի մոտեցումը անվտանգության և համագործակցության համաեվրոպական խորհրդակցության հանդեպ, որը նրանք մեկնաբանում են որպես Արևմտյան Եվրոպան «պառակտելու» փորձ: Սկզբնական շրջանում չինական ղեկավարներն ամեն կերպ դիմադրում էին այդ խորհրդակցության գումարմանը: 1973 թ. մայիսին Չժոու Էն-լայը Ֆրանս պրեսի թղթակցի հետ ունեցած զրույցում հարցնում էր. «Իսկ ինչ վերաբերում է եվրոպական անվտանգությանը, ապա խորհրդակցությունը կլուծի՞ արդյոք պրոբլեմները, կկայանա՞ արդյոք այն»: ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVII նստաշրջանում չինական պատվիրակության ղեկավար Ցյաո Գուան-խուան առաջիկա համաժողովն անվանեց «Եվրոպայի անապահովության խորհրդակցություն» («Ժենմին ժիբաո», 1972 թ. հոկտեմբերի 5):

Այժմ, երբ համաեվրոպական խորհրդակցությունն արդեն թևակոխել է երկրորդ փուլը, չինական ղեկավարներն ընթացքից վերանայում են իրենց դիրքերը և ջանքերն ուղղում նրա աշխատանքի նպատակներն ու բովանդակությունը աղավաղելու գործին: Պեկինի պրոպագանդան ամեն կերպ աշխատում է շեշտել այն պրոբլեմները, որոնց մասին արտահայտվում են տարբեր կարծիքներ և, ըստ ամենայնի, պաշտպանում է առանձին ներկայացուցիչների պահանջները, որոնք, ըստ էության, նշանակում են ուրիշ պետությունների ներքին գործերին միջամտելու փորձեր: Միաժամանակ նրանք լռում են այն մասին, որ խորհրդակցության ընթացքում արդեն երևան եկան հուսադրող արդյունքներ, իսկ ամենագլխավորը՝ տարբեր երկրների շահագրգռվածությունը

միջազգային լարվածության մեղմացման, Արևելքի և Արևմուտքի միջև կոնս-
տրուկտիվ դիալոգի գործում։
Չինական ղեկավարության անսքող դայրույթն առաջացրին Կենտրո-
նական Եվրոպայում զինված ուժերը և սպառազինությունները կրճա-
տելու վերաբերյալ բանակցությունները։ Սկզբում Պեկինը արտահայտվում էր
այդ հարցի շուրջ բանակցությունների բուն գաղափարի դեմ։ Բա՛յց, ինչպես
հայտնի է, նման «խորհուրդները» ազդեցություն չունեցան։ Այժմ պեկինյան
ղեկավարությունը փորձում է վարկաբեկել սոցիալիստական երկրների առա-
ջարկությունները Վիեննայում տեղի ունեցող բանակցություններում։
Բայց այստեղ ևս մաոիստական պրոպագանդան կառուցվում է կեղծ փաս-
տարկների վրա։ Ինչպես հայտնի է, Սովետական Միությունը եղբայրական
մյուս պետությունների հետ միասին երկար ժամանակ հետևողական պայքար է
մղում Եվրոպայում զորքերը և սպառազինությունները կրճատելու համար,
նպատակ ունենալով ապահովել անվտանգությունը այդ մայրցամաքում։ Սո-
ցիալիստական համագործակցության երկրները բազմիցս առաջարկել են
օտարերկրյա բոլոր զորքերը դուրս բերել օտար տերիտորիաներից, կրճատել
գերմանական երկու պետությունների զինված ուժերի քանակը, Կենտրոնական
Եվրոպայում ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի պետությունների տրամա-
դրության տակ եղած ազգային և օտարերկրյա զինված ուժերի թվաքանակն ու
սպառազինությունները։ Պարզ է, որ այդպիսի կրճատումը պետք է կատարվի
կողմերի հավասար անվտանգության սկզբունքը պահպանելու հիման վրա։
Չինական պրոպագանդան, խեղաթյուրելով սոցիալիստական երկրների
առաջարկությունների էությունը, պնդում է, թե իբր զինված ուժերի և սպառա-
զինությունների կրճատումը Կենտրոնական Եվրոպայում վնաս կհասցնի արև-
մրտյան երկրներին, որոնք, իբր, «բավականաչափ պոտենցիալ չունեն պաշտ-
պանության համար»։ Հանդես գալով ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVIII
նստաշրջանում, չինական պատվիրակության ղեկավարը պնդում էր, թե «իրա-
կան պրոբլեմը», որին բախվում են երկրները, «ոչ թե զինաթափումն է, այլ
նրանց համար անհրաժեշտ ինքնուրույն պաշտպանողական պոտենցիալի ամ-
րապնդումը» («Ժենմին ժիբաո», 1973 թ. հոկտեմբերի 3)։ Չինական պաշտո-
նական անձանց նման հայտարարությունները չի կարելի գնահատել այլ կերպ,
քան արևմտաեվրոպական երկրներին սպառազինությունների մրցավազքի ծա-
վալման դրդելու փորձեր։
Չնայած այն բոլոր նուրբ եղանակներին, որոնց դիմում են չինական լի-
դերները Եվրոպայի քաղաքական կլիման թունավորելու համար, նրանց չի հա-
ջողվում շոշափելի արդյունքների հասնել այդ ուղղությամբ։ Արևմտյան երկր-
ների ներկայացուցիչները, ամենից առաջ նրանք, ովքեր կանգնած են ռեալիս-
տական դիրքերում, ո՛չ միայն չեն պաշտպանում միջազգային լարվածությունը
սրելու մաոիստական կուրսը, այլև ստիպված են ամեն կերպ իրենց հեռու պա-
հել դրանից։ Չինաստան կատարած ուղևորությունից հետո Ֆրանսիայի պրեզի-
դենտ Ժ. Պոմպիդուն, 1973 թ. սեպտեմբերի 27-ին հանդես գալով մամուլի կոն-
ֆերանսում, հայտարարեց, թե «լարվածության թուլացման և համաձայնու-
թյան քաղաքականությունը Արևմտյան Եվրոպայի և Արևելյան Եվրոպայի,
հատկապես Ֆրանսիայի և Սովետական Միության միջև, պետք է շարունակվի»,
որ «այդ համաձայնության զարգացումը համապատասխանում է Եվրոպայի եր-
կու կողմերի ընդհանուր շահերին, Սովետական Միության և Ֆրանսիայի ընդ-
հանուր շահերին, ամբողջ աշխարհի ընդհանուր շահերին»։ Կանադայի պրե-
միեր-մինիստր Պ. Տրյուդոն 1973 թ. հոկտեմբերի 11-ին Պեկինում կազմա-
կերպված ընդունելության ժամանակ հայտարարեց. «Մենք ապավինում ենք
մարդու առողջ բանականությանը և մեծ տերությունների ղեկավարների կող-
մից այն բանի գիտակցմանը, որ խաղաղությունն այս մոլորակի վրա անբա-
ժանելի է, որ միջուկային աղետն անհնար է վերահսկել, և որ անվտանգու-
թյունն ապահովվում է ոչ թե ագրեսիվ գործունեությամբ, այլ դրա վերաց-
մամբ»։
Դրա հետ մեկտեղ չի կարելի չտեսնել, որ Արևմտյան Եվրոպայում կան



որոշակի շրջաններ, որոնք ցանկանում են քաղաքական օգուտներ քաղել հա-
կասովետական հիմքի վրա մաոիստների հետ կնքված ալյանսից, խարխլել ու
թուլացնել սոցիալիզմի միջազգային դիրքերը։ Այդ նպատակով արևմտյան
որոշ գործիչներ ձգտում են Պեկինի ղեկավարության դիրքն օգտագործել իրենց
շահերի համար՝ է՛լ ավելի բորբոքելու հակասովետական տրամադրություննե-
րը։ Ակնհայտ է նման քաղաքականության անհեռատեսությունը, քանի որ այն
գործնականում միայն խրախուսում է Պեկինի վտանգավոր կուրսը։

□

ԻՐ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ անսկզբունքայնությունը Պեկինը ձգտում է քո-
ղարկել՝ ուժեղացնելով հակասովետական կամպանիան, մասնավորապես հեր-
յուրանքներ տարածելով իբր «հյուսիսից Չինաստանին սպառնացող վտանգի»
գոյության մասին։ «Սովետական սպառնալիքի» թեման արևմտյան երկրների
ներկայացուցիչների հետ չինական ղեկավարների բոլոր բանակցություններում
քննարկման անփոփոխ բաղադրատարրն է և նրանց կողմից ներկայացվում է
իբրև Չինաստանի կենտրոնական պրոբլեմը ներկա պահին։ Այսպես, 1974 թ.
հունվարին, Թուրքական ինֆորմացիոն գործակալության հաղորդագրություննե-
րի համաձայն, ՉԺՀ-ի արտաքին գործերի մինիստրի տեղակալ Խե Ինը հենց
այդ պատրվակով բացատրեց «պատերազմի պատրաստվելու» անհրաժեշտու-
թյունը Չինաստանի համար։
Հակասովետական հերյուրանքներ տարածելու համար մաոիստներն ավելի
լայնորեն են դիմում աջ ուղղության բուրժուական պրոպագանդայի ծառայու-
թյուններին, շպրինգերյան մամուլի և ռեակցիոն այլ հրատարակությունների
հետ միասին կազմելով մի յուրատեսակ պրոպագանդիստական բլոկ։ Ինչպես
նշում էր ավստրիական «Կուրիեր» թերթը, «ՉԺՀ-ը սկսել է բարեկամներ ու
դաշնակիցներ որոնել այնտեղ, ուր, կարծես, գաղափարախոսությունը պետք է
լուրջ խոչընդոտներ ստեղծեր դրա համար» (Kurier, 9 Marz 1973)։
Չինական մամուլն ամբողջովին փոխ է առել առավել ռեակցիոն տրա-
մադրված իմպերիալիստական շրջանների փաստարկները և շատ հարցերում
հանդես է գալիս նրանց հետ ընդհանուր դիրքերից։ «Սովետական սպառնալի-
քի» մասին «սառը պատերազմի» ջատագովների ամեն մի արտահայտություն
բարյացակամ արձագանք է գտնում և լայնորեն լուսաբանվում չինական մա-
մուլում։ Միևնույն ժամանակ «հյուսիսի սպառնալիքի» մասին Պեկինի հերյու-
րանքներն անմիջապես տարածվում են Արևմուտքում՝ բուրժուական պրոպա-
գանդայի օրգանների կողմից։ «Փորձն» ուսումնասիրելու համար արևմտաեվրո-
պական երկրներն են ուղարկվում չինական ժուռնալիստների բազմաթիվ խմբ-
եր, իսկ Պեկինում թաքստոց են գտնում Արևմուտքի որոշ հակասովետա-
կան թղթակիցներ, որոնք ժամանակին արտաքսված են եղել ՍՍՀՄ-ից։
Մաոիստների հակասովետական ամբողջ զրպարտանքն անմիջապես ջրի
երես է դուրս գալիս, հենց որ դիմում ենք իրերի կոնկրետ վիճակին։ Սովետա-
կան Միությունը երբեք հանդես չի եկել և հանդես չի գալիս լարվածության
թուլացումը միայն եվրոպական մայրցամաքով սահմանափակելու դիրքերից,
այլ, ընդհակառակը, ձգտում է դրական երևույթները տարածել նաև աշխար-
հի մյուս շրջանների վրա։ Եվրոպայում անվտանգության և համագործակցու-
թյան հարցերի վերաբերյալ խորհրդակցություն հրավիրելու մասին առաջար-
կությունից բացի, Սովետական Միությունն առաջ քաշեց նաև Ասիայում կոլեկ-
տիվ անվտանգություն ստեղծելու գաղափարը։ Սակայն Պեկինի լիդերները
հանդես են գալիս ինչպես եվրոպական կարգավորման, այնպես էլ Ասիայի
կոլեկտիվ անվտանգության գաղափարի դեմ, այն հայտարարելով ՉԺՀ-ի շուրջը
«շրջապատման օղակ» ստեղծելու փորձ։
Այս բոլոր պնդումների մտացածին լինելն ակնհայտ է։ Սկսած 1969 թ.
սովետական կառավարությունը բազմիցս առաջարկել է ՉԺՀ-ին՝ պայմանագիր
կնքել միմյանց դեմ ուժ չկիրառելու և չհարձակվելու մասին։ 1973 թ. հունի-
սին Սովետական Միությունը հանդես բերեց նոր նախաձեռնություն, առաջար-
կելով ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի միջև կնքել չհարձակվելու պայմանագիր, որի տեքս-

*տում նախատեսված էին կողմերի պարտավորությունները— ցամաքում, ծո-
վում և օդում զենքի ոչ մի տեսակով չհարձակվել միմյանց վրա, ինչպես նաև
չսպառնալ այդպիսի հարձակումով: Չինական ղեկավարությունը ո՛չ միայն
չպատասխանեց սովետական առաջարկություններին, այլև դրանք թաքցրեց
չին ժողովրդից:*

*Պարզ է, որ, մերժելով այդ բոլոր նախաձեռնությունները, որոնց նպատակն
էր բարիդրացիական հարաբերություններ հաստատել երկու երկրների մի-
ջև, Պեկինը ցուցադրում է իր ձգտումը՝ այսուհետև ևս շարունակելու մեծապե-
տական շովինիզմի, հակասովետիզմի, աշխարհի լարվածության շիկացման իր
քաղաքականությունը: Բնորոշ է, որ երբ միջազգային հասարակայնության աչ-
քում մերկացվեց Չինաստանի նկատմամբ «սովետական սպառնալիքի» մասին
առասպելը, մաոիստները դիմեցին զրպարտչական մի նոր եղանակի, պնդելով,
թե իբր, ՍՍՀՄ-ը «խաբուսիկ տպավորություն է ստեղծում Արևելքում, իսկ հար-
վածը հասցնում է Արևմուտքում» («Ժենմին ժիբաո», 1974 թ. հունվարի 1):*

*Այժմ հազիվ թե որևէ մեկը կասկածի, որ աշխարհում տեղի ունեցող դրա-
կան փոփոխություններին հակազդելու փորձերով է թելադրված նաև Չինաս-
տանի քաղաքականության ակտիվացումը Արևմտյան Եվրոպայում: «Չինական
ղեկավարների արդի քաղաքականությունը Եվրոպայում,— ընդգծում է «Այն-
հայթ» ամսագիրը,— նպատակ է հետապնդում դաշինք կնքել լարվածության
թուլացմանը թշնամի բոլոր հակակոմունիստական ուժերի հետ՝ կասեցնելու
համար արմատական շրջադարձը դեպի կայուն խաղաղությունը եվրոպական
մայրցամաքում և վերածնելու համար սառը պատերազմի իրադրությունը Եվ-
րոպայում: Սա է այդ քաղաքականության վտանգավոր և ավանտյուրիստա-
կան էությունը, որը դրանով իսկ հակասում է Եվրոպայի և ամբողջ աշխարհի
բոլոր խաղաղասեր ուժերի շահերին»* („Einheit„, 1973, N 6):

□

*ՀԱԿԱՍՈՎԵՏԻԶՄԻ ՈՒԺԵՂԱՑՈՒՄ և լարվածության շիկացում՝ սրանք են
մաոիստական ղեկավարության եվրոպական քաղաքականության հիմնական
ուղղությունները: Չինական լիդերները դա հակադրում են սոցիալիստական և
կապիտալիստական երկրների խաղաղ գոյակցությանն ու փոխշահավետ հա-
մագործակցությանը: Սակայն որքան ավելի են ուժեղանում դրական տեն-
դենցները միջազգային կյանքում և հետագա դրական տեղաշարժերը եվրոպա-
կան մայրցամաքում, այնքան ավելի ակնհայտ է դառնում Պեկինի մեծապե-
տական կուրսի սնանկությունը:*

*Եթե փորձենք ամփոփել Եվրոպայում Պեկինի լիդերների վարած հակասո-
վետական, հակասոցիալիստական քաղաքականության արդյունքները, ապա
դժվար չէ տեսնել, որ այն ձախողվում է. նրան չհաջողվեց ո՛չ խոչընդոտել հա-
մաեվրոպական խորհրդակցության հրավիրումը, ոչ էլ խանգարել Կենտրոնա-
կան Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման վերա-
բերյալ բանակցություններ սկսելուն ու եվրոպական անվտանգության և համա-
գործակցության ապահովման հետ կապված մյուս հարցերի լուծմանը: Դա
վկայում է, որ միանգամայն անհեռանկարային են մաոիստական ղեկավարու-
թյան քաղաքական հաշիվները՝ պահպանել «սառը պատերազմի» երևույթները
և վերածնել դիմակայությունը եվրոպական պետությունների միջև: Բանն այն
է, որ Եվրոպայում տեղի ունեցող պրոցեսները զարգանում են այնպիսի ուղղու-
թյամբ, որը հակադիր է ռեակցիոն ուժերին ու նրանց դաշնակից մաոիստ-
ներին և որը բնութագրվում է լարվածության թուլացմամբ և խաղաղության ու
անվտանգության ամրապնդմամբ:*

«Международная жизнь», 1974, № 3.

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*

## ԾՆՎԵԼ ԷՐ ԹՌՉԵԼՈՒ, ՍՈՂԱԼ ՉԷՐ ԿԱՐՈՂ

(ԻՆԵՍԱ ԱՐՄԱՆԴԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

*

Թախիծ կա ոսկեծամ, գեղեցիկ աղջնակի կանաչավուն, երազկոտ աչքերում: Չեռքին Տոլստոյի **Պատերազմ և խաղաղությունն** է: Նրա այնքա՜ն սիրած հերոսուհին՝ ըմբոստ, կենսախինդ Նատաշան, ամուսնացել և կնիկ է դարձել... Ասես ուժգին մտրակահարեցին նրան, և շատ վաղ նա հաստատ որոշեց՝ ինչ էլ լինի, երբեք միայն կին չըդառնալ...

Փարիզում է ծնվել Ելիզավետա Ֆեոդորովնան. հայրը՝ Թեոդոր Ստեֆանը, ֆրանսիական օպերայի աչքի ընկնող երգիչներից էր, կիսաֆրանսուհի, կիսաանգլուհի մայրը՝ դերասանուհի: Շատ շուտ է նա զրկվում ծնողներից, և երգի ու ֆրանսերենի ուսուցչուհի մորաքույրը նրան բերում է Մոսկվա, ուր անցնում է նրա զվարթ, անհոգ մանկությունը: Տնային լավ կրթություն ստացած աղջկա մայրենի լեզուները երեքն էին՝ ֆրանսերենը, անգլերենը, ռուսերենը: Նա օժտված էր և երաժշտական ունակություններով: Վեցամյա Ինեսան դաշնամուր էր նվագում, և ուսուցիչները մեծ ապագա էին խոստանում: Երաժշտությունն ուղեկցել է նրան ողջ կյանքում, իր ամենածանր խոհերն ու վշտերը միշտ էլ նա կիսել է դաշնամուրի հետ:

Տնային ուսուցչուհի էր Ինեսան տասնութ տարեկան հասակում, երբ ամուսնացավ Մոսկվայի առաջին գիլդիայի վաճառականի որդու՝ Ալեքսանդր Եվգենևիչ Արմանդի հետ: Ռուսացած ֆրանսիացի Արմանդներն ունեին մահուդագործական և ներկման ֆաբրիկաներ: Հարուստ, ունևոր կյանքն ապահովված էր նոր ընտանիքում, ուր այնպե՜ս ջերմորեն ընդունեցին ու միշտ էլ քնքշորեն սիրեցին իրենց մատաղահաս հարսին: Նորապսակները հաճախ էին լինում Պուշկինոյի իրենց կալվածքում. գյուղացիների երեխաների համար դպրոց կազմակերպեցին նրանք այդտեղ, ուր Ինեսան դաս էր տալիս:

Աշխատավորների խրճիթների ու աղմկալի տան ցնցող հակասություն: Մի կողմում անազատ աշխատանք, աղքատություն, քաղցած երեխաներ. իրավազրկություն, մյուս կողմում՝ առատություն, հարստություն, հղփացած երիտասարդություն, աշ-

խարհի ուժեղների կամայականություններ... Այդ ամենը խիստ ազդեց դյուրազգաց, տպավորվող տիկին Արմանդի վրա: «Ինչ էլ լիներ,— գրել է նա հետագայում իր աղջկան՝ Իննային,— ես օտար մարդ էի, որ ուրիշ մի տեղից մտել էի այդ ընտանիքը»: Տեսնելով աշխատավորների անօգնական ու անհուսալի վիճակը, խախտվում է ջերմ հավատացյալի աստվածապաշտությունը: Նա սկսում է ատել բարձրյալին: Նրան հուզում է հատկապես կնոջ ծանր, ստրկական վիճակը, դառը ճակատագիրը. կանանց առուծախ, այլասերվածություն և ամոթալի այլ երևույթներ, որոնք օրինականացված էին բուրժուական կարգերով... Լիբերալ հայացքների տեր ամուսնու՝ Սաշայի հետ ծավալում է բարեգործական աշխատանք, դըպրամ հավաքում, հագուստ, կոշիկներ բաժանում... Սակայն շուտով տեսնում է, որ իրենց արածը նման է անհատակ ծովի ջուրը գդալով դատարկելուն: Ինեսան համոզվում է, որ բարեգործությամբ անհնար է վերացնել սոցիալական չարիքը: Եվ, առանց քաղաքական որևէ պատրաստության, կազմակերպական աշխատանքի դույզն իսկ փորձի, ինքնուրույն հանգում է այն գիտակցության, որ շատ կարևոր է թերթի կազմակերպչական, պրոպագանդիստական աշխատանքը. նա սկսում է հրատարակել «Իզվեստիա» թերթը, կազմակերպում կնոջ վիճակի բարելավման ընկերություն, դառնալով նրա նախագահը. հասարակական աշխատանքի առաջին դպրոցն էր այդ Արմանդի համար:

1898 թվականին, Ղրիմում հանգստանալիս, 24-ամյա Ինեսան կարդում է Նարոդնիկ Պյոտր Լավրովի (Առնոլդի) **Պատմության ըմբռնման խնդիրները** գիրքը, որն, ինքնախոստովանությամբ լիովին համապատասխանում էր իր հայացքներին: Այն կարդալուց հետո առաջին անգամ նրան համակում է աշխարհի հեղափոխական վերափոխման գաղափարը: Այնուհետև ուսումնասիրում է **Կնոջ վիճակը Ռուսաստանում** գիրքը, որի հեղինակը՝ Մինա Կարլովնա Կաբլուկովան, նամակագրական կապ ուներ Ֆրիդրիխ Էնգելսի հետ: Կաբլուկովայի մոտ հաճախ հավաքվում էին համալսարանի դասախոսներ, տնտեսագետներ, հրապարակախոսներ... Հրավիրվում էր և Ինեսան: Նրա համար հեղձուցիչ էր բուրժուական սալոնների օդը. նա ձգտում էր իսկական հեղափոխական պայքարի:

Արմանդի հեղափոխական հայացքների ձևավորման գործում որոշակի դեր է խաղացել ամուսնու եղբայրների տնային ուսուցիչը՝ Ե. Ե. Կամերը, որը կապված էր ուսանողական ընդհատակի հետ: Հետագայում վերջինս հեռանում է քաղաքականությունից, մեկնում արտասահման, որտեղ բըժշկական կրթություն ստանալուց հետո վերադառնում է Մոսկվա: 1920 թվականին Ինեսան երաշխավորում է իր հեղափոխական առաջին ուսուցչին՝ ընդունվելու կուսակցության շարքերը:

1903 թվականին երեխաների հետ միասին (ունեցել է 3 տղա, 2 աղջիկ) առողջության վերականգնման նպատակով տիկին Արմանդը մեկնում է Շվեյցարիա: Այստեղ առաջին անգամ նա ծանոթանում է Իլյինի (Իլյիչի) աշխատություններին, սկսում ուսումնասիրել մարքսիստական գրականությունը, ջանում հասկանալ մենշևիկների և բոլշևիկների տարաձայնությունների պատճառները, նետվում հեղափոխական ակտիվ գործունեության ոլորտը:

Ողջ հոգով կեղծիքն ու քաղքենիությունն ատող Ինեսան խոստովանում է ամուսնուն իր սերը նրա եղբոր՝ Վլադիմիրի նկատմամբ: Հեղափոխական համատեղ գործունեությունըն էր մտերմացրել նրանց. նույն գործին զինվորագրված համախոհներ էին նրանք՝ փոխադարձ սիրով կապված: Ալեքսանդրը, որ շատ լավ մարդ էր, սակայն ոչ մարտիկ, հաղթահարելով հոգեկան ծանր ապրումները, ճիշտ է՝ տառապանքով, բայց հասկանում ու ներում է նրան և միշտ կյանքի ծանր պահերին օգնում, բնավ չզլանալով կատարել հայրական պարտականությունները, մինչև իր մահը (1943 թ.) երբեք չմոռանալով ու հարգելով Ինեսայի հիշատակը:

Համոզվելով, որ կապիտալիստական հասարակության օրոք մարդը, հատկապես կինը, երբեք չի կարող դառնալ իր ճակատագրի տերը, Ինեսա Արմանդը որոշում է նըվիրվել նոր հասարակարգի կերտմանը և 1904 թվականին ընդունվելով բոլշևիկյան կուսակցության շարքերը՝ դառնում է կուսակցական ընդհատակյա ու լեգալ աշխատանքի ակտիվ մասնակիցներից: Նրան մեծապես օգնում է Իլյիչի **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գիրքը: Շուտով նա ձեռնամուխ է լինում ակտիվ պրոպագանդիստական գործունեության: Հեղափոխության գաղափարներն է տարածում Մոսկվայի Լեֆորտովյան, ապա՝ երկաթուղայինների շրջաններում, ջանք չի խնայում աշխատավորների, հատկապես կանանց, զարթոնքի համար: Պրոպագանդան նա վարում էր իրեն հատուկ պարզությամբ, անկեղծությամբ, համոզվածությամբ, գտնելով անհրաժեշտ բառեր, գաղափարական հակառակորդների՝ մենշևիկների հետ ունեցած տարաձայնությունները կիսագրագետ ունկնդիրներին դյուրըմբռնելի դարձնելու համար: Նման զրույցները ոգևորում էին աշխատավորներին, բորբոքում նրանց ազատատենչությունը: Հեղափոխության սերմերը նա տարածում է նաև Պուշկինոյում, կազմակերպում խմբակներ, նախապատրաստում մոտեցող աշխարհափոխ իրադարձություններին:

Որքան եռանդուն, գիտակից ու գործնական է մարդը, այնքան ավելի դիմացկուն է նա, և հակառակը, համոզված էր Արմանդը: Ինչպես ազատության բոլոր զինվորների, Ինեսայի կյանքի ճանապարհը ևս փշով էր ծածկված. բանտ, աքսոր, փախուստ, կրկին բանտ, տարագրություն... Ակադեմիկոս պատմաբան Մ. Մ. Դրուժինինը, որ այն ժամանակ ուսանող էր, տեսել է Ինեսային դատավարության պահին, ձերբակալված և հիշում է՝ ինչպիսի՜ արժանապատվությամբ ու սառնասրտորեն էր պահում իրեն երիտասարդ բոլշևիկուհին. ասես բանտարկյալ չէր նա, այլ ճոխ, հանդիսավոր ընդունելության սրահում, իսկ դատողները, ոստիկաններն ու պահակները ծառայում, սպասարկում էին նրան...

Մենախուց, աքսոր հեռավոր Արխանգելսկի մարզի սառնամանիքային Մեզեն: Խախտվում է փխրունակազմ կնոջ առողջությունը. նիհարել է, գունատվել, սաստիկ հոգնել, բայց մնացել է նույն հմայիչ գեղեցկուհին՝ կենսախինդ, եռանդուն: Նա երջանիկ էր, որովհետև գտել էր իրեն հեղափոխության մեջ:

Աքսորավայրում Արմանդների խրճիթը դառնում է քաղաքական այդ գաղութի հոգևոր կենտրոնը: «Այստեղ ստեղծել ենք սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն: Էսեռներն անմիջապես հետևեցին մեր օրինակին,— գրել է Ինեսան,— կարդում ենք ռեֆերատներ, կազմակերպում խմբակներ, ուզում ենք գումարել նաև բանավեճային ժողովներ՝ էսեռների հետ... Ցանկանում ենք թերթիկ հրատարակել. այդ ամենալավը կլինի մեր հասարակության համար... Այն կլինի խիստ մասսայական, համարյա պրոպագանդիստական թերթոնների նման՝ նաև անկուսակցական մասսաների համար, որպիսիք այստեղ շատ-շատ են»: Թերթ հրատարակել չի հաջողվում, բայց այստեղ ևս երևան է գալիս Ինեսային բնորոշ հատկանիշը՝ հավատը ճշմարտացի տպագիր խոսքի նըկատմամբ: Ամեն անգամ, ուր էլ եղել է, ամենափոքր հնարավորության դեպքում իսկ նա անմիջապես ձեռնարկել է լրագրի, ամսագրի, թերթիկների հրատարակմանը, տարածմանը...

1905 թ. հեղափոխության պարտությանը հաջորդած ռեակցիայի տարիներին թույլ հոգիները երբեմն դավաճանում, այրում էին հեղափոխության հետ իրենց կապող բոլոր կամուրջները, երես դարձնում այն ամենից, ինչ երեկ պաշտպանում էին... Ինեսան պատրաստ էր ամեն զոհողության ու գործի՝ հանուն հեղափոխության նոր վերելքի, նրա հաղթանակի:

Ծանր վիշտը՝ Վլադիմիրի մահը, անդառնալի կորուստ էր նրա համար. գաղափարական ընկերոջ մեջ նա գտել էր իր անձնական երջանկությունը, առանց որի մարդու համար շատ դժվար է ապրել: Հուսահատ Ինեսան արտաքուստ անճանաչելիորեն փոխվեց. ավելի տկարացավ, սակայն որոշ ժամանակ անց իր մեջ ուժ գտավ՝ հաղթահարելու այդ մեծ դժբախտությունը, կրկին ոտքի կանգնելու, գործի լծվելու:

Իր առջև աշխարհը հեղափոխական ճանապարհով փոխելու խնդիր դրած մարդը պետք է խորապես ըմբռնի հասարակության զարգացման օրենքները, ուսումնասիրի քաղաքատնտեսությունը, պատմությունը...— մտածում էր Ինեսան: Եվ 1909 թ. Բրյուսելի համալսարանում նա ուսումնասիրում է սոցիալական ու տնտեսական գիտությունները: 12 ամսվա լարված, տքնաջան աշխատանքի շնորհիվ տիկին Արմանդը գերազանց գնահատականներով հանձնում է քննությունները և ստանում տնտեսական գիտությունների լիցեցիանտի աստիճան: Ահա թե ինչ է գրել նա այդ օրերի մասին Իննային. «...կյանքում կրածս դժվարությունները ցույց տվին ու բազմիցս ապացուցեցին, որ ես ուժեղ եմ, և ես գիտեմ այդ: Բայց, գիտե՞ս, ինձ հաճախ ասել են և մինչև օրս էլ ասում են. «Ձեզ հետ ծանոթանալիս դուք թվում եք այնպե՜ս նուրբ, փխրուն ու թույլ, իսկ դուք, պարզվում է՝ երկաթից եք... մի՞թե բոլոր ուժեղ մարդիկ կանացիությունից, նրբությունից զուրկ ժանդարմ պետք է լինեն: Ընդհակառակը, կանացիության, նրբության մեջ հմայք կա, որը նույնպես ուժ է»: Ինեսայի ողջ կյանքն ու գործունեությունը դրա լավագույն վկայությունն են:

Փարիզի Սորբոնի համալսարանն ավարտելուց հետո ուսումնատենչ Ինեսան մնում է Շվեյցարիայի գրադարանների, ընթերցասրահների մշտական այցելուն. կարդում, անընդհատ կարդում է: Գրականությունը շատ մեծ դեր է խաղացել նրա կյանքում. «Երիտասարդ տարիներին,— գրել է նրա

կենսագիր Ժան Ֆրևիլը,— Նեկրասովը և Դոստոևսկին, Տոլստոյն ու Չերնիշևսկին օգնեցին Ինեսային՝ լավ տեսնելու շրջապատը, լայնախոհ դառնալու, ճիշտ եզրակացություններ, ընդհանրացումներ անելու»: Երեխաներին ուղղված նամակներում գորովագութ մայրը հետաքրքրվում էր նրանց ամեն մի քայլով, արարքով, կրթությամբ ու դաստիարակությամբ, խորհուրդ տալիս նրանց կարդալ Չերնիշևսկու **Ի՞նչ անել**, Վոյնիչի **Բոռը**, Դիկենսի վեպերը, Ջեկ Լոնդոնի պատմվածքները, Գորկի, Բելինսկի, Զուդերման, Մոպասան, Չեխով... Զավակներին կաթոգին սիրող Ինեսան խիստ պատասխանատվություն էր զգում նրանց դաստիարակության համար, այդքա՜ն բազմազբաղ՝ ջանում էր ամեն ինչ անել, որպեսզի նրանք լինեն իսկական մարդ, մեծ գործի հավատարիմ մարտիկներ: Եվ, պատահական չէ, որ նրա զավակներից չորսը դարձան կոմունիստներ:

Ինչպես տեսանք, Վլադիմիր Իլյիչին Ինեսան հեռուստ ծանոթ էր 1903 թվականից, նրա աշխատություններից. անձնական ծանոթներ դարձան 1909 թվականից: Լենինի սուր, խորաթափանց մտքով, ճարտար հրապարակախոսական տաղանդով, դիպուկ սարկազմով, փաստերի տրամաբանականությամբ հիացած Ինեսայի հետագա ողջ գործունեությունն ընթացել է նրա խորհուրդներով, օգնությամբ ու հանձնարարությամբ, անմիջական ղեկավարությամբ: Աշխատակցությունը հեղափոխության առաջնորդի հետ նրան դարձրեց ժամանակի ամենաառաջավոր ու ակտիվ, համոզված լենինյաններից մեկը: Փոխըմբռնողությունը ջերմ, սրտակից ընկերությամբ ու բարեկամությամբ էր կապել Ինեսային Իլյիչի, Նադեժդա Կոնստանտինովնայի հետ: «Տունն ասես պայծառանում էր, երբ ներս էր մտնում Ինեսան»,— հիշում է Կրուպսկայան:

«1910 թ. Բրյուսելից Փարիզ եկավ Ինեսա Արմանդը և անմիջապես դարձավ փարիզյան մեր խմբի ակտիվ անդամներից մեկը,— գրել է Կրուպսկայան Լենինի մասին հիշողություններում,— նա խիստ կրքոտ բոլշևիկուհի էր և շատ շուտով նրա շուրջը համախմբվեց մեր փարիզյան հասարակությունը»: Կուսակցությունն ուղարկում էր նրան հեղափոխական աշխատանքի ամենատարբեր տեղամասերը, և ջանասեր, տոկուն բոլշևիկուհին գործում էր ինքնամոռաց, մեծ եռանդով ու հնարամտությամբ: Բայց ամենանվիրական գործը, որով նա զբաղվել է անընդմեջ և ամենուրեք, կանանց շրջանում տարվող հեղափոխական աշխատանքն էր: «Հեղափոխության հաղթանակը պայմանավորված է միլիոնավոր կանանց մասնակցությամբ», սովորեցնում էր Ինեսան. պետք է ազատագրել կնոջը ճորտությունից, գեղջկուհուն ներգրավել քաղաքական կյանքի ոլորտը: Մասսաների տաղանդավոր կազմակերպիչն ու ֆեմինիզմի հակառակորդը դառնում է այդ դժվարին գործի անխոնջ մարտիկներից մեկը, անում հնարավոր ամեն բան՝ արթնացնելու համար աշխատավորուհիների գիտակցությունը:

Փարիզում, Սեմաշկոյի և Բրիտմանի հետ մեկտեղ, Ինեսան ևս բոլշևիկների արտասահմանյան խմբի նախագահության անդամ էր, վարում էր նամակագրությունը արտասահմանյան և այլ խմբերի հետ, կապեր հաստատում, կազմակերպում հանդիպումներ, հավաքներ, ժողովներ, կրակոտ ելույթներ ունենում, քարտուղարություն անում... Այդ ամենին ավելանում են և ֆրանսերենի իմացության հետ կապված գործերը. միջազգային գործունեության ասպարեզում Լենինի աջ թևն էր նա,—հիշում է Ինեսայի մահվան տասներորդ տարելիցին նվիրված հոդվածում («Պրավդա», 1930, 24-ը սեպտեմբերի) Ն. Կ. Կրուպսկայան: Ֆրանսերենի քաջ գիտակը կուսակցության թարգմանիչն էր, հատուկ հաղորդագրությունների ընթերցողը, բանակցություններ վարողը, ներկայացուցիչը՝ կոնֆերանսներում. նա ժամանակ էր գտնում նաև իր ընկերներին ֆրանսերեն սովորեցնելու: Մարդամոտ, մարդկանց մագնիսի պես ձգող, սրտացավ Ինեսան, որ ընկերոջ հետ կիսել գիտեր վերջին պատառն իսկ, խիստ անհաշտ էր գաղափարական հակառակորդների՝ լիկվիդատորների, տրոցկիստների, ամեն կարգի հաշտվողականների նկատմամբ և միշտ էլ պայքարել է նրանց դեմ:

Փարիզից 18 կմ հեռու գտնվող Լոնժյումո վայրում Ինեսան վարձել էր երկհարկանի մի տուն. 1911 թ. այստեղ սկսեց գործել կուսակցական դպրոցը, որի առաջին ունկնդիրներից էր Սերգո Օրջոնիկիձեն: Իլյիչը քաղաքատնտեսության, ագրարային հարցի, սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի վերաբերյալ դասախոսություններ էր կարդում, Ինեսան վարում էր քաղաքատնտեսության գործնական աշխատանքը. հետաքրքրական էին և նրա չորսժամյա դասախոսությունները՝ նվիրված Բելգիայի սոցիալիստական շարժմանը: Լենինի և Կրուպսկայայի անմիջական օգնականը Լոնժյումոյի դպրոցի ուսմասվարն էր՝ այժմյան իմաստով:

Դեկտեմբերի 27—30-ը Փարիզում տեղի



ունեցավ ՌՍԴԲԿ Համառուսաստանյան VI (Պրագայի) կոնֆերանսի նախապատրաստությանը նվիրված՝ արտասահմանյան ներկայացուցիչների խորհրդակցությունը: Այն վարում էր Իլյիչը: Լենինը, Կամսկին և Ինեսան ընտրվեցին բանաձևային հանձնաժողովի անդամներ: Ստեղծվեց նաև Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտե, ուր ֆրանսիական սոցիալ-դեմոկրատների հետ կապերի հաստատման գործը հանձնարարվեց Ինեսային:

**1912** թվական: Հրավիրվելու էր ՌՍԴԲԿ համառուսաստանյան վեցերորդ կոնֆերանսը. տարագիր բոլշևիկները ձգտում էին հայրենիք վերադառնալ. դեռևս անիրականանալի՜ երազանք: Ամռանը Պետերբուրգ, ընդհատակյա գործունեության մեկնեցին Գ. Ի. Սաֆարովը և Ինեսա Արմանդը՝ գեղջկուհի Ֆրանցիսկա Կազիմիրովնա Յանկևիչ ծածկանվամբ: Նարվայի պրոլետարական շրջանը դարձավ բոլշևիկների կենտրոնատեղին. հաջողվեց վերականգնել կուսակցության Պետերբուրգյան կոմիտեն, կազմվեց նաև ՌՍԴԲԿ հյուսիսային մարզային կոմիտե, որի անդամներից էր և Ինեսան: Այստեղ նա ծավալեց պրոպագանդիստական լայն աշխատանք, նրա ջանքերով բարելավվեց «Պրավդայի» խմբագրության գործունեությունը:

— Երբ թերթը ետ է մնում կյանքից, իրեն մահվան է դատապարտում,— ասել է Իլյիչը՝ Արմանդին ճանապարհելիս:

Ծանր էր ընդհատակայինի, մանավանդ սիրող մոր վիճակը, որ այնպե՜ս մոտ էր երեխաներին, բայց ոչ մի կերպ նրանց տեսնել չէր կարող: Ոստիկանները հետևում էին նրան: Շուտով կրկին նա ձերբակալվում է, նետվում մենախուց: Վատթարանում է առողջությունը. սաստիկ հազը, ջերմը տանջում են նրան: Դատապարտվում է աքսորի, նրան կրկին սպասում է Մեզենը, որտեղից մեծ դժվարությամբ կարողացել էր փախչել. օգնության է հասնում Ալեքսանդր Եվգենևիչը:

— 5000 ռուբլի փրկագնով մինչև դատը կարող ենք ազատ արձակել,— ասում են նրան:

Ինեսան ազատ է: Ողջ գարունն ու ամառը երեխաների, ընտանիքի հետ է, բավականին կազդուրվել, նախկին հմայիչ տիկինն է դարձել: Առջևում դատն է— օգոստոսի 27-ին... այդ օրն արդեն Ինեսան արտասահմանում էր, Կրակովում, Իլյիչի, Նադեժդա Կոնստանտինովնայի հետ: Կրակովյան ողջ խումբը խիստ մտերմացավ, սիրեց կենսախինդ, կրակոտ տիկնոջը: «Մեր ողջ կյանքը լցված էր կուսակցական հոգսերով.— հիշում է Ն. Կ. Կրուպսկայան,— ավելի շատ նման ուսանողական, քան ընտանեկան կյանքին: Եվ մենք ուրախ էինք Ինեսայի համար: Նա շատ էր պատմում իր կյանքի, երեխաների մասին, ցույց տալիս նրանց նամակները և նրա պատմածներից ջերմություն էր բուրում: Իլյիչի և Ինեսայի հետ հաճախ էինք գնում զբոսանքի... Ինեսան լավ երաժշտագետ էր, ագիտացիա էր անում մեզ՝ գնալու բեթհովենյան համերգներին, ինքն էլ սքանչելի էր կատարում նրա շատ գործեր: Իլյիչը հատկապես շատ էր սիրում „Sonate pathetique„-ը՝ նրա կատարմամբ»:

Շատ հաճախ երեկոները, երբ Իլյիչն աշխատում էր, իսկ Կրուպսկայան նամակներ գրում, բաց պատուհանից տարածվում էին Բեթհովենի, Շոպենի, Շուբերտի, Ռախմանինովի թովիչ մեղեդիները՝ Ինեսայի հմուտ կատարմամբ: Ի՜նչ դաշնակահարուհի կդառնար: Այնպե՜ս հաճելի էր աշխատել այդ հոգեպարար հնչյունների զգլխիչ աշխարհում...

Թանկագին բարեկամին՝ Ինեսային, Իլյիչի գրած շատ նամակներում կարդում ենք, որ Նադեժդայի հետ զբոսնելիս անցել են «... այն ճանապարհով, որտեղ, հիշո՞ւմ եք, մի անգամ այնպես սքանչելի զբոսնում էինք երեքով: Ես միշտ հիշում և ափսոսում եմ, որ Դուք չկաք»:

Ինեսան Փարիզում է ու խորհում է դարձյալ իր նվիրական գործի՝ կանանց ամսագրի ստեղծման մասին: Հիշում է Կլարա Ցետկինի խոսքերը.

— Մենք պետք է մղենք ո՛չ թե հատուկ կանացիական ագիտացիա, այլ սոցիալիստական ագիտացիա՝ կանանց շրջանում:

Իսկ այդ նպատակով՝ «Շտապ ձեռնարկեք կանանց ամսագրին, այդ գերկարևոր գործին»,—գրում էր Իլյիչը: Այդ աշխատանքին ձեռնամուխ եղան Կրուպսկայան, Լիլինան՝ Կրակովում, Ինեսան, Լյուդմիլա Ստալը՝ Փարիզում, Աննա Իլյինիչնա Ելիզարովան, Կոնկորդիա Սամոյլովան, Պրասկովյա Կուդելին, Ելենա Ռոզմիրովիչը՝ Պետերբուրգում: 1914 թ. փետրվարի 23-ին լույս տեսավ «Работница»-ի առաջին համարը: Ստանալով ամսագրի երեք համարները, ուր Ելենա Բլոնինա ծածկանվամբ Ինեսան զետեղել էր իր՝ **Կնոջ ընտրական իրավունքները**, **Աշխատավորուհին և ութժամյա աշխատանքային օրը** հոդվածները, Լենինը հե-

ռագրում է Ինեսային՝ «Լա՛վ է, գործը գլուխ է գալիս»:

Միջազգային սոցիալիստական բյուրոն որոշել էր հուլիսի 16—18-ին հրավիրել կոնֆերանս. լիկվիդատորները, օպորտունիստները, հաշտվողականները մտադիր էին ամեն ինչ անել միավորվելու համար. նրանք մերժել էին բոլշևիկների՝ Բրյուսել ուղարկած դեկլարացիան: Կենտկոմը դեկլարացիայի պաշտպանությունը հանձնարարեց բոլոր պայմաններում ու պարագաներում անկոտրում Ինեսային. Պորոնինից Իլյիչը գրում է Լովրան՝ Ինեսային.

«Թանկագին բարեկամ... Կկ հանձնարարությամբ դիմում եմ քեզ՝ խնդրելով, որ համաձայնես լինել պատվիրակության մեջ: Ճանապարհածախսը կվճարենք... Եթե ամենափոքր իսկ հնարավորություն կա երեխաներին վեցից-յոթ օրով մի տեղ տեղավորելու, ապա կխնդրեի քեզ համաձայնել: Դու լավ գիտես գործերը, հիանալի խոսում ես ֆրանսերեն, կարդում ես «Պրավդան»:

Համաձայնիր

Ձեզ նվիրված՝ Վ. ՈԻ.»:

Եվ հորդորում է շտապել: Նա վստահ է, որ հենց Ինեսան է այն մարդը, որը կարող է հանգիստ, ամենաքաղաքավարի ձևով, իր գեղեցիկ ֆրանսերենով արժանի պատասխան տալ հակառակորդներին՝ Վանդերվելդեին, Պլեխանովին, Կաուցկուն, Ռուբանովիչին, Գյուիսմանսին, ճակատամարտել նրանց հետ: Ինեսան պետք է մեկնի Բրյուսել՝ իբրև Կենտկոմի ներկայացուցիչ: Հաջորդ նամակներում խորհուրդներ, ցուցմունքներ է տալիս, թարգմանելու է ուղարկում Կենտկոմի զեկուցումը, խնդրում պարբերաբար ամեն ինչի մասին տեղեկացնել իրեն, նամակները չուշացնել: Իլյիչը վստահ է, որ Ինեսան հիանալի կկատարի նաև այդ առաջադրանքը: «Իմ թանկագին բարեկա՛մ,— գրում է նա,— համոզված եմ՝ դու այն մարդկանցից ես, որ զարգանում, ամրանում, դառնում են ավելի ուժեղ ու համարձակ, երբ պատասխանատու պոստում մենակ են լինում... Գեղեցիկ լեզվով բոլորին մի լավ կջարդես:

Համաձա՛յն ես: Համաձայնի՛ր խնդրում եմ:

Քո՝ Վ. Ի.»:

Գործը դժվարին է, պատասխանատու: Ինեսան տատանվում է: Իլյիչը համոզում է, ոգևորում. «...կարևորն այն է, որ գոնե հիմնական զեկուցումը կարդացվի իրոք շատ լավ: Դրա համար անպայման անհրաժեշտ է գեղեցիկ ֆրանսերեն... Իհարկե, գեղեցիկ ֆրանսերենից զատ պետք է գործի էության ըմբռնում և տակտ: Բացի քեզնից ոչ-ոք չկա»: Ինեսան համաձայնում է ուսերին առնել ծանր բեռը: Իլյիչը ուրախ, անսահման շնորհակալ է: Հակառակորդներին՝ «այդ խղճուկ դիվանագետներին» չհաջողվեց վախեցնել Կենտկոմին՝ հանձին նրա համարձակ, խելացի ներկայացուցչի:

«Իմ թանկագին բարեկամ — գրում է Իլյիչը,— մեծ ծառայություն մատուցեցիր մեր կուսակցությանը: Հատկապես շնորհակալ եմ ինձ փոխարինելու համար»: Եվ հայտնում է, որ տղային ուղարկված է 150 ֆրանկ. անհանգստանում է հակառակորդներին այդպես վարպետորեն «սափրողի» առողջական վիճակի համար. «Գրիր, շա՞տ ես հոգնել, շա՞տ ես բարկացել», կամ՝ «Պոպովն ինձ գրել է, որ դու հիվանդ էիր... ի՞նչ հիվանդություն ունես, գրիր, խնդրում եմ մանրամասն... սրտանց ողջունում եմ քեզ և հղում լավագույն ցանկություններ, ցանկանում եմ առողջություն, հանգստություն»: Հաջորդ նամակով ուզում է տեղեկանալ՝ ինչպե՞ս է սնվում, զբոսնո՞ւմ է, գրքեր, թերթեր ունի՞, ապա հանձնարարում նորանոր կապեր հաստատել, տեղեկություններ հավաքել:

Մեկիկ-մեկիկ հնարավոր չէ անդրադառնալ Իլյիչի՝ Ինեսային գրած բոլոր նամակներին (մոտ 100), որոնք զետեղված են Լենինի Երկերի լիակատար ժողովածուի 48 և 49 հատորներում: Դրանք ընթերցողին ամբողջական պատկերացում կտան անխոնջ հեղափոխականների բոլորանվեր գաղափարակիցների ու զինակիցների բարեկամական, ընկերական ու գործնական անկեղծ հարաբերությունների մասին, մի անգամ ևս կբացահայտեն Իլյիչի անսահման մարդկայնությունը, հոգատարությունն ու երախտագիտությունը գործընկերների նկատմամբ, նուրբ հոգածությունն ու համբերությամբ համոզելու, խրախուսելու, կատարածը գնահատելու ունակությունը:

Ամեն անգամ, երբ հարկ է եղել արտասահմանյան-շվեյցարական, ֆրանսիական սոցիալիստների առաջ պաշտպանել բոլշևիկյան գաղափարներն ու սկզբունքները, զեկուցումը, ելույթը, բանավեճը Իլյիչը հանձնարարել է Ինեսային: Ակտիվ մասնակցելով կանանց միջազգային կոնգրեսի, Ցիմերվալդյան, Կինտալի միջազգային կոնֆերանսների նախապատրաստմանն ու կազմակերպմանը, պահպանողականների դեմ պայքարելու մեծ փորձով զինված բոլշևիկուհին իր զեկուցումներով պաշտպանում էր լենինյան սկզբունքները, նա կոչ էր անում պայքարել շովինիզմի դեմ, միավորվել՝ իշխողների տիրապետությունը տապալելու համար: Նրա ջանքերով կազմակերպվեց նաև Միջազգային կապերի հաստատման կոմիտե, որի ամենաակտիվ անդամներից էր Ինեսան:

Այդ օրերի մասին Մորիս Թորեզը իր **Հոկտեմբերը մեզ ուղի ցույց տվեց** հոդվածում գրել է. «Ցիմերվալդյան ձախը նույնպես սկըսել է հող գտնել Ֆրանսիայում: Գլխավորապես Ինեսա Արմանդի ջանքերի շնորհիվ, որն անմիջականորեն կապված է Լենինի հետ, ձախ գաղափարները թափանցեցին Սենայի դեպարտամենտի սոցիալիստական ֆեդերացիայի շարքերը...»:

Իլյիչի հավատարիմ աշակերտուհին էր Ինեսան: Ամեն ինչում օգնելով Լենինին, լինելով նրա թարգմանչուհին, քարտուղարուհին, երկրե-երկիր գնացող գործակալը, ինֆորմատոր-լրատուն, կատարելով նրա հազար ու մի մեծ ու փոքր առաջադրանքները, նա դարձավ առաջնորդի առավել վստահելի անձնավորություններից, մեր կուսակցության ականավոր անդամներից մեկը: Իլյիչը հպարտանում է Ինեսայի հաջողություններով, հովանավորում, ոգևորում, խրախուսում, օգնում: Կրուպսկայային գրած նամակներում Իլյիչը հաճախ հանձնարարում էր՝ «Ինեսային հարկ է նստեցնել թարգմանելու», «թող Ինեսան ձեռնարկի թարգմանությանը». և նա թարգմանում էր Իլյիչի աշխատությունները. գրավոր ու բանավոր թարգմանում էր ռուսերենից անգլերեն, ֆրանսերեն, օտար լեզուներից՝ ռուսերեն:

Ինեսան միաժամանակ աչքի էր ընկնում իր չեշտված անհատականությամբ, անսահման բարձր գնահատելով հեղափոխության հանճարի փորձը, խոր գիտելիքներն ու կարողությունները, նա երբեք չկորցրեց իր ինքնուրույնությունը, ուղղամտությունը: Իլյիչի նամակներում կարելի է հանդիպել նման տողերի. «Համաձայն չեք:

Լա՛վ, քննենք հարցը մի անգամ ևս... Ինչպե՛ս, դուք ուզում եք ինձ ջարդե՞լ» և վիճում էին, յուրաքանչյուրը պաշտպանում էր իր հայացքները. Ինեսան նահանջում էր միայն այն ժամանակ, երբ համոզվում էր, որ ինքը ճիշտ չէ: Իլյիչի համար ևս թանկ էր Ինեսայի համախոհությունը. երբ զգում էր, որ իրենց բանավեճը կարող է հասցնել անջատման, անհանգստացած գրում էր. «Ինձ համար գերտհաճ կլիներ, եթե մենք պառակտվեինք: Փորձենք մի անգամ ևս հասկանալ իրար»: Այս առումով հետաքրքրական են Իլյիչի նամակները Ինեսային նրա **Ընտանիքի, սիրո, ամուսնության մասին** բրոշյուրի վերաբերյալ:

Ինչպե՛ս է անհանգստանում Լենինը, երբ ուշանում են Արմանդի նամակները. «Դուք ինձ մեծ վիշտ եք պատճառում Ձեր մասին ոչինչ չգրելով»: Իսկ երբ հիվանդանում է՝ «Իմ կողմից խնդրեք աղջիկներին, որ Ձեզ չթողնեն դուրս գալ... Պետք է գերզգույշ լինել...»: Քանի դեռ Նադյայի և իր հիվանդության պատճառով այցելել չէր կարող՝ «Անպայման ստիպեք աղջիկներին ամեն օր զանգահարել ինձ» և այսպես միշտ:

Կոմունիստի կոչումը շատ բան է պարտավորեցնում և տալիս է միայն մի արտոնություն— առաջինը պայքարել հանուն հեղափոխության: Այս խորհրդանիշին հավատարիմ, մյուս տարագիր բոլշևիկների հետ Ինեսան ևս քուն թե արթուն Հայրենիքի հետ է:

— Ի՛նչ գնով էլ լինի, թեկուզ դժոխքի միջով, մենք պետք է մեկնենք,— ասում էր Իլյիչը և պատվիրում Ինեսային անձնագրեր ձեռք բերել իր, Նադյայի համար:

Իլյիչը գրում է հրաժեշտի նամակը շվեյցարական բանվորներին: «Ցյուրինգեր հոֆ» ռեստորանում ճաշի են հավաքված բոլշևիկները. այդ նրանց տարագրության վերջին օրն է: Ապրիլի 3-ին Պետրոգրադի հեղափոխական մասսաները ֆինլանդական կայարանում դիմավորում են պրոլետարիատի մեծ առաջնորդին: Նրա հետ են Նադյան, Ինեսան...

— Կեցցե՛ սոցիալիստական հեղափոխությունը,— վերջացնում է Իլյիչը հենց կայարանում, զրահագնացքի վրա արտասանած իր ճառը:

Վերադառնալով հայրենիք՝ Ինեսան նոր եռանդով նետվում է հեղափոխության փոթորկածուփ ալիքների մեջ: Շուտով նա դառնում է կուսակցության ճանաչված հռետորը, աշխատավորուհիների իրավունքների ամենաջերմ պաշտպանը, նրանց կազմակերպիչը. ռեֆերատներ, զեկուցումներ՝ նվիրված կնոջը, աշխատավորուհուն և այլ հարցերի— գիտական շրջաններում, գործարաններում ու ֆաբրիկաներում... ամենուր մարդաշատ է նրա լսարանը:

1917 թվականին, քաղաքային դումայի ընտրություններից հետո (Ինեսան ևս դումայի անդամ էր) վերսկսվում է կադետների ու էսեռների կատաղի պայքարը բոլշևիկների դեմ: Նրանք բացահայտ անցել էին հակահեղափոխության կողմը և վերջին ջանքերն էին գործադրում հեղափոխության, Իլյիչի գործը արգելակելու՝ Ռուսաստանի տապալվող բուրժուազիային իր պատվանդանի վրա պահելու համար: Ինեսան կրկին Իլյիչի կողքին է:

— Մոտ 25 տարի է, ինչ Լենինը գլխավո-

րում է մեր կուսակցությունը. բանվորական գործի ամենահետևողական ու անձնվեր մարտիկն է նա, միաժամանակ մեր կուսակցության տեսական ու քաղաքական ամենամեծ ուժը: Ճշմարտությունն ու կյանքը մեր կողմն են, ընկերնե՛ր, և ինչ էլ լինի, մենք կհաղթենք,—վերջացնում է իր խոսքը Մոսկվայի կոմիտեի ընդլայնված նիստի հիմնական զեկուցող, ՄԿ հանձնաժողովի անդամ Ինեսան:

Իր գիտակցական կյանքի ամեն մի վայրկյանը հեղափոխությանը, մարդկությանը, հատկապես աշխատավորուհիների ազատագրմանը նվիրած անխոնջ բոլշևիկուհին Վարվառա Յակովլևնայի հետ սկսում է հրատարակել «Աշխատավորուհու կյանքը» երկշաբաթաթերթը, ուր հանդես է գալիս Ելենա Բլոնինա ծածկանունով:

Հաղթանակել է հեղափոխությունը: Կուսակցությունը ձեռնամուխ է լինում իշխանության ժողովրդական ապարատի ընտեղծմանն ու ամրապնդմանը: Այդ ապարատում իր բուռն եռանդով կրկին աչքի է զարնում Ինեսան. նահանգային գործադիր կոմիտեի նախագահության անդամ է, համամիութենական ԿԳԿ-ի, կուսակցության նահանգային կոմիտեի, նրա բյուրոյի անդամ, Մոսկվայի նահանգային ժողտնտխորհի նախագահը: Նրա աղջիկը՝ Իննան, հիշում է, թե որքան հոգնած էր տուն գալիս մայրը. մի պատառ հաց էր ուտում ու գիրքն առած պառկում, բայց առավոտյան նոր եռանդով կպչում էր գործի: 1918 թ. Մոսկվայում բացվեց սովետական-կուսակցական աշխատանքի դպրոցը, որը հետագայում վերածվեց Սվերդլովի անվան կոմունիստական համալսարանի: Լոնժյումոյի լենինյան դպրոցի փորձով զինված Ինեսան, որ կանանց հարցին նվիրված դասախոսություններ էր կարդում այստեղ, սիրով օգնում էր երիտասարդ դիրեկտորին՝ կազմակերպելու, կարգավորելու դպրոցի գործերը:

Հեղափոխական հրապարակախոսության մեջ ևս, իիրավի, իր արժանավոր տեղն ունի Ինեսան. շատ արգասավոր է Ելենա Բլոնինայի գրիչը— բրոշյուրներ, մի քանի տասնյակ հոդվածներ, տարբեր ծավալի ու ժանրի ստեղծագործություններ. նույնիսկ փորձել է պիես գրել **(Դենիկինցիները)**: Նա միշտ էլ ձգտում է գրել կարճ, առանց ավելորդ զեղումների, մատչելի ձևով, միայն հիմնականը: Երբ լույս է տեսնում նրա **Ինչո՞ւ ես դարձա սովետական իշխանության պաշտպան** բրոշյուրը, «Коммунистка» ամսագրի 1920 թ. 5-րդ համարում Նադեժդա Կոնստանտինովնան գրում է. «Բրոշյուրը օրինակ է ծառայում այն բանի, թե ինչպես պետք է գրել մասսայական բրոշյուրը՝ պարզ ու ջերմ»:

Ռուսաստանի կոմունիստական կուսակցության կենտկոմի կինբաժնի առաջին վարիչը ձեռնամուխ է լինում պրոլետարիատի միավորմանը, այն ըստ սեռի, ազգության չտարանջատելու գործին: Ա. Կոլոնտայի հետ սկսում է հրատարակել «Коммунистка» ամսագիրը (խմբագիրը Արմանդն էր):

1920 թվական, ամառ: Մոսկվայի ֆրանսիական կոմունիստական խմբի անդամ Ժակ Սադուլի հետ Ինեսան դիմավորում է Մարսել Կաշենին և Ֆրանսիայի այլ կոմունիստների: Շրջում են մեր սովետների երկրի մայրաքաղաքում՝ Մոսկվայում, դիտում են, զրուցում, վիճում:

— Այսպես ենք ապրում, բարեկամնե՛ր: Դժվար ենք ապրում, սով է: Բայց ուրախ ենք: Զրկանքներին դիմանում ենք, պայքարում ենք ողջ հին աշխարհի դեմ և կառուցում, ստեղծում ենք նոր աշխարհը: Դրա համար էլ երջանիկ ենք:

Կոմունիստական ինտերնացիոնալի II կոնգրես մեկնելուց առաջ Արմանդը լույս ընծայեց **Աշխատավորուհին ինտերնացիոնալում** գրքույկը, **Միջազգային կազմակերպության ձևերը և կոմունիստական կուսակցությունները** հոդվածը: Իսկ կոնգրեսում Ինեսան և՛ կազմակերպիչ էր, և՛ գիդ, և՛ զեկուցող, և՛ ընդդիմախոս, և՛ թարգմանիչ, և՛ տնտեսական մասի վարիչ: Ինչպես հիշում է Կրուպսկայան, կոնգրեսի վերջում Ինեսան հազիվ էր ոտքի վրա կանգնում:

1920 թ. օգոստոսին փոքր որդու՝ Անդրյուշայի հետ, Ինեսան գնաց Կիսլովոդսկ՝ հանգստանալու: Այնտեղ էր և Լյուդմիլա Ստալը: «Ինեսան եկավ անպե՜ս հոգնած ու ջարդված, այնպե՜ս նիհարած»,— հիշում է նա: Հանգիստն ու ռեժիմը, հարավի արևը, լեռնային օդը հրաշք գործեցին, Ինեսան վերակենդանացավ: Քաղաքացիական կռիվները այլ հանգստացողների հետ նրան ևս նետեցին Նալչիկ: Վլադիկավկազում հանդիպեց Սերգո Օրջոնիկիձեին. Ռուսաստանի հարավի արտակարգ կոմիսարը մեծ հարգանքով դիմավորեց իր երբեմնի ուսուցչուհուն: Կայարանը, կայարանամերձ շենքերը լիքն էին փախստականներով, տեղափոխվածներով... ուղղակի գետնի վրա պառկած էին երեխաներ, կանայք, հիվանդներ... չորս բոլորը կեղտ էր, սննդի մնացորդներ, հոտած մրգեր... Բժշկի կարծիքով այս կայարանը հենց ճակատագրական եղավ Ինեսայի համար: Նալչիկ հասնելու երրորդ օրը վախճանվեց 46-ամյա Ինեսան՝ լրացնելով այդ տարի հանրապետությունում՝ խոլերայի 12.054 զոհերի թիվը: Նրա դին ճանապարհում էր ողջ Նալչիկը, իսկ քաղաքացիական կռիվների՝ հեռվից լսվող հրազենի ձայնը հրաժեշտի համազարկ էր, ասես, անձնուրաց բոլշևիկի պատվին:

Մոսկվան թաղում էր կոմունիստների ընտանիքի ականավոր անդամին. դագաղը դրված էր Միությունների տան սյունազարդ դահլիճում: Մարդկանց հոծ զանգվածներ, պսակներ, ծաղիկներ Բաումանի, Սոկոլնիկիի շրջաններից, սպիտակ, թարմ ծաղիկներից մի մեծ պսակ. «Ընկ. Ինեսային՝ Վ. Ի. Լենինից»... Մեծ է Իլյիչի, Նադեժդա Կոնստանտինովնայի վիշտը: Ահա Կլարա Ցետկինի Կրուպսկայային ուղղված սրտահույզ նամակը. «Հայտնում եմ Ձեզ իմ անկեղծ ցավակցությունը մեր ընկերոջ՝ Ինեսայի մահվան առթիվ: Հանձին նրա մենք կորցրինք մեր ամենանվիրված, հավատարիմ, ակտիվ մարտիկներից մեկին: Ես զգում եմ՝ ինչպիսի՜ մեծ կորուստ է այդ կոմունիստական շարժման համար, ի՜նչ խորությամբ, որքա՛ն ցավագնորեն պետք է հուզի նրա մահը Ռուսաստանի կոմունիստական կուսակցությանը և անձամբ Ձեզ, թանկագին ընկե՛ր: Որքան ինձ հայտնի է, Ինեսան Ձեր ամենամտերիմ բարեկամն էր»: «Կոմունիստների ընտանիքից հեռացավ գործին անսահման նվիրված, անխոնջ աշխատողը, հեռացավ ջերմ սրտով, անկեղծ ու խելացի մարդը», գրել է Կրուպսկայան «Правда»-ի 1920 թ. հոկտեմբերի 3-ի համարում:

Ուսանելի, ընդօրինակելի որքա՜ն բան կա մարդկության, կնոջ ազատագրման պայքարի հետևողական մարտիկի կյանքի բոլոր դրվագներում, անձնական հատկանիշներում, ունակություններում: Մարտիկ, որին իր ժամանակակիցները, գործընկերներն ու գաղափարակիցները կոչում էին **հեղափոխության բոցավառ խարույկ:** Այդ խարույկը ջերմացրել է բազում սրտեր, կազմակերպել, ոտքի հանել մասսաներին, նորանոր մարտերի հաղթանակի հավատով համակել նրանց:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՆՁՆՎԵՐ ՄԱՐՏԻԿԸ

## (ԱՍԱՏՈՒՐ ԿԱԽՈՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Բանվոր-հեղափոխականների այդ փայլուն համաստեղությանն է պատկանում նաև Ասատուր Կախոյանը (Բանվոր Խեչո): Անցնելով կյանքի բարդ քառուղիներով, որոնելով սոցիալական անարդարություններից դուրս գալու միջոցներ՝ նա շատ վաղ ծանոթացավ հայ իրականության և Անդրկովկասի քաղաքական հոսանքներին ու կուսակցություններին, դարձավ համոզված մարքսիստ և ամբողջովին նվիրվեց բանվոր դասակարգի ու գյուղացիության ազատագրման, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի մեծ գործին:

Ասատուր Կախոյանը մեկն է այն սակավաթիվ ու անձնվեր բանվոր-հեղափոխականներից, որոնք դեռ անցյալ դարի վերջերին զինվորագրվեցին լենինյանների մեծ բանակին և մինչև վերջ հավատարիմ մնացին լենինիզմի գաղափարներին: Նրա անունն անխզելիորեն կապված է Անդրկովկասի հեղափոխական շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմությանը, նրա կյանքը բոլշևիզմի գաղափարների, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների իրագործման համար մղվող պայքարի վառ օրինակ է:

Անցյալ հարյուրամյակի 90-ական թվականներին մարքսիզմն արագորեն տարածվում էր Ռուսաստանում, տեղի էր ունենում սոցիալիզմի միացումը ծավալվող բանվորական շարժման հետ: Վ. Ի. Լենինի հիմնած «Պետերբուրգի բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միության» օրինակով ամբողջ երկրում, նաև Անդրկովկասում, ձևավորվեցին բազմաթիվ պայքարի միություններ, մարքսիստական սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ, որոնք կարևոր դեր խաղացին ՌՍԴԲԿ ստեղծման համար մղվող պայքարում: Այդ միություններում ու կազմակերպություններում դաստիարակվեցին բազում առաջավոր բանվորներ, որոնք անմիջականորեն մասնակցեցին կուսակցության կառուցման ու ամրապնդման գործին, և որոնց ծառայությունները ժամանակին բարձր գնահատեց Վ. Ի. Լենինը:

***

Հարյուր տարի առաջ, 1874 թ. փետրվարին, Թիֆլիսի նահանգի Լոռի գավառի Հաղպատ գյուղում ծնվեց Ասատուր Ստեփանի Կախոյանը: Հաղպատը խավար ու հետամնաց կալվածատիրական գյուղ էր, ուր նույնիսկ չէր գործում ծխական դպրոցը, աշխատավորները ենթարկվում էին դաժան շահագործման ու հալածանքների: Ասատուր Կախոյանը գյուղի աչքաբաց, ընդունակ ու հանդուգն պատանիներից էր, որը, դեռ 17 տարին չբոլորած, գնաց Թիֆլիս՝ «ուսումնառության»: Այստեղ 1892—96 թթ. կոշկակարի աշակերտ էր կաշվի արհեստանոցներից մեկում, ուր անցավ կյանքի առաջին համալսարանը: Ինքնակրթությամբ նա ձեռք բերեց անհրաժեշտ գիտելիքներ, ծանոթացավ քաղաքական գրականությանը, գաղափար կազմեց դասակարգային պայքարի մասին և գիտակցորեն մտավ բանվորական շարժման հորձանուտը:



1897 թվականին ականավոր բանվոր-հեղափոխականներ Մելիք Մելիքյանի (Դեդուշկա), Պողոս Փիլոսյանի (Ադամյան) և ուրիշների հետ միասին նա հիմնադրում է հայ բանվորների առաջին մարքսիստական «Բանվոր» խմբակը, որը 1898 թ. մտնում է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպության մեջ:

1900 թ. խմբակը Ա. Կախոյանի ակտիվ մասնակցությամբ հրատարակում է ձեռագիր «Բանվոր» թերթը, որի բնաբանն էր՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» աշխարհահռչակ լոզունգը: Թերթը պրոպագանդում էր դասակարգային պայքարի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները, կարևոր դեր խաղում բուրժուազիայի ու ցարական ինքնակալության դեմ մղվող պայքարում: Թիֆլիսի բազմազգ բանվորների 1900 թ. մայիսմեկյան տոնակատարությանը ակտիվորեն մասնակցում են նաև «Բանվորի»-ի անդամներն ու նրա համակրողները: Տարեվերջին, խուսափելով ոստիկանության հետապնդումներից, Ա. Կախոյանը մեկնում է Բաքու և աշխատում կաշվի արդյունաբերության ձեռնարկություններից մեկում: Հեղափոխական բանվորների միջոցով նա ծանոթանում է ականավոր լենինյաններ Ա. Ենուկիձեի, Բ. Կնունյանցի և ուրիշների հետ, ծավալում ընդհատակյա գործունեություն, կազմակերպում կաշեգործների ս.դ. խմբակ, շարունակում աշխատակցել «Բանվոր» թերթին:

1901 թ. նա ակտիվորեն մասնակցում է Բաքվի բանվորների մայիսմեկյան բազմահազարանոց ցույցին: Նույն թվականի աշնանը հեղափոխական գործունեության համար ձերբակալվում է: Երեք ամիս հետո նրան փոխադրում են Թիֆլիս Մետեխի բանտը, ուր մընում է մինչև 1903 թ. հունվարը: Բանտից ազատվելով՝ նա աշխատանքի է անցնում Թիֆլիսում և պրոպագանդիստական ու ագիտացիոն գործունեություն ծավալում քաղաքի բազմազգ բանվորների շրջանում: Շուտով դառնում է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի անդամ: Արդեն ստեղծվել էր երկրամասի սոցիալ-դեմոկրատական շարժման ղեկավար կենտրոնը՝ ՌՍԴԲԿ Կովկասյան միության կոմիտեն, որի հետ անմիջականորեն կապված բանվոր-հեղափոխականների թվում էին Ասատուր Կախոյանը, Մելիք Մելիքյանը (Դեդուշկա), Մարտիրոս Միրաքյանը (Ճանթ) և ուրիշներ:

ՌՍԴԲԿ Կովկասյան և Թիֆլիսի կոմիտեների հանձնարարությամբ 1903 թ. սկզբներին Ա. Կախոյանը, Մելիք Մելիքյանի հետ, այցելում է Լոռի, լինում Ալավերդու պղնձագործ բանվորների մոտ, Հաղպատում ու շրջակա գյուղերում՝ տարածելով հեղափոխական գաղափարներ: Նրանց անմիջական մասնակցությամբ նույն թվականի գարնանն ստեղծվում են Ալավերդու և Հաղպատի լենինյան իսկրայական կազմակերպությունները, որոնք ՌՍԴԲԿ II համագումարից հետո անվերապահորեն դառնում են բոլշևիկյան և շարունակում գլխավորել տեղի աշխատավորական մասսաների հեղափոխական ելույթները:

1903 թ. վերջերին Ա. Կախոյանը կրկին ձերբակալվում է Թիֆլիսում և աքսորվում, բայց ճանապարհին փախչում է Բաթում: Այնտեղ ընտրվում է ՌՍԴԲԿ Բաթումի կոմիտեի կազմում և եռանդուն հեղափոխական գործունեություն ծավալում քաղաքի ու շրջակայքի աշխատավորական մասսաների շրջանում: Նա ջանքեր չի խնայում ՌՍԴԲԿ II համագումարի որոշումների կենսագործման համար: Կախոյանը մեծ հնարամտությամբ կազմակերպում է լեգենդար Կամոյի (Սիմոն Տեր-Պետրոսյան) փախուստը Բաթումի բանտից: Նա Կամոյի, Ա. Ենուկիձեի, Մ. Բոչարիշվիլու, Ա. Խումարյանի և ուրիշների հետ կարևոր դեր է խաղում ընդհատակյա տպարանների ստեղծման, բոլշևիկյան մամուլի ու թռուցիկների տարածման, հեղափոխական զինված ջոկատների կազմակերպման գործում: 1904 թ. Ա. Կախոյանի ակտիվ միջամտությամբ աշխուժանում է Հաղպատի բոլշևիկների գործունեությունը:

1905 թ. սկզբներին Ա. Կախոյանը Բաթումից կրկին վերադառնում է Թիֆլիս և բոլշևիկների երկրամասային կենտրոնի հանձնարարությամբ եռանդուն կերպով մասնակցում նախ՝ քաղաքի աշխատավորության, ապա՝ Լոռու բանվորների ու գյուղացիների հեղափոխական ելույթներին: Թիֆլիսում նա, իբրև քաղաքի երրորդ շրջանի կուսակցական կազմակերպիչ, հաճախ է շփվում այնպիսի անվանի բոլշևիկների հետ, ինչպիսիք էին՝ Մ. Ցխակայան, Ստ. Շահումյանը, Ի. Ստալինը, Ս. Սպանդարյանը, Ս. Կասյանը, Ն. Ալաջալովան, Ս. Խանոյանը, Մ. Տորոշելիձեն և շատ ուրիշներ: ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի հանձնարարությամբ Ա. Կախոյանը 1905 թ. կազմակերպում է կաշեգործների արհմիությունը և ընտրվում դրա նախագահ, իսկ 1906 թ. սկզբներին Կովկասյան Միության կոմիտեի գործուղմամբ մեկնում է Լոռի՝ կուսակցական աշխատանքի, որտեղ գլխավորում է ՌՍԴԲԿ Լոռվա գավառային կոմիտեի գործունեությունը և մասսաների հեղափոխական ելույթները:

Ա. Կախոյանը Ալավերդու մոտ երեքհազարանոց պղնձագործ բանվորների 1906 թ. օգոստոսյան հայտնի գործադուլի կազմակերպիչներից էր: Այն ղեկավարելու համար Թիֆլիսից Ալավերդի էին եկել Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը: Գործադուլից հետո Կախոյանը

գավառի մի շարք գյուղեր ոտքի է հանում կալվածատերերի դեմ և ստիպում նրանց՝ կատարելու գյուղացիների մի շարք պահանջները: Արդյունավետ էին ելույթները հատկապես Կուրթանում և Հաղպատում:

Այնուհետև Կախոյանը կրկին մեկնում է Թիֆլիս և օգնում սոցիալ-դեմոկրատական «Կայծ» ու բոլշևիկյան «Նոր խոսք» թերթերի հրատարակմանը, «Բանվոր Խեչո» կեղծանվամբ թղթակցում դրանց:

Բոլշևիկների Լոռվա գավառային երկրորդ կոնֆերանսը, բարձր գնահատելով Ա. Կախոյանի ծառայությունները, Ստ. Շահումյանի և Մ. Ցխակայայի հետ նրան ընտրում է կուսակցության V համագումարի պատգամավոր: Լոնդոնի համագումարում նա անվերապահ քվեարկում է լենինյան բանաձևերի օգտին: Այստեղ նա առաջին անգամ հանդիպում ու լսում է Վ. Ի. Լենինին, որի հիմնական աշխատություններին լավ ծանոթ էր դեռ անցյալ դարի վերջերից, և ամբողջովին հմայված էր դրանցով: Հանդիպումը վճռական նշանակություն ունեցավ նրա կյանքում:

Համագումարից վերադառնալուց հետո, Ա. Կախոյանը, բոլշևիկների Անդրկովկասյան կենտրոնի հանձնարարությամբ, բազմաթիվ վայրերում պրոպագանդում է համագումարի որոշումները: Ռեակցիայի տարիներին նա դրսևորում է բոլշևիկներին հատուկ նույնպիսի կամք, վճռականություն և սկզբունքայնություն, ինչպես ռուսական առաջին հեղափոխության ժամանակ: Նա շարունակում էր աշխատանքը տանել Թիֆլիսի կաշեգործների արհմիությունում, Լոռու և Երևանի գավառային կուսակցական կազմակերպություններում: Նրա հեղափոխական գործունեությունը չի վրիպում ցարական ոստիկանությունից: 1908 թ. նրան ձերբակալում և բանտ են նստեցնում Երևանում, բայց, հանցանշաններ չհայտաբերվելու պատճառով, նա ազատվում է բանտից ու կրկին տեղափոխվում Թիֆլիս: 1910—1914 թթ. նրա ղեկավարությամբ շարունակում է գործել Թիֆլիսի կաշեգործ բանվորների արհմիությունը: Միության կուսակցական ղեկավարությունն ապահովվում էր այնպիսի նշանավոր բոլշևիկների օգնությամբ, ինչպիսիք էին՝ Ս. Սպանդարյանը, Ե. Ստասովան, Ս. Կասյանը, Ռ. Քաթանյանը և ուրիշներ: 1912 թվականին Լենայի դեպքերի կովկասյան արձագանքների շրջանում Ա. Կախոյանը մեկնում է Ալավերդի, կապվում տեղի բոլշևիկներ Ի. Խաչինի, Ֆ. Գարգալաջևի և այլոց հետ, նախապատրաստում ու անցկացնում պղնձագործ բանվորների գործադուլը, որը, սակայն, շուտով ճնշվում է: 1913 թ. սկզբներին կրկին վերադառնում է Թիֆլիս և շարունակում իր ընդհատակյա գործունեությունը:

Փետրվարյան հեղափոխությունից հետո Թիֆլիսում Կախոյանը, բոլշևիկների ղեկավար կենտրոնի հանձնարարությամբ, ակտիվորեն մասնակցում է տեղական կուսակցական կազմակերպությունների ամրապնդմանն ու սովետների ստեղծմանը: Նա ուժ ու եռանդ չէր խնայում երկրամասում սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման ու իրագործման համար: ՌԿ(բ)Կ Կովկասյան Երկրային կոմիտեի հանձնարարությամբ 1918 թ. սկզբներին Ա. Կախոյանը Գևորգ Ալիխանյանի և Նապոլեոն Անդրեասյանի հետ մեկնում է Լոռի և բազմաթիվ գյուղերում ստեղծում սովետներ: Նույն թվականի գարնանը նրա ղեկավարությամբ տեղի է ունենում Լոռու սովետների առաջին համագումարը, որը որոշում է բռնագրավել կալվածատերերի հողերը և ընտրում է ղեկավար օրգան: Համագումարից հետո ապստամբ գյուղացիները, բոլշևիկների ղեկավարությամբ, առաջին հերթին, բռնագրավում են կապիտալիստ Արամյանցի Ախթալայի կալվածքը և գավառը հռչակում սովետական: Ապստամբներին օգնելու համար այստեղ է գալիս նաև Ասք. Մռավյանը: Լոռու տեղական իշխանությունները չկարողացան ճնշել ապստամբությունը: Այն ճնշեցին այդտեղ թափանցած թուրքական օկուպանտները:

Ստեղծված իրադրությունն ստիպում է Կախոյանին՝ հեղափոխական գործունեությունը շարունակել Թիֆլիսում: Բայց 1919 թ. կեսերին Վրաստանի մենշևիկյան իշխանությունները նրան արտաքսում են դաշնակցական Հայաստան: Մեկնելուց առաջ նա անհրաժեշտ ցուցումներ է ստանում ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեից: Կոմունիստական աշխատանքն ուժեղացնելու համար Հայաստան էին եկել նաև Ս. Կասյանը, Ասք. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Խանոյանը, Ս. Մարտիկյանը և ուրիշներ: Նրանց ջանքերով 1919 թ. սեպտեմբերին տեղի է ունենում բոլշևիկների խորհրդակցություն, որտեղ ստեղծվում է ՌԿ(բ)Կ Հայաստանի Կոմիտե (Արմենկոմ): Խորհրդակցության ակտիվ մասնակիցներից էր նաև Ա. Կախոյանը, որը գերազանցապես գործում էր Լոռու գավառում:

1919 թ. հունվարի կեսերին անգլո-ամերիկյան իմպերիալիստների կամքով Լոռին դարձել էր «Չեզոք գոտի» և գտնվում էր դաշնակների, մենշևիկների ու օտարերկրյա իմպերիալիստների լծի տակ: Աշխատավորությունն անտանելի ծանր պայմանների մեջ էր և հանույքով էր ունկնդրում բոլշևիկներին: Ա. Կախոյանը, որպես ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի ներկայացուցիչ, հսկայական ջանքեր գործադրեց տեղական բոլշևիկյան կազմակերպությունների աճման ու ամրապնդման, ինչպես և հեղափոխական շարժումների ծավալման համար: Այդ առումով կարևոր դեր խաղացին նրա ղեկավարությամբ գումարված գավառային երեք կուսակցական կոնֆերանսները (1919 թ. օգոստոս, 1920 թ. փետրվար, 1920 թ. հուլիս): Գավառային կոմիտեների կազմում անփոփոխ կերպով ընտրվում էր նաև Ա. Կախոյանը: ՌԿ(բ)Կ Լոռու գավառային կազմակերպության երրորդ անլեգալ կոնֆերանսը (1920 թ. հուլիս) ընտրում է Արևելքի ժողովուրդների առաջին համագումարի 17 պատգամավոր, այդ թվում նաև Ա. Կախոյանին, որը նույն թվականի սեպտեմբերին մեկնում է Բաքու և մասնակցում համագումարին:



Ա. Կախոյանը Հայաստան է վերադառնում 1920 թ. նոյեմբերի 29-ին, դաշնակցության արյունոտ ռեժիմի տապալման օրը, Հայաստանի հեղափոխական կոմիտեի անդամների հետ միասին և մասնակցում հանրապետության կուսակցական ու պետական շինարարությանը, սովետական իշխանության լիակատար հաղթանակի ու ամրապնդման գործին: Դեռ Դիլիջանում Հայաստանի հեղկոմի կողմից նա նշանակվում է Ղարաքիլիսայի (Կիրովական) գավառային հեղկոմի անդամ: Ղարաքիլիսայում ընտրվում է կուսակցության գավառային կոմիտեի կազմում և լծվում ստեղծարար աշխատանքի՝ իր կապերը պահպանելով Լոռու գավառային կազմակերպության հետ:

1921 թ. փետրվարի 11-ի լույս 12-ի գիշերը Կախոյանը, գավառի աչքի ընկնող կոմունիստների հետ, զենքը ձեռքին գրոհի էր տանում Լոռու ապստամբ աշխատավորությանը: Ապստամբության հաղթանակի օրը նա վճռական մասնակցություն է ունենում Լոռվա գավառային հեղկոմի ստեղծման գործում, ապա կարմիր բանակի առաջավոր զորամասերի և գավառի ջոկատների հետ շարունակում է հետապնդել նահանջող թշնամուն, իր ավանդն է ներդնում նաև Վրաստանում սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարում:

Սովետական իշխանության տարիներին Ա. Կախոյանն զբաղեցրել է կուսակցական, սովետական ու տնտեսական տարբեր պաշտոններ և ուժ ու եռանդ չի խնայել նոր կյանքի կերտման համար, միշտ բարձր պահելով անխոնջ լենինյանի իր բարի համբավը: Ուր էլ եղել է, ինչ գործի էլ նրան ուղարկել է կուսակցությունը, նա այդ կատարել է ամենայն բարեխղճությամբ, ազնվությամբ ու նվիրվածությամբ: 1921 թ. նրան տեսնում ենք Վրաստանի կաշեգործների միության նախագահի, 1922 թ.՝ Լոռու գավառային հեղափոխական կոմիտեի, կուսգավկոմի անդամի ու գավհողբաժնի վարիչի, 1923—28 թթ.՝ Վրաստանի կաշեգործների տրեստի պատասխանատու աշխատակցի, 1928—30 թթ.՝ Հայաստանի կաշեգործների տրեստի նախագահի, 1930 թ.՝ ՍՍՀՄ կաշեգործների տրեստի անդրկովկասյան գրասենյակի պետի տեղակալի և այլ պաշտոններում: Տարբեր ժամանակներում նա ընտրվել է ՎԿ(բ)Կ Թիֆլիսի և ՀԿ(բ)Կ Երևանի քաղաքային կոմիտեների անդամ ու նույն քաղաքների սովետների դեպուտատ, Հայկոմկուսի կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի և ՀՍՍՀ Կենտգործկոմի անդամ, Վրաստանի կոմկուսի V համագումարի պատգամավոր, Վրաստանի կոմկուսի կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի անդամ և այլն:

Ա. Կախոյանը անսահման նվիրված էր կուսակցության գործին, անհաշտ էր լենինիզմի բոլոր թշնամիների նկատմամբ, հավատարիմ՝ կոմունիստների մեծ բանակի երկաթյա միասնության սկզբունքներին ու լենինյան նորմերին: Հասարակական արդար հարաբերությունների կերտման, կուսակցության նպատակների իրագործման համար մղվող պայքարը նրա կյանքի գերագույն նպատակն էր, որի համար նա ուժ ու միջոցներ չէր խնայում: Իր անսահման եռանդը գործադրում էր՝ ինչպես կարող էր. լիներ դա հին հասարակական հարաբերությունների վրա անմիջական գրոհ, թե մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կրքոտ պրոպագանդա,— բոլոր դեպքերում նա ազատության անվեհեր մարտիկ էր:

Ա. Կախոյանը բանվոր դասակարգի ու ամբողջ աշխատավորության կոմունիստական ապագայի համար մղվող պայքարում փորձել է նաև գրավոր պրոպագանդայի զենքը: Նրա բոլոր հոդվածներն էլ նպատակասլաց են, գրված կուսակցական դիրքերից: Ուշագրավ են 1901 թ. փետրվարի 18-ին «Բանվոր» թերթի համար նրա գրած և ցարական ժանդարմերիայի կողմից բռնագրավված, ինչպես նաև 1906 թ. հուլիսին «Նամակ Հաղպատից»՝ «Կայծ»-ում և նույն թվականի սեպտեմբերին «Նամակ Լոռուց»՝ «Նոր խոսք»-ում տպագրված հոդվածները: Կախոյանը ներկայացնում է Թիֆլիսի ու Բաքվի բանվորների անմարդկային շահագործման տխուր պատկերը և սոցիալ-դեմոկրատիայի դրոշով ընդհանուր թշնամու դեմ համատեղ պայքարի կոչ անում: Մերկացնելով Լոռու կալվածատերերի խարդախությունները ու դաժանությունները, նկարագրելով Հաղպատ և Կուրթան գյուղերի գյուղացիների հեղափոխական ելույթները, բացահայտելով դաշնակների ցուցաբերած ամոթալի վար-

քագիծը՝ նա ցույց է տալիս, որ, ինչպես ամբողջ բանվոր դասակարգի ու աշխատավորության, այնպես էլ հայ աշխատավորական մասսաների ու բոլոր ճնշվածների իսկական պաշտպանը հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան է (տե՛ս Ս. Կախոյան, Հոդվածներ և հուշեր, էջ 18—22, Երևան, 1963 թ.):

Առավել ուշագրավ են 1917—1920 թթ. գրած հոդվածները: «Բանվորի կռիվը» հայերեն բոլշևիկյան թերթի առաջին համարում զետեղած իր հոդվածում, դրվատելով դեպի «մեծ ազատությունը», դեպի կոմունիստական հասարակությունը տանող ճանապարհը լուսավորելու գործում «Պրավդա», «Սոցիալ-դեմոկրատ» և բոլշևիկյան այլ թերթերի դերը, նա հայ բանվորներին ու աշխատավոր մասսաներին կոչ է անում՝ օգնել «Բանվորի կռիվը» թերթին, հեռու մնալ բուրժուական ազգայնական գաղափարախոսության վնասակար ազդեցությունից, մտնել հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի շարքերը և գիտական կոմունիզմի ու մարտընչող ինտերնացիոնալիզմի դրոշով ընթանալ դեպի սոցիալիստական հեղափոխություն (նույն տեղը, էջ 25—26):

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո Ս. Կախոյանը գրում է բազմաթիվ հոդվածներ, մերկացնում Անդրկովկասի շահագործող դասակարգերի ու բուրժուա-նացիոնալիստական մուսավաթական, դաշնակցական և մենշևիկյան կուսակցությունների հակաժողովրդական քաղաքականությունը, պրոպագանդում սովետական իշխանության գաղափարը (տե՛ս «Էշելոնները», «Դիսցիպլինան հայ գնդերում», «Նամակ Սանահինից» և այլ հոդվածներ):

Սովետական իշխանության տարիներին նա կոմկուսակցության ու կառավարության որոշումների ոգով բազմաթիվ հոդվածներ է հրապարակում մամուլում («Մարտակոչ», «Կոմունիստ», «Պրոլետար» և այլ թերթերում)՝ նըվիրված երկրի տնտեսական կյանքի վերականգնման ու սոցիալիզմի կառուցման ամենատարբեր հարցերին: Այս շրջանում է նա գրում իր ծավալուն հուշերը, որոնք պատմակուսակցական և ճանաչողական լուրջ արժեք ունեն: Դրանցում ճշմարտացիորեն բացահայտված են Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական սոցիալ-դեմոկրատական շարժման պատմության բազմաթիվ հերոսական էջեր, որոնք դաստիարակչական մեծ դեր կարող են խաղալ մեր երիտասարդության համար: Հուշերում բավականաչափ վառ է արտացոլված մարքսիզմի և բուրժուական գաղափարախոսության հակամարտությունը: Ուշագրավ են Ս. Կախոյանի ասույթներն ու համոզմունքները դաշնակցության բուրժուական և հնչակյան մանրբուրժուական կուսակցությունների վերաբերյալ: Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի և մյուս մարքսիստ-լենինյանների նման Ս. Կախոյանը դաշնակցությունը որակում էր որպես հայ բուրժուազիայի կուսակցություն, նույնիսկ այն բանից հետո, երբ նա փետրազարդվեց սոցիալիստական ֆրազներով: Դաշնակներին նա համարում էր հայ բուրժուազիայի հավատարիմ ծառաներ ու թիկնապահներ, որոնք ամենաեռանդուն կերպով պաշտպանում էին ճնշողների ու կեղեքիչների շահերը: Նա մերկացնում էր ամբողջ հայ ժողովրդի ներկայացուցիչը լինելու դաշնակների հավակնությունների էությունն ու չարագուշակ հետևանքները, հայ բանվորների դասակարգային գիտակցությունը թմրեցնելու, համառուսաստանյան ընդհանուր դասակարգային պայքարից մեկուսացնելու և հայ բուրժուազիայի շահերին ենթարկելու նրանց նենգ ձգտումները: Նա հայ աշխատավորությանը կոչ էր անում համախմբվել հեղափոխական սոցիալ-դեմոկրատական կուսակցության շուրջը:

Ս. Կախոյանը կյանքից հեռացավ անժամանակ, իր ուժերի ծաղկման շրջանում (1939 թ.)՝ անջնջելի հետք թողնելով Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժումների և երկրամասում սովետական կարգերի հաստատման ու սոցիալիզմի կառուցման համար մղվող հերոսական պայքարի պատմության ոսկետառ մատյանում:

Վ. Ն. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## ՄԻԼԻՈՆՆԵՐԻ ՍՐՏԻ ԽՈՍՔԸ

Վերջերս «Հայաստան» հրատարակչությունը ռուսերեն երկրորդ լրացված հրատարակությունից թարգմանաբար լույս է ընծայել **Նամակներ Վ. Ի. Լենինին արտասահմանից** ժողովածուն*: Գրքում զետեղված 225 փաստաթղթերում (որոնց մեծ մասը տպագրվում է առաջին անգամ) արտահայտված են մոլորակի միլիոնավոր ժողովուրդների տածած սերն ու հարգանքն այն մարդու նկատմամբ, որի ղեկավարությամբ վերափոխվեց աշխարհի մեկ երրորդ մասը: «Դրանք փոքրիկ մասնիկ են այն նամակների ու հեռագրերի, երկտողների ու հիշողությունների, բանաձևերի ու երդումների վիթխարի հոսանքի, որոնցով մեր մոլորակի ժողովուրդները դիմում էին Լենինին»,— գրում է նախաբանի հեղինակ Վ. Վ. Անիկեևը:

Ժողովածուն ունի վեց բաժին: **Մինչհոկտեմբերյան տարիներին** բաժինը նվիրված է Վ. Ի. Ուլյանովի էմիգրացիայի ժամանակաշրջանին: Թաքնվելով ցարիզմի հետապնդումներից, Իլյիչն ապրում էր ո՛չ միայն Ռուսաստանում, այլև արտասահմանյան տարբեր երկրներում. նրա հասցեով նամակներ էին ստացվում Ճապոնիայից ու հեռավոր Ամերիկայից, Շվեյցարիայից, Հոլանդիայից և այլ երկրներից:

1905 թ. արյունոտ կիրակին, 1912—1913 թթ. բալկանյան պատերազմը ցնցեցին ողջ աշխարհը: Իլյիչին գրած մի նամակում ֆրանսիական սոցիալ-դեմոկրատները ողբում են դժբախտությունն այն բանակի, որը չկարողացավ ճանաչել իր բարեկամներին (նկատի ունեն գնդակահարվող բանվորներին): Նրանք հանգանակություն են անում հօգուտ գնդակահարվածների:

1915 թ. երկրում մոլեգնում է պատերազմի մարդակուլ բոցը: Երկրորդ Ինտերնացիոնալում միայն բոլշևիկներն են հանդես գալիս հետևողական մարքսիզմի պաշտպանությամբ: Լենինը մեծ ջանքեր էր գործադրում միջազգային բանվորական շարժման մեջ եղած ինտերնացիոնալիստական ուժերը համախմբելու համար: Սկսվում է Վ. Ի. Լենինի, Դ. Վայնկոպի, Ա. Պաննեկուկի և այլոց նամակագրությունը, որտեղ կենտրոնական հարցը Ցիմերվալդի կոնֆերանսի հրավիրումն էր: «Ես կուզեի հարցնել Ձեր կարծիքը սոցիալ-դեմոկրատիայի հենց այն ֆրակցիաների՝ ներկայումս նորից պլանավորվող միջազգային կոնֆերանսի մասին, գրում է հոլանդական ձախ սոցիալ-դեմոկրատ Վայնկոպը Իլյիչին,— որոնք իրոք ուզում են մի որևէ բան անել ընդդեմ պատերազմի...»: Նա ցանկանում է իմանալ Իլյիչի կարծիքը 1915 թ. սեպտեմբերին Ցիմերվալդում գումարվելիք՝ սոցիալիստների միջազգային կոնֆերանսի մասին, որը պատրաստվում է հրավիրել իտալական կուսակցությունը: Իմ կարծիքով,— գրում է նա,— ներկա մոմենտում դա չի կարող մեծ նշանակություն ունենալ... Բայց դա միայն իմ անձնական կարծիքն է, և ես շատ կուզենայի իմանալ Ձեր կարծիքը (փաստաթուղթ 12):

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց համաշխարհային պատմության մեջ: Ստեղծվեց բանվորա-գյուղացիական առաջին պետությունը: Ինչպես Ռուսաստանի, այնպես էլ ողջ երկրի աշխատավոր ժողովուրդը ցնծությամբ ընդունեց պատմական այդ իրադարձությունը: **Հոկտեմբերյան դարաշրջանի ծնունդը** բաժնում (1917—1924 թթ.) են զետեղված աշխարհի հասարակ մարդկանց հուզիչ ու անկեղծ նամակները՝ հասցեագրված Վլադիմիր Իլյիչին: Մի նամակով Ամերիկայի, Ֆրանսիայի և Անգլիայի բանվորական մամուլին ինֆորմացիա հաղորդող միջազգային ասոցիացիայի ներկայացուցիչ Ն. Կուեն հավաստիացնում է Վլադիմիր Իլյիչին, որ ասոցիացիայի միջոցով տեղեկությունները կհաղորդի ամբողջ բանվորական մամուլին և ինտերնացիոնալիստական նկրտումներ ունեցող օրգաններին:

* *Նամակներ Վ. Ի. Լենինին արտասահմանից, «Հայաստան» հրատ., 1973, 439 էջ:*

1917 թ. դեկտեմբերի վերջին ամերիկյան բանվորները Սովետական Ռուսաստանի
բանվորներին ուղղած ողջույնում (փաստաթուղթ 25) գրում են. «Դուք՝ ռուս բանվոր-
ներդ, ձեր ձեռքը վերցնելով վերահսկողությունը և ստեղծելով նոր հասարակարգ, կեր-
տում եք ավելին, քան ձեր սեփական ապագան. դուք ոգեշնչում և արագացնում եք հե-
ղափոխական շարժումը, որի նմանը աշխարհը դեռ երբեք չէր տեսել»: Այնուհետև
նրանք մանրամասն ծանոթացնում են «ազատ Ամերիկայում» գոյություն ունեցող իրա-
վիճակին:

Գերմանիայից, Անգլիայից, Հունգարիայից, Չինաստանից և այլ երկրներից ստաց-
ված նամակների հեղինակներն իրենց հիացմունքն են հայտնում Վ. Ի. Լենինի, կոմունիս-
տական կուսակցության նկատմամբ: Ռուսաստանի օրինակով «սկսում է արթնանալ Գեր-
մանիան»,— գրում է Հերման Հորտերը:

Կլարա Ցետկինը, ողջունելով Իլյիչին և նրա բարեկամներին, գրում է. «Ես... շունչս
պահած հետևում եմ Ռուսաստանից ստացվող լուրերին: Այնտեղ մեծ գործեր են կատար-
վում մարդկության համար... Ա՜յ թե բոլոր երկրների պրոլետարները, վերջապես, արժանի
դառնային ձեզ, արժանի՝ ռուս պրոլետարներին ու [ժողովրդական] մասսաներին
(փաստաթուղթ 28):

Տպագրված նամակներում մարմնացած են համաշխարհային պրոլետարիատի ա-
ռաջավոր ջոկատների հեղափոխական ձգտումներն ու ոգորումները, որոնց կենսա-
գործման փայլուն սկիզբը նրանք, իրավամբ, տեսնում էին Հոկտեմբերյան հեղափոխու-
թյան մեջ: Այս նամակներում աշխարհի պրոլետարիատն իր զայրույթն է հայտնում բուր-
ժուազիայի, համաշխարհային իմպերիալիզմի և հակահեղափոխության սայլին լծվածնե-
րի, բանվոր դասակարգի ամենաոխերիմ թշնամիների նկատմամբ, ովքեր ցանկանում էին
սպանել Վլադիմիր Իլյիչին, խորտակել պրոլետարիատի նորաստեղծ դիկտատուրան:
Սակայն այն վեհ լոզունգները,— գրում են լեհական սոցիալիստական կուսակցության
Մոսկվայի սեկցիայից,— որոնցով ընկեր Լենինը Ռուսաստանի պրոլետարիատին կոչում
էր դեպի Հոկտեմբերյան հեղափոխություն, չեն լռի, մինչև որ աշխարհում լիակատար
չհաղթանակի նրա սկսած գործը: Նրանք հավատացած են, որ Իլյիչն իրեն հատուկ ե-
ռանդով ու երկաթյա կամքով Ռուսաստանի պրոլետարիատին կառաջնորդի դեպի սո-
ցիալիզմի լիակատար հաղթանակը (փաստաթուղթ 30):

Բուրժուազիայի կողմից ուղարկված դաժանակալ մարդասպանի գնդակով ծանր վի-
րավորված է Իլյիչը: Աշխարհի բոլոր ծայրերից հեռագրեր, նամակներ են ուղղվում ժո-
ղովրդական կոմիսարների սովետի նախագահին. դրանք արտահայտում են աշխատա-
վորների խոր զայրույթն ու ցասումը նորաստեղծ երկրի ատելի թշնամիների հանդեպ,
սրտացավ տագնապ պրոլետարիատի մեծ առաջնորդի կյանքի, առողջության համար:

1918 թ. օգոստոսին Ֆինլանդիայի կոմունիստական կուսակցության հիմնադիր հա-
մագումարը (փաստաթուղթ 29) միջազգային հեղափոխական բանվորական առաջնոր-
դին հղած նամակով երախտագիտության իր խոր զգացումն է հայտնում կոմունիստա-
կան ուսմունքի համար և հուսով է, որ նա կդիմանա վիրավոր մարտիկի ամբողջ ցավին
ու տառապանքին և, լիովին ապաքինված, շուտով կկարողանա իրեն հատուկ անխոնջ
եռանդով կրկին ստանձնել Սովետական Սոցիալիստական Հանրապետության ղեկը, նոր
հաղթանակներով պսակել սոցիալիզմի վերընթացը:

Հետաքրքրությամբ են կարդացվում Հարավսլավիայից, Կոլումբիայից, Մեքսիկայից,
Իտալիայից և այլ երկրների կոմունիստական կուսակցության ղեկավարներից, բանվոր-
ներից, կարմիրբանակայիններից ստացված նամակները:

1920 թ. օգոստոսի 15-ին հարավսլավցի կարմիրբանակայինը եպարտությամբ է
գրում, որ Հարավսլավիայի բանվորներին ու գյուղացիներին անվանում են պրոլետարա-
կան մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի «զավակները», որի առջև դողում է ամբողջ համաշ-
խարհային բուրժուազիան և որը բանվորներին առաջնորդում է ազատագրվելու կապի-
տալի լծից:

Կոլումբիայից դոկտոր Խոզե Գոմեցը Վլադիմիր Իլյիչին հասցեագրած նամակում իր
հիացմունքն է հայտնում Լենինի և նրա ընկերների նկատմամբ. նրանք կարողացան հին
Ռուսաստանի ավերակների վրա ձեռնարկել սոցիալիստական շինարարության այդ վիթ-
խարի աշխատանքը: Նա խնդրում է Իլյիչին ուղարկել գրքույկներ, ամսագրեր, գրքեր,
թերթեր, որովհետև, նրանք չգիտեն «...այն մեծ շարժումների մասին, որոնք խոս-
տանում են փոխել մարդկությանը կառավարող տնտեսական օրենքները. դա ավելի ևս
ծանր է, որովհետև մենք ապրում ենք այնպիսի մի երկրում, որը հատկապես ամուր է



կառչած հին սիստեմներին, բայց այստեղ մենք ունենք մեր երիտասարդությունը՝ առողջ,
մտածող, անկախ, ունակ ուսումնասիրելու ամեն բան...» (փաստաթուղթ 69):

Երիտասարդական ջերմ շնչով է տոգորված կոմունիստական երիտասարդության
մեքսիկական ֆեդերացիայի անդամների նամակը Իլյիչին՝ որպես համաշխարհային սո-
ցիալիստական հեղափոխության ղեկավարի: Մեծ վստահություն տածելով Լենինի նկատ-
մամբ, նրանք խնդրում են ցուցում տալ հեղափոխական գործունեության տակտիկայի
վերաբերյալ:

Գրախոսվող գրքում զետեղված են նաև Վ. Ի. Լենինին հասցեագրված այն նամակ-
ները, որոնց հեղինակները խնդրում են, որպեսզի արտասահմանում հրապարակվի նրա
աշխատությունները: Թարգմանելով **Պետություն և հեղափոխություն** գիրքը, 1918 թ.
հոկտեմբերի 24-ին Հերման Հորտերը խնդրում է հեղինակի գրավոր թույլտվությունն
այն Հոլանդիայում հրապարակելու համար: Ձեր՝ **Պետություն և հեղափոխություն** գիրքը՝
կարդացի մեծ գոհունակությամբ, —գրում է նա:— Այն իսկական տպավորություն
կգործի նաև Հոլանդիայում: Իսկ Ֆրից Պլատեն՝ **Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի
բարձրագույն ստադիա** երկը համարում է լավագույն աշխատությունը (փաստա-
թուղթ 45):

Գերմանիայի միացյալ կոմունիստական կուսակցության Բինգեն-Ալցեյ շրջանի կազ-
մակերպության քարտուղար Յակոբ Էկերտը 1921 թ. հունիսի 3-ին գրել է. «Ձո **«Ձախու-
թյան» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ** գրքույկի ուսումնասիրությունն իսկ
ինձ համոզեց, որ մարտյան կամպանիայի տակտիկան հակասում էր կոմունիստական
տակտիկայի բոլոր սկզբունքներին» (փաստաթուղթ 68):

Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության քարտուղարությունից ստաց-
ված նամակով է ավարտվում գրքի երկրորդ բաժինը: Մորավացի կին պատգամավորներն
իրենց երախտագիտության խոսքն են հղում Վլադիմիր Իլյիչին և ցանկանում նրան լիա-
կատար առողջություն այն ամենի համար, որ նա կատարեց հանուն համաշխարհային
ինտերնացիոնալիզմի գաղափարի հաղթության:

**Խոսում են պայքարի ընկերները** բաժնում (երրորդ բաժին) տպագրված են 1920 թ.
հուլիսին Պետրոգրադում կայացած Կոմինտերնի II կոնգրեսի մասնակիցների տպավո-
րությունները մեծ առաջնորդի մասին: «Կոնգրեսի պատգամավորներն ընկեր Լենինի
մասին» ալբոմում աշխարհի տարբեր լեզուներով սևեռված են կոմունիստական ու բան-
վորական կուսակցությունների ներկայացուցիչների տպավորությունները: Այս նշումնե-
րում ևս աշխարհի շատ ժողովուրդներ իրենց սերն են արտահայտում Լենինի նկատ-
մամբ:

Ամերիկայի կոմունիստական բանվորական կուսակցության ներկայացուցիչ, ակա-
նավոր ժուռնալիստ Ջոն Ռիդը, Լենինին համարելով պատմության լոկոմոտիվը, հիացած
է նրա մարդկայնությամբ, հեռատեսությամբ և անսասանությամբ: Իսկ Թուրքիայի
կոմունիստների կողմից II կոնգրեսի մասնակից Իսմայիլ Հակկին, Լենինին համարելով
Մարքսի գաղափարները կենսագործող և փիլիսոփա, մեծ մարտիկ, նոր աշխարհի կա-
ռուցման ծրագիրն իրականացնող, մեծ մտածող ու մեծ գործիչ, գրում է. «Արևելքը շատ
է տեսել ավազակային հարձակումներ, նա համբերությամբ կրել է արյունահեղություն-
ներ, ագահ նվաճողների հորդաների ավերիչ ասպատակություններ, արշավանքներ ու
աղետներ: Բայց Լենինը լիակատար վստահությամբ ու հարգանքով վերաբերվեց Արե-
վելքին, նրան դուրս բերեց ճշմարիտ ու երջանիկ ուղի:

Կեղեքվածների երջանկության մասին հոգացող մարդկանցից ամենամեծը Լենինն
է: Լենինը ազատության և մարդասիրության պաշտպանն է... Եվ, եթե խոսելու լինենք
պատմության ամենապանծալի էջերի մասին, ապա Արևելքում ապրող ազգերը, արևել-
յան ժողովուրդները, Եվրոպայի կեղեքյալները... ամենաարդար և ամենահիանալի մար-
դը համարում են Լենինին» (փաստաթուղթ 114):

Կոնգրեսի յուրաքանչյուր մասնակցի տպավորությունը Լենինի նկատմամբ աշխար-
հի ժողովուրդների տածած ջերմ զգացմունքների վկայությունն է: Նրանք Լենինին սի-
րում են այն բանի համար, որ նա անխոնջ աշխատող է,— գրում են ֆրանսիական մե-
տաղագործների ու հողափորների արհմիությունների պատգամավորները,— խիզախ ա-
ռաջնորդ, տեսաբան և կայուն հեղափոխական: Իսկ ԱՄՆ-ի կոմկուսակցության ներկայա-
ցուցիչ, կոշկակար Մ. Շվարտցը գրում է, որ նրան ո՛չ միայն սիրում են նրա բարեկամ-
ները, նրա մեծությունը չեն հերքում և թշնամիները (փաստաթուղթ 134):

Վլադիմիր Իլյիչի մասին իրենց հիացական խոսքն են ասել նաև իռլանդական բան-

վորական կուսակցության ներկայացուցիչ Պատրիկ Կվինլանդը, անգլիական սոցիալիստ և արհմիութենական գործիչ Վ. Մակ-Լեյնը, Շվեդիայի ձախ սոցիալ-դեմոկրատական կուսակցությունից Կատա Դալյստրեմը և շատ ուրիշներ:

**Լենինի մասին արտասահմանյան բարեկամների հուշերից** խորագիրը կրող բաժնում իրենց հանդիպումներն են վերապատմում Ջոն Ռիդն ու նրա կինը՝ ժուռնալիստ Լուիզա Բրայանտը, ամերիկյան թղթակից Մակ Բրայդն ու Թոմաս Բելը, Կլարա Ցետկինը, ճապոնական և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ Սեն Կատայաման և ուրիշներ: Բոլորն էլ շատ բարձր են գնահատում այդ համեստ, հազվագյուտ մտքի տեր մարդուն:

Այս բաժնում զետեղված է նաև մի «հասարակ» մարդու՝ Փարիզում Վլադիմիր Իլյիչի հիմնած խմբակի անդամ Պալ Պետրովսկու նամակը: Նա գրում է. Էմիգրանտների շրջանում նկատվում էր, որ Իլյիչը ղեկավար գործիչ է: ...Սկզբնական շրջանում այդ ամբողջ տեսածից ու լսածից միայն մի բան հասկացա՝ այն, որ մասնակցում եմ ինչ-որ քաղաքական խմբակի պարապմունքների: Վլադիմիր Իլյիչն իր վճռականությամբ և այն զարմանալի տրամաբանությամբ, որով բացատրում էր այս կամ այն հարցը, խոր տպավորություն գործեց ինձ վրա... Բայց ինձ գերեց... նրա պարզությունը, անմիջականությունը (փաստաթուղթ 190):

Լուիզա Բրայանտը հիացմունքով է պատմում Վլադիմիր Իլյիչի բնակարանի համեստության, մաքրության, Իլյիչի և Նադեժդա Կրուպսկայայի փոխըմբռնման, փոխադարձ սիրո, բարեկամության մասին: «Նադեժդա Կոնստանտինովնան օժտված է նույն հմայքով, ինչ Լենինը, և ճիշտ այնպես էլ կարողանում է իր ամբողջ ուշադրությունը կենտրոնացնել այն բանի վրա, ինչ ասում է զրուցակիցը»,— գրել է Բրայանտը:

Գրքի հինգերորդ բաժինն ավարտվում է գերմանական ու միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության պրեզիդենտ Վիլհելմ Պիկի վերհուշով: Նա պատմում է 1921 թ. հոկտեմբերի և նոյեմբերի իրենց հանդիպումների, 1924 թ. հունվարին Լենինի մահվան և 1925 թ. նոյեմբերին նրա դամբարանն այցելելու մասին:

Ժողովածուի վեցերորդ բաժնում **(Լենինի Կրեմլյան բնակարանից)** ամփոփված են Լենինի Կրեմլյան աշխատասենյակն ու բնակարան-թանգարանն այցելողների տպավորությունները:

Իտալիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի քարտուղարության անդամ, Իտալիայի դեպուտատների պալատի փոխնախագահ Էդուարդո Դ'Օնոֆրիոն 1955 թ. օգոստոսի 18-ին, այցելելով Վ. Ի. Լենինի բնակարանը, գրել է. «Ես լենինիզմի նոր դաս ստացա: Զարմանք պատճառեց նրա բնավորության մարդկայնությունը, կյանքի պարզությունն ու համեստությունը, նրա սերը և նրա կարգապահությունը աշխատանքում» (փաստաթուղթ 205): Իսկ Եմենի Արաբական Հանրապետության պրեմիեր մինիստր Հասան ալ-Ամրին, Լենինի կյանքը համարելով աշխարհի բոլոր երկրների ամենապայծառ օրինակը, նշել է. «Եմենի պատվիրակության անդամներն այցելեցին այն մեծ մարդու բնակարանը, որը փառապանծ էջ գրեց մարդկության պայքարի պատմության մեջ...» (փաստաթուղթ 225):

Ժողովածուն բնորոշ է ու հետաքրքրական նաև նրանով, որ այնտեղ զետեղված են Վ. Ի. Լենինի մի քանի պատասխան-նամակները, որոնք բնորոշում են աշխարհի ամենամեծ մարդու մտքի պայծառությունն ու խորությունը:

Այս արժեքավոր ժողովածուի չորրորդ բաժինն **(Աշխարհի ժողովուրդների մեծ վիշտը)** ընդգրկում է մեծ առաջնորդի մահվան կապակցությամբ ստացված փաստաթղթերը, որոնք արտահայտում են բազմաթիվ ականավոր հեղափոխականների ու առաջավոր մտածողների անհուն վիշտը:

Ընթերցողին մեծապես օգնում են գրքի ռուսական հրատարակչության կողմից կազմված համակողմանի ու հարուստ ծանոթագրությունները՝ տպագրված նամակների հեղինակների մասին: Գիտական բնույթ ունեցող այդ ծանոթագրությունները զգալիորեն կընդլայնեն ընթերցողների մտահորիզոնը:

Սխալված չենք լինի, եթե ընթերցողների կողմից մեր գոհունակությունը հայտնենք «Հայաստան» հրատարակչությանը, որը պատշաճ խնամքով ու որակով հրատարակել է սույն ժողովածուն, թեև որոշ էջերում աչք են ծակում տեխնիկական բնույթի թերությունները: Լեզվական մասնակի անհարթությունների մասին ավելորդ ենք համարում խոսել:

ԶԵՓՅՈՒՌ ԱՍԱՏՐՅԱՆ

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՊԵՐՃԱԽՈՍ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ

Վերջերս լույս տեսավ «Պրավդան» Հայաստանի մասին ժողովածուն*): Այնտեղ ամփոփված մոտ 450 նյութերը սերտորեն միահյուսվելով, շարունակելով ու լրացնելով միմյանց՝ յուրովի վերապատկերում են ոգորումներով, անդուլ աշխատանքով, վերելքներով ու հաղթանակներով հատկանշվող այն ուղին, որ անցել է հայ ժողովուրդը իր երկհազարամյա պատմության վերջին կես դարում:

Ժողովածուի նյութերը կարդալիս նորից հպարտությամբ տեսնում ես, որ ազգային ու սոցիալական վերածննդի, մեծ զարթոնքի տարիներ են եղել դրանք, և վերստին խորհում ես. փյունիկի նման մահվան մոխիրներից հառնել է պատմության քառուղիներում խաչված ու արյունաքամ ժողովուրդը, ձյարձակել է հողմերից ու արհավիրքներից բզկտված դարավոր կաղնին, լցվել նոր կենսահյութով ու արևով և իր սաղարթներն է տարածել հավերժորեն խըշշացող այն մեծ անտառում, որի անունն է՝ սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիք:

Թերթում ես ժողովածուն, և փաստերը, թվերը, արձագանքները,— «Պրավդայի» էջերում վավերագրված բազմազան վկայությունները,— պատմում են քեզ հավաստի մի եղելություն, որ նաև հրաշքի է նման. քայլ առ քայլ, տարեցտարի, հրադարձությունից-հրադարձություն ամբողջանում է մեծ վերաշինության, ժողովրդի իսկական հարության նորօրյա սաքը:

Ահա մի քանի վկայակոչում այդ տարեգրությունից:

— Երկիրն ամենուրեք իսկական մրջնանոցի է նման: Աշխատանքը բառացիորեն եռում է բոլոր անկյուններում և ամեն մի քայլի վրա... Երևանը ժպտում է, փողոցներում՝ մարդկային զանգվածներ, կյանքը թունդ է առնում և, որ գլխավորն է, երևում է ստեղծագործ մի ձեռք, որն ավլում-սրբում է ամենայն հինն ու ոչ պիտանին և ստեղծում է նոր, երջանիկ ու բոլորի համար օգտակար մի կյանք («Պրավդա», 1922, № 162):

— Երևանի ծայրամասում, Զանգու գետի վրա, կառուցվում է «տեղական մասշտաբով հզոր էլեկտրակայան». այն «նախատեսված է լուսավորման համար, արդյունաբերության ըսպասարկման և ջրազուրկ տարածությունները ոռոգելու նպատակով գետի ջուրը բարձրացնելու համար»: «Մի խումբ բանվորներ, մինչև ծնկները ջրի մեջ, մաքրում են հատակը: Նըրանց գործիքները բահերն են, միայն բահերը...» («Պրավդա», 1924, № 284):

— Այժմ Հայկական ՍՍՀ-ում կա 600 արդյունաբերական ձեռնարկություն, որոնցում աշխատում են ավելի քան 200 հազար բանվորներ ու մասնագետներ...» («Պրավդա», 1967, № 101):

— «Բուռն զարգացում է ապրել հանրապետության ինդուստրիան. արդյունաբերական արտադրանքի ծավալը 744 անգամ գերազանցում է 1922 թվականի մակարդակը: Հայաստանի ձեռնարկությունների մակնիշը կրող արտադրանքներ են արտահանվում արտասահմանյան 70 երկրներ» («Պրավդա», 1972, № 353):

Այսպես կարելի է բազմաթիվ համեմատություններ անցկացնել, «Պրավդայի» տարեգրած պատմությունից բերել շատ փաստեր ու թվեր, որոնք վկայում են նաև գյուղատնտեսության, ժողովրդական կրթության, գիտության ու մշակույթի բնագավառների աննախադեպ նվաճումների, իրոք հրաշալի թռիչքի մասին:

***

«Պրավդան» Հայաստանի մասին ժողովածուն կազմված է ժամանակագրական ընդգըրկման սկզբունքով՝ սկսած 1913 թվականից մինչև 1972 թվականի վերջը, երբ նշվեց ՍՍՀՄ

---

* «Правда» об Армении, *Երևան, 1973, «Հայաստան» հրատ., 477 էջ: Ժողովածուն հրատարակության է պատրաստել ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը՝ Գ. Ղարիբջանյանի, Ս. Բաղդասարյանի և Գ. Առաքելյանի խմբագրությամբ: Կազմողներ՝ Գ. Առաքելյան (ղեկավար), Բ. Անանիկյան, Լ. Առաքելյան, Հ. Իսահակյան, Լ. Ղարագուլյան, Մ. Նիկողոսյան, Ա. Սադաղյան, Ս. Սարգսյան:*

կազմավորման 50-ամյա փառապանծ հոբելյանը:

Նախասովետական Հայաստանին վերաբերող նյութերն արտացոլում են հեղափոխական շարժումները, կուսակցական աշխատանքը, մերկացնում-քննադատում են դաշնակցության գործելակերպը:

1920 թվականի դեկտեմբերի 4-ին «Պրավդան» տպագրեց Վ. Ի. Լենինի հեռագիրը Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեի նախագահին: Համաշխարհային հեղափոխության առաջնորդը ողջունում է իմպերիալիզմի լծից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին:

Նոր էջ բացվեց հայ ժողովրդի տառապալից պատմության մեջ. սկսվեց վերածննդի ու զարթոնքի դարաշրջանը, որի ամենաբնորոշ հատկանիշներից մեկը դարձավ սովետական ժողովուրդների բարեկամության, փոխադարձ օգնության ու եղբայրական միասնության վրա խարսխված ինտերնացիոնալ անխախտ դաշինքը՝ ազգային հանրապետությունների սոցիալիստական բարգավաճման հիմքն ու երաշխիքը: Այս պատմական իրողության բազում ապացույցներն ենք տեսնում նաև քննարկվող ժողովածուի նյութերում: ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության թեման այն հենքն է, որի վրա հյուսված է Հայաստանի և հայ ժողովրդի մասին «Պրավդայի» էջերից հնչող պատմությունը:

Սովետական Հայաստանին առաջին իսկ օրերից եղբայրական օգնության ձեռք մեկնեցին Ռուսաստանյան Ֆեդերացիայի, սովետական մյուս հանրապետությունների աշխատավորները: Այդ բազմակողմանի աջակցության, առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնության շնորհիվ էր, որ հնարավոր դարձավ փակել սովի ու համաճարակների մահաբեր ճանապարհը, վերականգնել քայքայված տնտեսությունը, կառուցել ոռոգիչ ջրանցքներ, հիմնել գործարաններ ու ֆաբրիկաներ, ծավալել կուլտուրական բուռն շինարարություն...

*1922 ԹՎԱԿԱՆ...*

Մորեխը ծանր վնաս է հասցրել ցանքսին. Զանգեզուրում սով է: Եվ ահա նոյեմբերի 14-ին Հայաստան է հասնում Ռուսաստանից ցորեն բերող առաջին գնացքաշարը՝ 35 վագոն...

Այդ օրերին հրապարակված մի այլ հաղորդման մեջ կարդում ենք. «Ռուսաստանյան Ֆեդերացիայի Կենտգործկոմի կարգադրությամբ նախօրոք Ռուսաստանի հյուսիսի համար նախատեսված հացահատիկ տանող գնացքը ենթակա է անհապաղ Հայաստան ուղարկվելու»...

Ռուս եղբայրներից ժամանակին ստացած օգնության համար հայտնելով իրենց պրոլետարական շնորհակալությունը՝ Հայաստանի աշխատավորները որոշեցին նոր տարվա նախօրեին Մոսկվա ուղարկել 25 վագոն խաղողի գինի...

*1926 ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐ...*

Տարերային աղետը՝ երկրաշարժը, մեծ վնաս է հասցրել Լենինականի տնտեսությանն ու ազգաբնակչությանը: «Պրավդայում» հաջորդաբար հրապարակվում են Անդրկովկասյան հանրապետությունների օգնությունը, Շարունակվում է օգնությունը Լենինականին, Օգնություն Լենինականի բնակչությանը և այլ խորագրերով նյութեր: «Անդրկովկասի և ՍՍՀՄ բոլոր ծայրերից ստացվում են շինանյութերի, մթերքների, գործիքների բեռներ»— հաղորդում էր «Պրավդան»: Ադրբեջանի նավթագործներն ուղարկել են երկու վագոն ալյուր և մեկ ցիստեռն բենզին, Դաղստանից ստացվել է երկու վագոն լուսամուտի ապակի, Ստալինգրադից՝ 16 վագոն տախտակ, Մոսսովետը հատկացրել է 50 հազար, Օդեսայի օկրուգային սովետը՝ 3 հազար ռուբլի...

*1972 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐ...*

Բարեկամության ճանապարհներով ընդհանուր խորագրի ներքո «Պրավդայում» տպագրված հոդվածում կարդում ենք. «...Այսօր միութենական բոլոր հանրապետություններից ապրանքատար երկաթուղային գնացքներ են գալիս Երևան: Հայաստանը սովետական եղբայր-ժողովուրդներից ստանում է ավելի քան տասը հազար անուն ապրանքներ: Իսկ այստեղից Սովետական Միության բոլոր անկյուններն են գնում «Պատրաստված է Հայաստանում» նշումն ունեցող արտադրանքով ծանրաբեռնված գնացքները»:

Սովետական Հայաստան այցելած Հանրի Բարբյուսը, մամուլի ներկայացուցիչներին հանձնած հայտարարության մեջ, ընդգծում էր. «...Հայաստանի բարեկեցությունը կառուցվում է ռուսական պրոլետարիատի ցույց տված օգնության վրա: Այդ օգնությունը ոչ թե բարեգործություն է, այլ պրոլետարիատի իսկական համագործակցություն՝ Հայաստանին օգնելու նպատակով» («Պրավդա», 1927, № 245):

Լավ է ասված՝ ոչ թե բարեգործություն, այլ պրոլետարական համագործակցություն: Եվ դա էլ հենց մեր հայրենիքի ժողովուրդների եղբայրության էությունն է: Այս ըմբռնումից ելնելով՝ «Պրավդան» լուսաբանել-արտացոլել է Հայաստանի և ՍՍՀՄ մյուս հանրապետությունների փոխադարձ օգնության ու համագործակցության կոնկրետ փաստերը, արել ճշմարիտ եզրակացություններ: Ժողովրդական տնտեսության վերականգնման արդյունքներն ամփոփող Հայաստանի վերածնունդը խորագրով հոդվածը վերջանում է այսպիսի նշանակալից ընդհանրացումով. «Այդ հաջողություններին Սովետական Հայաստանը հասել է միայն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության բանվորների և գյուղացիների եղբայրական օգնության շնորհիվ» (1925, № 260):



Ինչի մասին էլ որ գրել է «Պրավդան»,— Լենինականի, Քութայիսիի և Կիրովաբադի աշխատավորների սոցիալիստական մրցության, թե Երևանի նորաբաց Կիևյան փողոցի, Ղարադաղ—Երևան գազուղու կառուցման, թե Հայաստանում տեղի ունեցող Ուկրաինայի օրերի, ֆաշիզմի դեմ մղված մահու-կենաց մարտերի, թե Սևանի ջրերը պահպանելու համար ծավալված աննախադեպ շինարարության,— ամենուրեք տեսել և ընդգծել է սովետական ժողովուրդների եղբայրության հրաշագործ ուժը:

***

«Պրավդայի» էջերում ուրույն տեղ ունեն Հայրենական մեծ պատերազմին հայ ժողովրդի մասնակցությունը լուսաբանող նյութերը: Արհավիրքի հենց առաջին օրերին հրապարակվեց Կարագյոզյան յոթ եղբայրների երդումը խորագրով փոքրիկ հաղորդումը.

«Մոբիլիզացիոն հավաքակայաններից մեկը եկավ բանվոր Գալուստ Կարագյոզյանը:

— Իմ երկու եղբայրները,— ասաց նա,— արդեն կռվում են անարգ թշնամու դեմ: Այսօր ռազմաճակատ ենք մեկնում ես և մյուս եղբայրներս: Հպարտության զգացումով ենք մտնում մենք մեր հայրենիքի պաշտպանների շարքերը:

Կարագյոզյան յոթ եղբայրները սրբազան երդում տվին՝ մարտում չնահանջել, կռվել մինչև մեր հայրենիքի ոսոխների լրիվ ջախջախումը»:

Զայրույթ և ատելություն, Թանկարժեք իրերի հոսքը, Հայաստանն ավարտում է գարնանացանը, Պաշտպանության և ազատագրված շրջանների օգնության ֆոնդին, Օգնություն ճակատայինների ընտանիքներին, 89-րդ Թամանյանը, «Սասունցի Դավիթ» տանկային շարասյունը մարտաշարք մտավ, Մերձբալթյան ռազմաճակատի զորքերի գեղարվեստական սպասարկումը և այլ նյութեր պատկերում են Հայաստանի աշխատավորների հայրենանվեր գործերը, արտահայտում նրանց խոհերն ու մտորումները, անսահման ատելությունը մեր բազմազգ հայրենիքի կատաղի թշնամու հանդեպ:

1941 թվականի օգոստոսի 25-ին «Պրավդայում» տպագրվեց Հայ ժողովուրդը Սովետական Միության ազատագրական պատերազմի մարտական մասնակիցն է խորագրով առաջնորդողը: Սովետական Միության բոլոր ժողովուրդները, նշում էր թերթը, մեկ մարդու պես կռվի ելան մեր երկրի վրա հարձակված հիտլերյան ֆաշիզմի դեմ՝ տոգորված սրբազան հայրենիքը կրծքով պաշտպանելու, թշնամուն ջախջախելու անձնազոհ պատրաստակամությամբ: Առաջնորդողում հիշատակվում են անվախ օդաչու Գազազյանի, մայոր Ապրեսյանի փառաբանված անունները և հայ ժողովրդի շատ այլ զավակների սխրանքն ու արիությունը Հայրենական պատերազմի ռազմաճակատներում:

«Հայ ժողովուրդը,— գրում էր «Պրավդան», — ինչպես և Սովետական Միության ազատ ու իրավահավասար մյուս բոլոր ժողովուրդները, խորապես ընկալեց մեր երկրին սպառնացող մահացու վտանգը, քանզի իր բազմադարյա պատմության ընթացքում նա մի անգամ չէ, որ ենթարկվել է օտար բռնակալների հարձակումներին: Նա գիտե, թե ինչ են եղեռնը, կոտորածները, սովը, բռնությունները: Դրա համար էլ, երբ արյունալի հրդեհով բռնկվեց պատերազմը, որ Սովետական Միության դեմ սկսեց մարդակեր Հիտլերը, ամբողջ հայ ժողովուրդը մեկ մարդու պես ոտքի կանգնեց՝ պաշտպանելու հայրենիքը: Սովետական Միության վրա ոխտադրուժ, ավազակային հարձակման լուրը զգայուն աչալրջության մղեց նաև հայ ժողովրդի՝ ՍՍՀՄ սահմաններից դուրս ապրող զավակներին: Նրանց ողջ համակրանքը Սովետական Միության կողմն է»:

Առաջնորդողում քաղվածքներ են բերված արտասահմանի բոլոր հայերին ուղղված՝ հայ ժողովրդի լավագույն ներկայացուցիչների դիմումից, ուր կոչ էր արվում բոլոր նրանց, ում համար թանկ է հազարամյակների կուլտուրական ժառանգությունը, ում համար սրբազան են ազատության և հումանիզմի բարձր իդեալները, ովքեր մտահոգված են մարդկության ապագայով ու սիրում են իրենց իսկական հայրենիքը՝ միավորել իրենց ուժերը, կանխելու համար մարդկության վերադարձը դեպի միջնադարյան խավարը: «Այս կոչը անպատասխան չմնաց,— ընդգծում էր «Պրավդան»:— Այն միավորում է նացիստական բռնապետության դեմ պայքարելու պատրաստ բոլոր հայերին»:

Թբիլիսիում կայացած հակաֆաշիստական միտինգի առիթով գրված Անդրկովկասի ժողովուրդների երդումը խորագրով առաջնորդողում «Պրավդան» ընդգծում է ՍՍՀՄ ժողովուրդների մեծ ու անխախտ դաշինքի վճռական նշանակությունը ֆաշիզմի դեմ մղվող կենաց և մահու պայքարում: «Հանուն հայրենիքի

մղվող մարտերում է՛լ ավելի ամրապնդվեցին եղբայրական կապերը Սովետական Միության բոլոր ժողովուրդների միջև: Հանուն մեր գեղեցիկ հայրենիքի, հանուն սովետական մեծ երկրի՝ ուս-ուսի մարտնչում են Ռուսաստանի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Սիբիրի, Կովկասի, Միջին Ասիայի որդիները: Նրանց մարտական բարեկամությունը զոդված է սովետական հայրենիքի հանդեպ միասնական անմար սիրով, լուսավորված է հայրենի հողի պաշտպանության համար թափված տաք արյունով»:

1943 թվականի փետրվարի 27-ին «Պրավդայում» տպագրվեց հայ ժողովրդի նամակը հայ մարտիկներին: Դա սրտառուչ և գոտեպնդող մի կոչ էր՝ ուղղված Հայրենական պատերազմի բոլոր ռազմաճակատներում, սովետական մյուս ժողովուրդների զավակների հետ միասին, արյունարբու թշնամու դեմ ահեղ մարտի ելած հայ քաջորդիներին:

Նամակին կցված խմբագրականում թերթը նշում էր, որ սովետական հայրենիքի, Հայաստանի հանդեպ ջերմ սիրով համակված իրենց խոսքում հայ ժողովրդի լավագույն մարդիկ իրենց հայրենակիցներին, Կարմիր բանակի մարտիկներին հիշեցնում են գերագույն և սրբազան պարտքի, արիության ու պատվի, ժողովրդի մարտական ավանդների մասին: «Չի եղել և չկա մի հայ,— գրում է թերթը,— որ չգիտակցեր, թե ինչ է բերում իր հետ օտար նվաճողների, բռնակալների ու բանդիտների արշավանքը: Հայտնի է հիտլերյան վերնախավի ծրագիրը: Դա ռասայական ատելությունն է, «ընտրյալ» ազգերի տիրակալությունը, մյուս ազգերի հպատակեցումն ու նրանց տերիտորիաների զավթումը, հպատակեցված ազգերի տնտեսական ստրկացումն ու նրանց ազգային արժանապատվության անարգումը, դեմոկրատական ազատությունների ոչնչացումը, դա հիտլերյան ռեժիմի՝ ստոր բռնության, վայրագ կոտորածների, գազանային հաշվեհարդարների ռեժիմի հաստատումն է ամենուրեք:

Այդ ամենը լավ ծանոթ է հայ ժողովրդին,— շարունակում էր «Պրավդան»:— Այդ ամենի փորձությանը նա ենթարկվել է իր բազմադարյա պատմության ընթացքում: Լինելով աշխարհի հնագույն ժողովուրդներից մեկը՝ մի անգամ չէ, որ նա կանգնել է ֆիզիկական իսպառ ոչնչացման, իր ազգային մշակույթի իսպառ ջախջախման եզրին: Մեծ է նրա ոսոխների ցուցակը: Սկիզբը հասնում է ալեզարդ հնության խորքերը: Գերմանական զավթիչները եզրափակում են հայոց վշտի, հայոց ողբի դառն տարեգրությունը»:

Այս ահեղ պահին, ասված էր խմբագրականում, ամբողջ հայ ժողովուրդը մի մարդու պես ոտքի է ելել՝ պաշտպանելու մեր հարազատ բազմազգ հայրենիքը: Հայ ժողովուրդը վերածնվել, սոցիալական ու ազգային ծաղկման է հասել սովետական ժողովուրդների մեծ ու անխախտ ընտանիքում, նրանց բարեկամությամբ ու եղբայրությամբ: Այս պատմական իրողության խոր գիտակցումն էլ հենց համակել է նրան սովետական հայրենասիրության բարձր զգացումով:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 25-ամյակին նվիրված Հայ ժողովրդի տոնը առաջնորդողում, գնահատելով հայերի ավանդը ֆաշիզմի ջախջախման գործում, «Պրավդան» գրել է. «Հայաստանում զենքեր չորոտացին: Հայաստանը չտեսավ գերմանական ներխուժման սարսափները: Բայց հայ ժողովուրդը հասկանում էր, որ Դոնի և Կուբանի, Ուկրաինայի և Բելոռուսիայի դաշտերում վճռվում է նաև իր բախտը, պաշտպանվում են նաև իր անկախությունը, ազատությունը, երջանկությունը: Եվ հայ ժողովրդի զավակները Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների հետ մեկտեղ ոտքի ելան՝ պաշտպանելու մեր ընդհանուր սովետական հայրենիքը և անձնվիրաբար կռվեցին գերմանաֆաշիստական զավթիչների դեմ: Սովետական Միության հերոսների փառապանծ ընտանիքում կան հայ ժողովրդի մոտ հարյուր որդիներ: Հազարավոր հայ բանակայիններ պարգևատրված են մարտական շքանշաններով: Նրանք մարտնչում էին Մոսկվայի ու Ստալինգրադի մատույցներում, Ղրիմում, նրանք պաշտպանում էին Լենինգրադը, նրանք գրոհում էին Քյոնիգսբերգի, Օդերի-Ֆրանկֆուրտի և Բեռլինի վրա: Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ վառ էջ գրեց 89-րդ հայկական Թամանյան դիվիզիան՝ Գրոզնու մատույցներից հասնելով Բեռլին»:

***

«Պրավդան» Հայաստանի մասին ժողովածուում զգալի թիվ են կազմում հայ մշակույթին և գիտությանը վերաբերող նյութերը: Դպրոցական ուսուցում և բարձրագույն կրթություն, կինոնկար և թատերական ներկայացում, երաժշտական կոլեկտիվների համերգներ, հին հայկական ձեռագրեր և գրադարանային գործ, գրական ժառանգություն, ժամանակակից գրականություն և փոխադարձ թարգմանություններ, գիտության տարբեր բնագավառների նվաճումներ ու գիտական համագործակցություն,— ահա ոչ լրիվ թվարկումն այն հարցերի, որոնք լրագրային տարբեր ժանրերով արտացոլվել են «Պրավդայի» էջերում: Ընթերցողը ժողովածուում կգտնի ռեցենզիաներ Նամուս, Խասփուշ, Պեպո կինոնկարների մասին, հաղորդումներ Մ. Մանվելյանի, Ալ. Շիրվանզադեի, Ավ. Իսահակյանի, Համմիկի հոբելյանների, Ալ. Սպենդիարյանի հեղինակային համերգի մասին, ինֆորմացիաներ հնագիտական պեղումների, ճարտարապետների ու գրողների համագումարների, Հ. Բարբյուսի և Մ. Գորկու Հայաստան կատարած այցելության, գրական-մշակութային այլ իրադարձությունների վերաբերյալ:

«Պրավդան» լայնորեն նշեց «Սասունցի Դավիթ» էպոսի 1000-ամյակը: Ժողովածուում զետեղված են 7 նյութ-ինֆորմացիաներ ՍՍՀՄ գրողների միության հոբելյանական հանձնաժողովի նիստի, Գորկու անվան կուլտուրայի և հանգստի այգում կայացած հանդիսավոր նիստի, Կազանում կազմակերպված հանդիսավոր երեկոյի, Երևանում տեղի ունեցած ժողովրդական ստեղծագործության օլիմպիադայի և էպոսի՝ ՍՍՀՄ ժողովուրդների լեզուներով կատարվող թարգմանությունների մասին, ինչպես նաև ակադեմիկոս Հ. Օրբելու և Վ. Կիրպոտինի հոդվածները:

Ցավալի է, սակայն, որ ժողովածուում տեղ չի գտել այդ հոբելյանին նվիրված «Պրավդայի» ամենակարևոր ելույթը՝ Սովետական ժողովրդի կուլտուրայի տոնը խորագրով խմբագրական հոդվածը (1939 թ., № 256)*, որտեղ ընդհանրացնող մեծ ուժով բացահայտված է մեր հերոսական էպոսի հայրենասիրական խոր պաթոսը:

Ժողովածուում վերատպված են Մոսկվայում կայացած հայ արվեստի տասնօրյակը լուսաբանող «Պրավդայի» բազմաթիվ ելույթները, այդ թվում և 1939 թվականի հոկտեմբերի 29-ի խմբագրական հոդվածը, զետեղված են հայ գրականության մոսկովյան տասնօրյակին (1941 թ. մայիս) նվիրված նյութերը:

«Պրավդան» ջերմորեն արձագանքել է հայ գրականության և մշակույթի բոլոր նշանակալից տարելիցներին: Խաչատուր Աբովյանի, Հովհաննես Թումանյանի, Կոմիտասի, Ալեքսանդր Սպենդիարյանի ծննդյան 100, Մեսրոպ Մաշտոցի 1600, Սայաթ-Նովայի 250--ամյակների, Միքայել Նալբանդյանի, Հակոբ Հակոբյանի, Եղիշե Չարենցի, Մարտիրոս Սարյանի, Արամ Խաչատրյանի հոբելյանների պատշաճ նշումը «Պրավդայի» կողմից՝ մեր հայրենիքի ժողովուրդների ազգային մշակույթի նկատմամբ հարգալից վերաբերմունքի, լենինյան ազգային քաղաքականության ակնառու դրսևորումներից են:

Ժողովածուում տեղ են գտել կոմունիստական կուսակցության ականավոր գործիչներ Ստեփան Շահումյանի, Բոգդան Կնունյանցի, Ալեքսանդր Մյասնիկյանի, Սուրեն Սպանդարյանի, Սիմոն Տեր-Պետրոսյանի (Կամո) հոբելյանների առթիվ «Պրավդայում» տպագրված հոդվածները:

«Պրավդայի» էջերում բարձր է գնահատված քառակի շքանշանակիր Սովետական Հայաստանի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, գիտության ու մշակույթի գործիչների ոգեշունչ, հայրենանվեր աշխատանքը: ««Պրավդան»,— նշված է ժողովածուի առաջաբանում,— սովետական ժողովուրդների կեսդարյա պատմության տարեգրությունն է: Դրա օրինակն է Հայաստանը: Համարից-համար «Պրավդան» շարադրում է այն փուլերը, որ անցել է հայ ժողովուրդը իր բազմադարյա պատմության վերջին հինգ տասնամյակներում: Չկա, թերևս, մի բնագավառ, որին անդրադարձած չլինի «Պրավդան»— ժողովրդի բարեկեցության բարձրացում, կուլտուրական հեղափոխություն, գիտության բուռն զարգացում: Հանրապետության լավագույն մարդիկ «Պրավդայի» ցանկալի հյուրերն են»:

Բազմակողմանի արտացոլելով և համամիութենական ընթերցողին ներկայացնելով Սովետական Հայաստանի լիարյուն կյանքը՝ «Պրավդան», միաժամանակ, իր քննադատական ելույթներով մեծապես օգնել և օգնում է աշխատանքի տարբեր բնագավառներում տեղ գտած թերությունների շուտափույթ վերացմանը:

Ինչ խոսք, նպատակահարմար կլիներ այդ նյութերից մի քանիսը նույնպես զետեղել ժողովածուում՝ առավել ընդգծելով Հայաստանին նվիրված «Պրավդայի» ելույթների կարևոր նշանակությունը:

Քանի որ ժողովածուում չեն ամփոփված մեր հանրապետությանը վերաբերող բոլոր նյութերը, ուրեմն անհրաժեշտ էր վերջում կցել այդ նյութերի մատենագիտական լիակատար ցանկը՝ թեմատիկ ու այբբենական ցուցակներով: Դա կլիներ շատ առումներով արժեքավոր մի հավելված:

«Պրավդան» Հայաստանի մասին ժողովածուն ուշագրավ, նշանակալից հրատարակություն է: Կասկածից վեր է այդ գրքի օգտակարությունը գիտության ու մշակույթի տարբեր բնագավառների աշխատողների, պրոպագանդիստների ու ագիտատորների, ինչպես նաև ընթերցող լայն շրջանների համար:

Հ. Հ. ՖԵԼԵՔՅԱՆ

* *Ի դեպ՝ այս խմբագրականի մասին հանգամանորեն խոսվում է մեր ամսագրի 1972 թ. № 5-ում տպագրված Հայ մշակույթի հարցերը «Պրավդայի» էջերում հոդվածում: Խմբ.:*

ժամ։ Չնայած դասակի հրամանատարը ծանր վիրավորվել էր, բայց ղեկավարում էր այդ անհավասար գոտեմարտը։ Օրհասական ժամին, հավաքելով վերջին ուժերը, լեյտենանտ Հրաչենով խփեց առաջին տանկը. երկրորդը խփեցին նրա ենթակաները։ Մյուս տանկերը խուճապահար թողեցին ռազմի դաշտը։ Սակայն թշնամու գնդացրային կրակահերթը խոցեց հրամանատարի սիրտը։ Հաջորդ օրը թերթերի, կայծակ-թերթիկների և զրույցների միջոցով ռազմիկներն իմացան հերոսի սխրագործության մասին։

Հետագայում, երբ 47-րդ բանակի զորքերը հարձակողական մարտեր էին մղում Դնեպրի ափերին, Կովելի ու Վարշավայի տակ, Բեռլինի մատույցներում, առանձնակի ուժով դրսևորվեց ռազմիկների հայրենասիրությունը, ծնվեցին հազարավոր նոր հերոսներ։ Նրանց օրինակով քաղաշխատողները դաստիարակում էին մյուսներին, կոչ անելով կռվել ու հաղթել այդ քաջերի նման։ Մարտական առաջադրանքը կատարելիս հերոսի մահով ընկավ ավագ սերժանտ Ի. Ալեքսեևը։ «Եղեք այնպես համարձակ, տոկուն մարտիկ, ինչպիսին նա էր,— ասված էր թերթիկում։— Այնպես անձնուրաց կերպով սիրեք ու պաշտպանեք ձեր հայրենիքը, ինչպես այն սիրում ու պաշտպանում էր ավագ սերժանտ Ի. Ա. Ալեքսեևը»։

Գրքում մեջբերված են մարտերում աչքի ընկած խիզախներից մեկի՝ հետախույզ, Սովետական Միության հերոս Գ. Մորոզովի խոսքերը. մեր մարդկանց նվիրական խոհերի ու մտորումների արտահայտությունն են դրանք. «Պատերազմն ինձ շատ բան սովորեցրեց,— գրել է նա, — պատերազմում ես սովորեցի նոր ձևով սիրել ու գնահատել իմ հայրենիքը, հոգուս ամբողջ ուժով ատել նրա թշնամիներին»։

Քաղաքական մարմինները ժամանակին ուսումնասիրում, ընդհանրացնում և տարածում էին տեղերի լավագույն նախաձեռնությունները, ապա հետևում ու օգնում դրանց արմատավորմանը։ Ահա բազմաթիվ օրինակներից մեկը։ 383-րդ հրաձգային դիվիզիայի կոմունիստների նախաձեռնությամբ գնդերում ու ստորաբաժանումներում ստեղծվեցին կոմերիտական-երիտասարդական հարվածային խմբեր ու ջոկատներ, որոնք հաջողությամբ գործում էին լեռնային տեղանքում՝ մեծ կորուստներ պատճառելով թշնամուն։ Այդ խմբերը հանկարծակի հարձակվում էին գերմանացիների վրա թիկունքից, դարանակալում կիրճերում, արժեքավոր «լեզուներ» բռնում... Բանակի քաղբաժինը, պաշտպանելով այդ նախաձեռնությունը, թերթերի, թերթիկների ու զրույցների միջոցով 383-րդ դիվիզիայի կոմունիստների օգտակար փորձը տարածեց կուսակցական, կոմերիտական բոլոր կազմակերպություններում։ Շուտով զորամասերում և ստորաբաժանումներում կազմակերպվեցին քաջակորով, երիտասարդ ռազմիկների հարվածային խմբեր ու ջոկատներ։

Ավարտին էր մոտենում 1942 թվականը՝ ռազմա-քաղաքական խոշոր իրադարձություններով հագեցած տարին։ Սովետական զինված ուժերը փայլուն հաղթանակ տարան Ստալինգրադի տակ։ Հայրենական մեծ պատերազմում սկսվեց բեկման շրջանը. Կովկասի համար մղվող ճակատամարտում ևս, մեր զորքերի հուժկու հարվածների տակ, հակառակորդը նախալեռներից ու լեռնանցքներից նահանջում էր դեպի հյուսիս։

1943 թ. մարտի կեսերին 47-րդ բանակի հրամանատարությունը, իր դաշտային զորքերը հանձնելով հարևան 18-րդ դեսանտային բանակին, դուրս եկավ Նովոռոսիյսկի շրջանից՝ նոր կազմավորումներ ընդունելու համար։ Սկսվեց մարտական գործողությունների նոր շրջան։

***

Բանակի քաղաշխատողները ջանք չէին խնայում՝ բարձրացնելու կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը. այդ ջանքերի շնորհիվ էր, որ կոմունիստները միշտ ավանգարդում էին, մարտական գործողությունների վճռական տեղամասերում։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին մեր զինված ուժերի հիմքը կազմում էին կոմունիստներն ու կոմերիտականները։ Կուսակցության անդամները միշտ այնտեղ էին, ուր վճռվում էր մարտերի ելքը։ Իրենց օրինակով նրանք վարակում էին մարտիկներին, կռվում էին, զոհվում... բայց ողջերը, նրանցից ամենաքաջերն ու խիզախները համալրում, խտացնում էին նրանց շարքերը։ Պատերազմի վերջում երեք միլիոնից ավելի կոմունիստներ կային ռազմաճակատում։ Միայն 47-րդ բանակում այդ տարիներին կուսակցության շարքերն են ընդունվել ավելի քան 40 հազար, իսկ կոմերիտմիության մեջ՝ 35 հազար մարդ։ «Կուսակցության մեջ մտնելը,— գրում է գեներալ Կալաշնիկը,— ինչպես հայտնի է, որևէ օգուտ չէր խոստանում և խոստանալ չէր կարող։ Ընդհակառակը, կոմունիստ դառնալով, յուրաքանչյուր մարտիկ, յուրաքանչյուր հրամանատար կամավոր կերպով հանձն էր առնում բազմաթիվ լրացուցիչ պարտականություններ։ Եվ դրանցից գլխավորն էր՝ միշտ մարտում լինել առաջինը, տոկունության և արիության անձնական օրինակով իր հետևից տանել անկուսակցականներին, մշտապես գտնվել այնտեղ, որտեղ բոլորից վտանգավոր է ու դժվար» (էջ 235)։

Հատկապես կռիվների թեժ պահերին, երբ հնչում էր մարտական կոչը՝ «Կոմունիստնե՛ր և



կոմերիտականնե՛ր, առա՛ջ», նրանց հետ միևնույն շարքում գրոհող անկուսակցականները պատասխանատու առաջադրանքներ կատարելուց առաջ դիմում էին կուսկազմակերպություններին. «Ինձ համարեք կոմունիստ» կամ՝ «Ուզում եմ մարտի գնալ՝ որպես կոմունիստ»— գրում էին ամենաարժանավորները, ձգտելով քաջությամբ ու անվեհերությամբ հաստատել կոմունիստ կոչվելու իրենց իրավունքը։

Զինվորներն ու հրամանատարները հավատում, վստահում էին կուսակցությանը, նրա մեջ տեսնելով իրենց խիղճն ու պատիվը։ Ահա թե ինչու ռազմիկներն իրենց կյանքն ու ճակատագիրը ընդմիշտ կապում էին մեծ Լենինի կուսակցության հետ. կռվել ու մեռնել որպես կոմունիստ։

Մշտական շփումը զինվորների ու հրամանատարների հետ, անկեղծ, սրտաբաց զրույցները հնարավորություն էին ընձեռում քաղաշխատողներին՝ լավ հասկանալու մարդկանց տրամադրությունները, խոհերն ու մտորումները, կարիքները, դրանով իսկ ճիշտ կառուցելու քաղդաստիարակչական աշխատանքը։ Ռազմիկներն ուշադրությամբ էին ունկնդրում քաղաշխատողների կրքոտ, համոզված խոսքին, հանձին նրանց տեսնում էին բանակում կուսակցության լիազորներին, քաջ ու անձնվեր մարդկանց։

1943 թվականին արմատապես փոխվել էր երկրի ռազմա-քաղաքական իրադրությունը։ Մեր զինված ուժերը լայն ճակատով հարձակողական մարտեր էին մղում թշնամու դեմ՝ վռնդելով նրան սովետական հողից։ Գրքում փաստական հարուստ նյութի հիման վրա ցույց է տրված, թե ռազմական այդ նոր իրադրությանը համապատասխան ինչպե՞ս էին օգտագործվում ու կատարելագործվում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ի՞նչ էր արվում կուսակցության խոսքն ավելի արդյունավետ, ներգործուն դարձնելու, մարտիկներին նորանոր սխրանքների ոգեկոչելու համար։

Բանակի ռազմիկները, ազատագրելով հայրենի հողը, անցնում էին ավերված, մոխրացած բնակավայրերով. ամենուր ֆաշիստական դահիճների հրեշավոր չարագործությունների հետքերն էին։ Այդ ամենը, ինչ խոսք, դառնությամբ էր լցնում նրանց սրտերը, բորբոքում արդարացի ցասում, վրեժխնդրություն։ Քաղաշխատողները դաստիարակում էին մարտիկներին թշնամու նկատմամբ ատելության, փոխհատուցման ոգով։ Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում օգտագործվում էին ո՛չ միայն թշնամու չարագործությունները հետաքննող պետական հանձնաժողովի հաղորդումները, այլև օկուպացված շրջաններում ապրած սովետական բնակիչների պատմածները, փաստագրական, լուսանկարչական, շարժական ցուցահանդեսներն ու ցուցափեղկերը, ֆաշիստական դահիճների զոհերի եղբայրական գերեզմանների մոտ կազմակերպվող միտինգները և այլն։ Միաժամանակ քաղաքական լայն աշխատանք էր ծավալվում ազատագրված վայրերի բնակչության շրջանում։

Երբ 47-րդ բանակի զորքերը կռվում էին Լեհաստանում, մեր ռազմիկներն առաջին անգամ բախվեցին կապիտալիստական իրականությանը, բուրժուա-կալվածատիրական կարգերին... Հարկ եղավ զորամասերում ուժեղացնել քաղդաստիարակչական աշխատանքը, կազմակերպել զրույց-դեկուցումներ Լեհաստանի մասին, կոչելով զգոնության։ Լեհ աշխատավորությունը, որ իր ազատարարներին ընդունում էր գրկաբաց, ջերմությամբ, կարոտ էր ճշմարտացի խոսքի։ Հրամանատարներն ու քաղաշխատողները, հանդես գալով բնակչության առաջ, պարզաբանում էին սովետական բանակի ազատագրական միսիան, **այն** է՝ երկրից վռնդել հիտլերյան օկուպանտներին, օգնել լեհ ժողովրդին՝ վերածնելու ազատ ու անկախ իր պետությունը։ Բանակի հետ կողք-կողքի մարտնչում էր Թ. Կոստյուշկոյի անվան լեհական առաջին դիվիզիան. համատեղ մարտերն ամրապնդեցին երկու ժողովուրդների մարտական եղբայրությունը, փոխօգնությունը։

Հիշենք մեր քաղաշխատողների գործունեության մի առանձնահատկություն ևս՝ կապված Բեռլինյան օպերացիայի հետ։ Այդ օրերին քաղաշխատողները հաճախակի էին անդրադառնում հատկապես այն բանին, որ թշնամին կդիմադրի դատապարտվածի հուսահատությամբ, որ առաջիկայում կռիվները կլինեն ավելի կատաղի, արյունահեղ։ Ավելացան պրոպագանդիստների ու ագիտատորների, քաղաշխատողների հոգսերը։ Չնայած ֆաշիստների նկատմամբ մեր զինվորների խոր ատելությանը, նրանք լավ էին ըմբռնում, որ չի կարելի նույնացնել ֆաշիզմը և գերմանական ժողովուրդը։ Գերմանական բնակչության նկատմամբ իրենց մարդասիրական վերաբերմունքով մեր մարդիկ վերստին ցույց տվին կոմունիստական գիտակցականության մեծ ուժը, բարձր պահեցին մեր հայրենիքի պատիվը։

Ինչպես վերևում ասվեց, քաղմարմինների գործունեության մեջ գլխավորը, վճռականը մարտական գործողությունների ապահովումն էր։ Դրա հետ մեկտեղ քաղաշխատողները մեծ ուշադրություն ու ժամանակ էին հատկացնում նաև թիկունքին, ռազմիկների պահանջների ու կարիքների բավարարմանը։ Նրանք հետևում և օգնում էին, որ զորամասերը ժամանակին ապահովվեն զինամթերքով, պարենով ու հագուստով, մարտիկներին տրվի տաք ճաշ, ժամանակին վիրավորները փոխադրվեն թիկունք, հողին հանձնվեն զոհվածները, ծանուցագրեր, նամակներ ուղարկվեն ընտանիքներին։

Գրախոսվող գրքում ընթերցողը ծանոթանում է

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԵՌԱԽՈՍԱՅԻՆ ԱՎՏՈՄԱՏ ՔԱՐՏՈՒՂԱՐԸ

ՍՍՀՄ կապի մինիստրության կենտրոնական կոնստրուկտորական բյուրոն մշակել է հեռախոսային ավտոմատ պատասխանող АТГ—2 սարքը, որը թողարկել է Կույբիշևի «Արդկապ» գործարանը:

Ավտոմատ պատասխանողը ոչ մեծ մի կցորդ է հեռախոսային ապարատին: Դրա մագնիսային ժապավենին թելադրվում է անհրաժեշտ ինֆորմացիան, որը վերարտադրվում է յուրաքանչյուր հեռախոսազանգից հետո:

## ԶՈԴՎՈՒՄ Է... ՀԱԳՈՒՍՏԸ

Սովետական գիտնականների ստեղծած ԱՆԻ էլեկտրական սարքը զոդում է թերմոպլաստիկ թելի գործվածքից ու տրիկոտաժից պատրաստված հագուստների մասերը, ինչպես և հարդարման թակալակաբերը, մշակում կոճակահանգույցները, հագցնում կոճակները:

Սարքը կառավարվում է ավտոմատ կերպով: Զոդման պրոցեսի տևողությունը 0,5—5 վրկ է, զոդվող գործվածքի հաստությունը՝ 0,1—5 միլիմետր:

## ԱՎՏՈՄԱՏ-ԳՈՐԾԱՐԱՆ

Շահագործման է հանձնվել Լենինգրադի աղյուսի ավտոմատ-գործարանը: Դրա արտադրողականությունը տարեկան 50 մլն աղյուս է: Գլխավոր կորպուսում աշխատում են 56 մարդ— հինգ անգամ պակաս, քան նույն հզորությամբ այլ գործարաններում:

Նոր ձեռնարկությունն արտադրում է կերամիկական քար, որն իր չափերով համապատասխանում է երկու աղյուսի, իսկ քաշը թեթև է 1,5 կիլոգրամով:

## ՇԵՆՔԵՐԻ ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՏԱՔԱՑՈՒՄԸ

Շվեյցարիայում առաջարկվել է շենքերի տաքացման եղանակ. հատակի տակ դրված էլեկտրական ջեռուցիչ էլեմենտների օգնությամբ, շենքի բարձրությանը համապատասխան, ապահովվում է ջերմության իդեալական բաշխում: Շնորհիվ բարձր ջերմաստիճան ունեցող ջեռուցիչ սարքերի բացակայության, քիչ փոշի գոյացնող օդային հոսանքներ են առաջանում, և էլեկտրական ջեռուցիչ էլեմենտներում էլեկտրաէներգիան փոխարկվում է ջերմության, առանց կորուստների: Ջեռուցիչ էլեմենտների մեջ կա հաղորդիչ և մագնիումի օքսիդի փոշի (մեկուսիչ): Մեծ մասամբ ջեռուցիչ էլեմենտները պատած են մինչև 250 աստիճան տաքության դիմացող պղնձով:

## ՍՈՎՈՐԵՑՆՈՂ ԱՎՏՈՄԱՏ

Չեխոսլովակյան «Տեսլա» ֆիրման ստեղծել է սովորեցնող ավտոմատ մեքենա՝ ինքնուրույն պարապմունքների համար: Աշակերտը էկրանի վրա ստանում է առաջադրանքը և պատասխանում ստեղների օգնությամբ: Ավտոմատը գրանցում է ճիշտ պատասխանը և ցույց տալիս սխալը:

Դպրոցներում դրանք օգտագործվում են իբրև քննական ավտոմատներ:

## «ԵՐԳՈՂ» ԳՐԱՏԱԽՏԱԿ

Երաժշտություն և նոտաներ սովորեցնելու համար Հարավսլավական «Սլովենիյալես» ֆիրման պատրաստել է դասարանային «Երգող» գրատախտակ:

Գրատախտակի վրայի նոտագծերը մոնտաժված հաղորդիչներ են, միացված էլեկտրոնաակուստիկ սիստեմին այնպես, որ երբ ցուցափայտը կպչում է դրանց, միացվում է էլեկտրական շղթան, և գրատախտակի հետևի մասում դրված դինամիկներից լսվում են տվյալ նոտային համապատասխան ձայներ: